ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ
ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-ՈՒՄ



ВОССТАНОВЛЕНИЕ
ПАМЯТНИКОВ
В АРМЯНСКОЙ ССР



RESTAURATION DES
MONUMENTS
EN R. S. S. D'ARMÉNIE

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ
ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ԱՐՎԵՍՏԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

«ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ, 1978

Գիրքը նվիրված է պատմաճարտարապետական և հնագիտական հուշարձանների վերանորոգման, վերականգնման, ինչպես նաև մոնումենտալ որմնանկարների ամրացման հարցերին։

Գրքում ցույց են տրված նաև տվյալ բնագավառի պրակտիկ աշխատանքների ընթացքում անընդմեջ կատարվող բազմաթիվ նորոգումների առավել ցայտուն օրինակներ։

# Ա Ռ Ա Ջ Ա Բ Ա Ն

Հարգանքը հնության նկատմամբ ճշմարիտ
քաղաքակրթության հատկանիշն է:

Ֆ. ԷՆԳԵԼՍ

Պատմաճարտարապետական և հնագիտական հուշարձաններն ամեն մի ժողովրդի նյութականացված անցյալն են և այդ առումով, ամենայն իրավամբ, ժողովուրդների պատմական կյանքի հատունության վկայականը: Այս պատճառով էլ հինավուրց հուշարձանները պահպանվում են, ինչպես նաև, նույն պահպանության նկատառումով վերանորոգվում այն անհրաժեշտ մղումով, որ նրանցում առկա մի շարք պատմամշակութային հատկությունների իմաստն ու նշանակությունը հավերժական են: Եթե անցյալում ավերված հուշարձանները լոկ իրենց դարն ապրած հինավուրց կառույցներ էին, առանց որևէ պատմամշակութային արդի նշանակության ու իմաստի, ապա այսօր նրանք անցյալի այն վկաներն են, որոնք ակտիվորեն մասնակցում են այդ նույն պատմության բացահայտմանը, և իրենց էությամբ քայլ առ քայլ բացում դարերի խորհրդավոր գաղտնիքները, երկրի պատմական կյանքն իր բուռն վերելքի ու անկման բոլոր ժամանակաշրջաններով: Կարևորը նաև այն է, որ պատմական հուշարձանները հաճախ նոր լույս են սփռում դժվար վերծանելի դարաշրջանների վրա, որոնց մասին գրավոր աղբյուրները լռում են: Ուստի միակ վկաները մնում են իրենք այդ հուշարձանները: Հետևաբար հետադարձ հայացքով վերջիններս պետք է ընկալվեն որպես մարդկային մտածելակերպի պատմական կուռ շղթայի արգասիքներ, որոնք իրենց նշանակությամբ գնում են ոչ միայն դեպի անցյալը, այլև դեպի

ապացան: Այդ հարցի ղեկավար սկզբունքը Վ. Ի. Լենինի հետևյալ միտքն է՝ «Առանց պարզ ըմբռնելու այն բանը, որ միայն մարդկային ամբողջ զարգացմամբ ստեղծված կուլտուրայի հետ ճշգրիտ ծանոթ լինելով, միայն նրա վերամշակմամբ կարելի է կառուցել պրոլետարական կուլտուրա, առանց այդպիսի ըմբռման մենք այդ խնդիրը լուծել չենք կարող»[1]:

Ուստի անցյալի ճարտարապետական մշակույթի ողջ ժառանգությունը մենք պահպանում ենք հանուն արդի կյանքն արտահայտող մշակույթի նոր արժեքների, դարակազմիկ նոր կոթողների ստեղծման: Այս կապակցությամբ անցյալի մշակույթի գանձարանում մեր որոնումները մշտապես ուղղված են ի հայտ բերելու ճարտարապետական փոխակերպությունների բոլոր անհրաժեշտ օրինաչափությունները: Այս իմաստով ուշագրավ է քաղաքաշինության ուղիների բացահայտման մասին ճարտարապետության տեսաբան Ա. Բրինկմանի այն միտքը, թե «Ինտելեկտը լրացնում է իր տեսադաշտը արդիականության սահմաններից շատ հեռու, փորձելով, անցյալի համանման օրինակներին կառչած, բացահայտել գալիքի ուղին»[2]:

Տեղին է հիշատակվել նաև, ռուս նշանավոր նկարիչ Ն. Ռերիխի պահանջ-առաջարկը, որ մարդկային մշակույթի բոլոր մեծարժեք հուշարձանների համընդհանուր պահպանության համար օրինականացվի միջազգային հատուկ համաձայնագիր: Սակայն դեռևս 1914 թվականին առաջ քաշած նրա սկզբունքները մեծ դժվարությամբ ուղի հարթելով, ի վերջո ընդունվեցին միայն քառասուն տարի անց՝ 1954 թվականի մայիսի 14-ին, Յունեսկոյի Հաագայի նստաշրջանում և հիմա արդեն հայտնի է որպես «Ռերիխի պակտ»: Ժամանակին այդ պակտը ջերմ պաշտպանության արժանացավ Ռ.Ռոլանի, Բ. Շոուի, Ռ. Տագորի, Ա. Էյնշտեյնի, Թ. Մանի, Հ. Ուելսի, և մյուսների կողմից: Իսկ քանդակագործ Ս. Կոնենկովն այդ պակտի մասին գրեց. «Աշխարհի մշակութային ժառանգության վերաբերյալ Ռերիխի բարոյական սկզբունքները դարձան միջազգային իրավունքի նորմեր»[1]:

Հուշարձանների պահպանության ուղղությամբ միջազգային միջոցառումները Ռերիխի պակտի ընդունումից հետո էլ ավելի ընդլայնվեցին:

Վարշավայի, իր սահմանադիր համաժողովում, 1965 թվականի հունիսի 21—25-ը, ստեղծվեց ԻԿՈՄՈՍ-ը (հուշարձանների և տեսարժան վայրերի պահպանության միջազգային կոմիտե) որպես Յունեսկոյի ենթակա կազմակերպություն: Այն կոչված է օժանդակելու հուշարձանների ուսումնասիրության պահպանության և օգտագործման աշխատանքներին, պրոպագանդելու նրանց նշանակությունը, ինչպես նաև, ապահովելու հուշարձանների կոնսերվացիայի և վերականգնման միջազգային փորձի լայն փոխանակություն: ԻԿՈՄՈՍ-ի անդամ Սովետական Միությունը, որպես համաշխարհային մշակույթի ջերմեռանդ պաշտպան, առանձնահատուկ ծառայություն ունի հուշարձանների պահպանության միջազգային համագործակցության ասպարեզում:

Շուրջ կես դար առաջ Սովետական Հայաստանի տարածքում գտնվող պատմական հուշարձանների պահպանության գործում տեղի ունեցավ մի կարևոր իրադարձություն՝ հանրապետությունում ցրված ճարտարապետական ու հնագիտական կոթողները նոր բովանդակությամբ ու նոր անվամբ միավորվեցին որպես «պատմական հուշարձաններ» և հանձնվեցին ի տնօրինություն ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի Հնությունների պահպանության կոմիտեին: Այլ կերպ, այդ օրվանից հուշարձանների պահպանության բնագավառի գործիչները ձեռնամուխ եղան մշակութային մեծանշանակ գործերի: Այդ աշխատանքները ընթացք են ստացել Հայաստանում խորհրդային կարգեր հաստատվելուց գրեթե անմիջապես հետո: Այսինքն դեռ այն ժամանակ, երբ ժողովուրդը զբաղված էր քայքայված ու ծանր ստիճան հյուծված տնտեսության վերականգնման գերխնդրով:

Կոմիտեն որպես պետական մարմին ծնունդ

---

[1] Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 31, 4-րդ հրատարակություն, «Երիտասարդական միությունների խնդիրները», ճառ. Ռուսաստանի Երիտասարդական միության համառուսաստանյան 3-րդ համագումարում: 2 հոկտեմբերի 1920 թ.

[2] **А. Бринкман.** Градостроительство. от эпохи классицизма до наших дней. Классицизм XVIII века. История архитектуры в избранных отрывках. Изд. Всесоюзной Академии Архитектуры. Москва 1935. стр. 417.

[1] Пакт Рериха. Проф. Богуславской. Наука и жизнь, № 6, 1975 г стр. 89—91;

*առավ 1923 թվականի դեկտեմբերի 18-ին՝ Հայաստանի կառավարության հրամանագրի հրապարակման պահից։ Հարցի մեծ կարևորությունը պայմանավորված էր հայ ժողովրդի դարավոր մշակույթի մեծ ու նշանակալից արժեքներով, որոնց համամարդկային նշանակությունը վաղուց արդեն դուրս էր եկել ազգային մշակույթի սահմաններից։ Նույն, 1923 թվականին Հայաստանի կառավարությունը մեկը մյուսի ետևից հրապարակում է հուշարձանների պահպանությանը վերաբերող մի շարք որոշումներ և օրենքներ, որոնցում հուշարձանները հայտարարվում են համաժողովրդական անձեռնմխելի սեփականություն։ Պետությունը այսպիսով, հուշարձանները իր պահպանության ներքո է վերցնում առհավետ ու մշտապես։ Ընդ որում, ներկայումս, ընդլայնվել է հուշարձան հասկացողության բովանդակությունը և այն հիմա արդեն ընկալվում է իր միջավայրով հանդերձ, որպես քաղաքաշինական համապատասխան կառուցապատում։ Եվ այս ամենը, ոչ միայն այն պատճառով, որ հուշարձանները քաղաքների տարածական հորինվածքում ակտիվ բաղադրիչներ են, և ոչ էլ այն, որ հուշարձանները սերտորեն կապված են տեղանքի հետ, և քաղաքների լոկալ հատվածներում նրանց օրգանիզմի արխիտեկտոնիկ ձևերն են, այլ այն պատճառով, որ իրենց տարբեր արտահայտություններով դրսևորում են այդ բոլոր միասնական, ներդաշնակ լուծումները։ Սրան կարող ենք ավելացնել նաև, որ «հուշարձան» հասկացողությունը անցյալի կառույցների վաղնջականությամբ չէ միայն պայմանավորված։ Պատմական հուշարձան կոչվելու համար կառույցը պետք է լինի տվյալ դարաշրջանի տիպիկ գործը՝ ավանդական բովանդակությամբ ու ձևերով և, իհարկե, իր կատարողական վարպետությամբ լինի նաև եզակի նմուշ։*

*Ներկայումս ճարտարապետական և հնագիտական հուշարձանների պահպանության ու վերականգնման գործը Հայաստանում իրականացվում է ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի Պետշինը, Հուշարձանների պահպանության և վերականգնման վարչության միջոցով, որը կազմակերպում է հուշարձանների պահպանության, վերականգնման, վերանորոգման ու բարեկարգման բոլոր աշխատանքները։*

*Հուշարձանների պահպանության գործում մեծ ու նշանակալից երևույթ էր նաև Հայաստանում 1964 թվականին Պատմական հուշարձանների պահպանության ընկերության հիմնադրումը։ Այսօր ակնառու է այդ ընկերության բարերար գործունեությունը, որի անմիջական օժանդակությամբ ու միջոցներով փլատակներից վեր խոյացան ու ամրացվեցին վթարային վիճակի մեջ գտնվող բազմաթիվ կոթողներ։*

*Հուշարձանների հանդեպ արտակարգ վերաբերմունքի ու մեծ հոգատարության մասին են խոսում Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի վերջին տարիների մի շարք միջոցառումներ, ինչպես նաև Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 1969 թվականի յոթերորդ գումարման հինգերորդ նստաշրջանում ընդունված հուշարձանների պահպանության մասին օրենքը։ Այդ ձեռնարկումները անխափան վերելքի ճանապարհ հարթեցին հուշարձանների պահպանության գործի համար։ Սակայն, հուշարձանների պահպանության բնագավառում առավել մեծ ու նշանակալից դեր ունեցավ «Պատմության ու կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին օրենքը», որը 1976 թվականի հոկտեմբերին ընդունվեց Սովետական Միության Գերագույն Սովետի 9-րդ գումարման 5-րդ նստաշրջանում։ Համապատասխան օրենք ընդունվեց նաև, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի իններորդ գումարման նստաշրջանում[1]։*

*Եվ այսպես, Սովետական իշխանության տարիներին հուշարձանների պահպանության բնագավառում իրականացվեցին հիշատակության արժանի նշանակալից միջոցառումներ, որոնցով ներկայումս հուսալի կերպով երկարացված է բազմաթիվ հուշարձանների պատմական կյանքը։ Շուրջ կես դարի ընթացքում վերանորոգված, վերակառուցված ու բարեկարգված հուշարձանների ընդհանուր թիվը Հայաստանում հասնում է մոտ 300-ի։ Այդ թվում են ինչպես առանձին կոթողները, այնպես էլ մեծ ու նշանակալից համալիրները։*

---

1 Ս. Մ. Կիրակոսյան. *Պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման վերաբերյալ Հայկական ՍՍՀ օրենքի նախագծի մասին։ «Սովետական Հայաստան» 23 դեկտեմբերի 1977 թ.*

Հինավուրց Հայաստանի պատմական տարածքը, որը ժամանակին գրավում էր հայկական ընդարձակ լեռնաշխարհը, իր աշխարհագրական դիրքի շնորհիվ գրեթե անընդմեջ գտնվել է հին աշխարհի մեծագույն առևտրական մայրուղիների վրա, որոնք իրար էին միացնում Արևելքի ու Արևմուտքի երբեմն հզոր պետությունները։ Մեծ էր, այդ կապակցությամբ, Հայաստանի դերն ու նշանակությունը հին աշխարհի պատմության գրեթե բոլոր փուլերում, որը որպես բուֆերային երկիր, իր պատմական երկարատև կյանքի ընթացքում մշտապես ներգրավված է եղել պետությունների պատմական բախտի ոլորտներում։ Այս բերումով էլ, հայ ժողովրդի պատմության ու մշակույթի բաղում էջեր սերտորեն առնչվում են տարբեր ժողովուրդների պատմությանն ու մշակույթին։ Նման կապն ու փոխներթափանցումը վերաբերում են ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր մշակույթին, գրույցներին, ժողովրդական հավատալիքներին, որոնք ի վերջո, իրենց բազմաթիվ արտահայտություններն են գտել հայ ժողովրդի հարուստ բանահյուսության մեջ։

Սովետական կարգերի վերջին երեսուն տարվա ընթացքում հանրապետության հնագիտական տարածքներում կատարված պեղումները հայտնաբերեցին նոր ու վիթխարի հնագիտական նյութեր, որոնք բավական մանրամասն ուրվագծեցին անցյալի պատմության մինչ այդ անհայտ շատ էջեր։ Այդ պատմության վերականգնման գործում առանձնապես մեծ եղավ գրավոր հուշարձանների գոյության փաստը, որը Հայաստանի տարածքի վրա անընդմեջ առկա է շուրջ երեք հազարամյակ։ Սա իր հերթին հավաստի փաստագրական հիմքի վրա դրեց պատմական ժամանակագրությունը։

Հայ հին մշակույթի մեջ առանձնակի տեղ է գրավում ճարտարապետությունը, որն իր բազմադարյան պատմության ընթացքում ստեղծել է կառույցների բազմաթիվ ձևեր ու մշակել խիստ յուրովի ու հաստատուն ավանդույթներ։ Հայ ժողովրդի պատմության բոլոր փուլերում նրա կառուցողական արվեստը ընդհանրապես և ճարտարապետությունը մասնավորապես, միշտ էլ եղել են նրա մշակույթի անընդմեջ զարգացման առաջատար դիրքերում։ Այդ պրոցեսում ամեն մի հաջորդ սերունդ, հենվելով նախորդ դարաշրջանների կառուցողական ավանդույթներին, իր նոր խոսքն է ասել, իր ներդրումը բերել հայ ճարտարապետության ասպարեզում։ Այդ են վկայում հայկական լեռնաշխարհի ամենատարբեր շրջաններում գտնվող, թե նախնադարյան հասարակարգից մեզ հասած մեգալիթյան կոթողները, թե հին արևելյան մշակույթի ավանդույթներով կերտված կառույցները և թե նույնիսկ մինչև 20-րդ դարը հարատևող ժողովրդական ճարտարապետության շինությունները։ Այստեղ տեղին է հիշատակել Ն. Մառի միտքը թե, «Համր արվեստներից, երաժշտության կողքին, անսահման ու անեզր ցանկությունների արտահայտիչն է ճարտարապետությունը, որն առանձնահատուկ ոգևորությամբ էր փայփայված Հայաստանում»[1]։

Հազարամյակների պատմություն ունեցող ճարտարապետական արվեստի զարգացման այս երկարատև ուղին այսօր նշանավորվում է բազմահազար հուշարձաններով, որոնց կոնստրուկտիվ մտահղացումները ստեղծեցին ճարտարապետական հստակ ձևերի ռացիոնալ պարզություն, վեհություն և մոնումենտալիզմ։ Այդ հուշարձանները վկայում են, ոչ միայն տարբեր դա-

[1] Язык и история. I Огиз. Соцэгиз. 1936 г. стр. 69.

բաշրջանների, այլև տարբեր ոճական ուղղությունների, այն է ճարտարապետական դպրոցների ու մեծագույն ճարտարապետների անհատականությունների ստեղծագործական աննկուն որոնումների ու խիզախումների մասին: Այլ կերպ, ժամանակագրական կարգով բացահայտվում է հուշարձանների զարգացման պրոցեսը, մեկ հորինվածքից մյուսին անցնելը, որի մեջ հատկապես արտահայտվում է հին վարպետների ստեղծագործական մտքի անընդմեջ առաջխաղացումը։

Հայկական լեռնաշխարհի հնագույն հուշարձանների թվին են պատկանում նախնադարյան հասարակարգերի ժամանակներից մեզ հասած՝ քարայրները, առանձին կանգնած վաղընջական բնակելի շենքերը և կամ նրանց ամբողջական համալիրները (Շենգավիթ, ուրարտական Թեյշեբայինի քաղաքի հնագիտական առաջին շերտին պատկանող շենքերը և այլն), պարսպապատված բնակավայրերը (Շամիրամ, Նազրվան), մեգալիթյան հուշարձանները (Ղոշուն-Դաշ, Ուզ, Օշական և այլն)։ Այդ շարքում առանձնապես նշանակալից է վեց հազարամյա պատմություն ունեցող Շենգավիթի բնակատեղին, հայտնաբերված Երևանի հարավարևելյան մասում, Հրազդան գետի կամ ներկայիս Երևանյան լճի ձախ ափին։ Երկարամյա պեղումներով այնտեղ բացված կլոր հատակագծով մեկ սենյականոց բնակելի շենքերից անցումը բազմասենյակ շենքերին՝ ճարտարապետական տվյալ մտքի կազմավորման առաջին փորձերն են Հայաստանում։ Այդ ձևերը ավելի կազմավորված ու կատարյալ տեսքով հանդես եկան հազարամյակներ անց՝ մ. թ. ա. 9-րդ դարում, Վանա լճի ավազանում կազմավորվող Հին Արևելքի նշանավոր ստրկատիրական պետական միավորումներից մեկում՝ Ուրարտուում, որի առաջին հիշատակությունը «Ուրուատրի» ձևով հայտնաբերվեց ասորական թագավոր Սալմանասար Ա-ի սեպագրերում (մ. թ. ա. 13-րդ դար)։ Հայկական ՍՍՀ տարածքի վրա ծավալված երկարատև հնագիտական պեղումները՝ Արին բերդում, Կարմիր բլուրում, Արագածում, Արմավիրում հայտնաբերեցին Ուրարտուի պատմության նոր էջեր, որոնք նոր լույս սփռեցին ուրարտական ճարտարապետության և շինարարական արվեստի բազմադարյան պատմության վրա։ Պարզվեց, որ ուրարտական ճարտարապետության մեջ իրենց ուրույն տեղն ունեն աշխարհիկ ու պաշտամունքային շենքերը, ժայռափոր կառույցները, ջրանցքները, թունելները, ինչպես նաև հուշակոթողները։ Վեր հանվեց ուրարտական քաղաքների հստակ կառուցվածքը՝ բարձր բլուրների ստորոտում փռված բնակելի թաղամասերով, իսկ գագաթներին հզոր միջնաբերդ։ Պարզվեց նաև, որ Ուրարտական պալատներն ու տաճարները ընդարձակ, մոնումենտալ կառույցներ են, ճոխ հարդարված ներքին տարածություններով։ Շենքերի ճարտարապետական ձևերը հայտնաբերվեցին իրենց բազմազան լուծումներով, ընդ որում համանման սկզբունքների հիման վրա մշակված տարբերակներ գտնվեցին ինչպես բնակելի, այնպես էլ մոնումենտալ կառույցներում։ Առավել բնորոշ են մեգարոնի տիպի լուծումները, սեկցիատիպ բնակելի տները (Թեյշեբայինի), պերիստիլային բակերը, սյունազարդ դահլիճներով տաճարները, աշտարակաձև կառույցները, որոնք սեպագիր արձանագրությունների մեջ հիշվում են burgana տերմինով (Էրեբունի և այլն)։ Ուրարտական ճարտարապետական մշակույթին ծանոթ էին կամար, թաղ, նույնիսկ գմբեթ հիշեցնող ձևերը, որոնք առկա են նրանց վիմափոր կառույցներում։ Այդ մշակույթին ծանոթ էր նույնիսկ բազիլիկ կառույցների ներքին երկայնական տարածությունը պարփակող աբսիդի ձև (Տաշբուրունի տաճարը)։ Թեև ուրարտացիք գիտեին նաև կարծր շինանյութի՝ բազալտի դիմադրությունը հաղթահարելու բոլոր միջոցները, բայց չհասան ճարտարապետական արվեստին սահմանամերձ տեխնիկական այլ հմտությունների մակարդակին, նրանք չգիտեին շինարարական կոնստրուկտիվ լուծումների շատ գաղտնիքներ։

Ուրարտուի անկումից հետո նրա մշակույթի ժառանգորդը եղավ նույն տարածքի վրա կազմակերպվող Հայաստանը, որը մ.թ.ա. 6-րդ դարում եկավ փոխարինելու Հին Արևելքի այդ հզոր տերությանը։

Հայ դասական ճարտարապետության աստիճանական զարգացման վաղնջական պրոցեսն առնչվեց նաև հելլենիստական մշակույթի հետ։ Թվում է թե հելլենիստական ճարտարապետությունը, հանձինս Գառնիի լայնատարած համա-

լիրի, Հայաստանում ուներ իր արագ զարգացման ու տարածման համար պոտենցիալ մեծ հնարավորություններ։ Դրա մասին են խոսում այդ համալիրը շրջափակող հզոր բերդապարիսպները, տաճարը, պալատի ու բաղնիքի մնացորդները և մյուսները։ Համալիրի առավել ուշագրավ հուշարձանը նրա հեթանոսական տաճարն է, կառուցված 1-ին դարում, դեպի կիրճը առաջացող հրվանդանաձև հատվածի եզրին, վեր խոյանալով լեռների հզոր ուրվագծերի վրա։ Տաճարին բնորոշ է ծավալային տպավորիչ հորինվածքը. դա բարձր հարթակի վրա դրված հոնիական սյունաշարի հիման վրա մշակված պերիպտերն է, որի ճակատային մասի ամբողջ լայնությունը զբաղեցնում են հանդիսավոր աստիճանները։ Այստեղից ոչ հեռու գտնվում են պալատի ու բաղնիքի շենքերի մնացորդները, իսկ վերջինիս բաժանմունքներից մեկում՝ հիանալի խճանկար հատակը։ Ուշագրավ է, սակայն, որ հունա-հռոմեական ճարտարապետության դասական այդ պատրաստի ու կատարյալ ձևերը հայկական ճարտարապետության հետագա զարգացման մեջ այնպես էլ էական նշանակություն չունեցան, և դա այն ժամանակ, երբ դասական հայ ճարտարապետությունը գտնվում էր ստեղծագործական իր բուռն որոնումների ճանապարհին և անընդհատ ուղիներ էր փնտրում ճարտարապետական նոր ձևերի ու ոճերի ստեղծման գործում։ Ազգային հայ ճարտարապետությունը իր կազմավորման հենց սկզբից ընթացավ կոնստրուկտիվ այլ լուծումների և նրանց համապատասխան ճարտարապետական այլ ձևերի որոնման ճանապարհով։ Այդ ուղին պայմանավորված էր հնամենի ճարտարապետական ավանդներով, ինչպես նաև հիմնական շինանյութի, քարի օգտագործման հնարավորությունների ամենատարբեր եղանակներով։ Ի դեպ, պատմական հայ ճարտարապետության համար չկար շինանյութի պրոբլեմ որպես այդպիսին։ Դեռ հնագույն ժամանակներից նրա հիմնական շինանյութը քարն էր, որը մշտապես մնաց ճարտարապետների բոլոր կոնստրուկտիվ մտահղացումների հիմքում։ Ի դեպ, որպես երկարատև ստեղծագործական ճիգերի արգասիք, ի վերջո, մշակվեց որմածքի «միդիս» ձևը և դրա հիման վրա հայտնաբերվեցին թաղային ու գմբեթային զանազան կոնստրուկտիվ համակարգերի լուծումներ։ Դրանով հայ վարպետները մերժեցին հելլենիստական ճարտարապետության համար բնորոշ սյունա-հեծանային կոնստրուկտիվ համակարգի կիրառումը նորաստեղծ ճարտարապետական ոճում։

Էսթետիկական առումով՝ տվյալ համակարգին բնորոշ ստատիկ հավասարակշռությունը հակադրվեց վերասլաց շարժումով օժտված ճարտարապետական նոր ձևերով։ Այս կիրառական նշանակություն ունեցող կամարաթաղային գմբեթային կոնստրուկտիվ ձևերի մեջ արդեն ներդրված էին տեխնիկական ու գեղարվեստական մտքի միավորման հետագա զարգացման, հիմա արդեն մեզ լավ հայտնի, բոլոր հատկանիշները։ Հարկ է, սակայն, նշել, որ այս փուլը, համեմատած նախորդ բոլոր փուլերի հետ, ինչպես ճարտարապետական, այնպես էլ կոնստրուկտիվ մտքի առումով, բնորոշվում է ոչ թե աստիճանական, այլ թռիչքաձև զարգացումով։

Կազմավորման այս պրոցեսը սկսվեց IV դարի սկզբում, ֆեոդալական հասարակարգի սաղմնավորման և քրիստոնեության հաստատման շրջանում, երբ նոր դավանանքը հին աշխարհի երկրների շարքում առաջին անգամ Հայաստանում հռչակվեց որպես պետական կրոն։

Նոր դավանանքը պահանջում էր իրեն համապատասխան նոր պաշտամունքային կառուցվածք, որպիսին դարձավ բազիլիկ լուծում ունեցող երկայնական շենքը, ներսից թաղակապ, արտաքուստ երկթեք ծածկով։ Տվյալ ճարտարապետական հորինվածքն իր նախնական ձևերն ուներ ուրարտական ճարտարապետության մեջ, ինչպես նաև Միջագետքի համանման կառուցվածքների ճարտարապետական ավանդույթներում (Աբու—ի տաճարը Աշնունակում, Իշտարի տաճարը Աշուրում, Ուպի—ի տաճարը և այլն), այս դեպքում որպես ատավիստական երևույթ։ (Նկ. 9—1,2,3)։

Այս երկու ճարտարապետական մշակույթների՝ Ուրարտուի և Հայաստանի պաշտամունքային կառույցների կապող օղակներից մեկը, հավանաբար Տաշբուրունի տաճարի ճարտարապետական տիպի հորինվածքն է (Նկ. 9—5), որով, ինչպես կարծում ենք, սկսվել է վաղ հայկական պաշտամունքային կառույցների նախնական ձևերի ստեղծագործական առաջխաղացումը։ Դրա ցայտուն ապացույցը, դասական հայ ճարտարապետական



Նկ. 1. Եգիպտոս— պիլոն Կառնակի համալիրում։

սաղմնավորման շրջանին պատկանող վաղնջական բազիլիկ ձևերն են, որոնցից է, օրինակ, Թանահատը (Նկ. 9—6)։
Այն լայնական շենքն է, և հատակագծային լուծումների իր բոլոր սկզբունքներով նման Տաշբուրունին։ Այստեղ ևս հիմնական մուտքը՝ ինչպես և Տաշբուրունում, լայնական ճակատից է ու, հավանաբար, այստեղի սյունաշարը կրկնում է Տաշբուրունում արդեն անհետացած նման ձևը, որի մասին վկայում է պատի պահպանված ելուստը[1]:

Զարգացման հետևյալ աստիճանը արտացոլված է այն կառույցներում, որոնք երկայնական ճակատներում արդեն ունեն երկուական մուտք (Դիրաքլար, Դառնի և այլն) և որոնցով էլ ավելի է շեշտվում կառույցի տվյալ կողմը, որպես նրա գլխավոր ճակատ։ Սրանք են պատմական հայ ճարտարապետության նախնական ձևերի կազմավորման, Ուրարտուի ճարտարապետության հետ առնչության առաջին գծերը (Նկ. 9.)։

Հետագայում պաշտամունքային այս շենքերում լայնական լուծումը փոխարինվում է երկայնական լուծումով ու անհետանում։ Իսկ վերջինս էլ, գմբեթային համակարգերի ազդեցության ներքո արտահայտվում է գմբեթավոր բազիլիկների ձևով (Օձուն, Գայանե)։ Սակայն այդ վերջիններում տեսողական առումով, ներքին տարածության ընդգրկումը դեռ հեռու է լիարժեք լինելուց, քանի որ նրանց մույթերը, իրենցով դուրս մղելով տարածությունը, պատնեշում են թեմում ծավալվող արարողությունները։ Շուտով, այս խոչընդոտը վերացվում է, երբ առաջ են գալիս դահլիճային համակարգերը, որոնցում անհետանում են ավանդական մույթերը և հանդես են գալիս ներքին կենտրոնական տարածությունը կազմավորող այլ սկզբունքները։ Այդ առումով, բնորոշ է, երբ Տրդատը Անիի Տիրամոր տաճարի իր կառուցվածքում, նորից է անդրադառնում գմբեթային բազիլիկ ձևին, այնտեղ արդեն մույթերը այնքան էին մոտեցված երկայնական պատերին, որ հետագայում, նրանց խարիսխները ստիպված են լինում տաշել, կողքի նավերում շարժում կազմակերպելու համար։

Նկատելի է, որ գմբեթավոր բազիլիկ կառուցվածքներում առկա են ոչ միայն ատավիստական երևույթներ, այլև նրանցում արտահայտված են ճարտարապետական ձևերի զարգացման հետագա սաղմեր։ Այսպես, երկայնական և կենտրոնագմբեթ համակարգերի սինթեզի հիման վրա ստեղծված են տարածական նոր լուծումներ (Թալինի տիպը), որտեղ այս երկու տարբեր ձևերը ստեղծում են ոչ թե հիբրիդային համակարգ,

[1] 1975 թ. Թանահատի ներսում, փլատակների մաքրման ժամանակ, ճարտարապետ Ա. Աբրահամյանի տեղամասում ճարտարապետ Հր. Գասպարյանը բացեց ուրարտական թագավոր Արգիշտի II սեպագիրը, դրանով հաստատվեց, որ ուրարտացիք ժամանակին հասել էին մինչև Սյունիքի պատմական տերիտորիան։ Այս հանգամանքը, թեև անուղղակի, բայց, այնուամենայնիվ, ամրապնդեց մեր միտքը՝ քննարկվող ճարտարապետական մշակույթների կապերի մասին։

այլ զարգացման պրոցեսի նոր արտահայտություն։ Ավելի ուշ իշխող դեր են ստանում գմբեթավոր դահլիճները, որոնցում արդեն արտահայտված են վերոհիշյալ տարածական ձևերի ներդաշնակ միասնությունը դրսևորող որոնումների հաջորդ քայլերը։

Եվ վերջապես մի հարց ևս, կապված բազիլիկ կառույցների հետ։ Թույցե այս վերջինների սյունասրահներում շինված արտաքին խորշերը, վերարտադրվելով կառույցների ներսում, իսկ հետո կառուցապատվելով, ստացել են ավանդատների ձևով նոր հորինվածք։ Կարծես այդ է հաստատում Եղվարդի բազիլիկ կառույցի ներսում գտնվող բաց խորշի յուրօրինակ հորինվածքը, որը, հավանաբար, արտահայտում է հենց այդ զարգացման միջանկյալ աստիճանը (Նկ. 16)։

Սակայն, հայ ճարտարապետության վաղ միջնադարյան մշակված բազմաթիվ տիպերի մեջ նրանց գագաթնակետը դարձան կենտրոնագմբեթ համակարգերը։ Այս համակարգերը իրենց հորինվածքների առումով, արտահայտված են մի շարք տարբերակներով, բայց դրանց բոլորի հիմքում ընկած են իրար հետ հաջորդաբար շաղկապված անցումային որոշակի ձևեր։

Նախնականը՝ ուրարտական աշտարակաձև տաճարների քառակուսի հատակագծերն են, հետագայում՝ քառակուսուն արևելյան կողմից կցված աբսիդային ձևն է (Ողջաբերդ), ապա քառաբսիդ հորինվածքն է (Ծովիգ), որի մյուս աստիճանը Հռիփսիմեի տիպն է՝ չորս խորանով և իրենց չափերով սրանցից ավելի փոքր 4 անցումների համակարգով և վերջապես բազմաբսիդ կառուցվածքն է, որտեղ գմբեթատակ հենարանը կազմում է հավասարակողմ բազմանկյուն (Եղվարդ (Նկ. 10)։

Սրանով կարող ենք տեսնել, որ կենտրոնագմբեթ համակարգերը, ինչպես նաև բազիլիկայ ձևերը Հայաստանում ունեն իրենց զարգացման մի կուռ շղթա, որի ակունքները սկսվելով վաղընչական ժամանակներից, հաջորդաբար ստեղծել են տեղական ճարտարապետությանը բնորոշ ինքնուրույն արտահայտությունները։

Կենտրոնագմբեթ կառույցներից ամենակատարյալը Զվարթնոցն է, որը կլոր հատակագծով ներգծված հավասարաթև խաչով և չորս հզոր մույթով եռահարկ մի շենք էր։ Զվարթնոցի և նման



Նկ. 2. Բաբելոն— շքերթի փողոցը վերանորոգումից հետո։

կառույցների ճակատային հարթությունները արտաքուստ շրջանաձև հորինվածքի այն օրինակներն են, որոնց տեսողական լրիվ ընկալումը պայմանավորված է համապատասխան կորագիծ շարժումով։ Նման հորինվածք ունեցող հուշարձանների իշխող տարածական ձևը հանդիսացող նրա կենտրոնագմբեթ համակարգերի միջուկը համընկնում է նրա ողջ ճարտարապետական օրգանիզմի ծանրության կենտրոնի հետ։

Դեպի վերնահարկ տանող աստիճանների հետքերի ուղղությամբ տարբեր հեղինակների բոլոր հետազոտությունները, առ այսօր ոչ միայն մնում են ապարդյուն, այլ, ըստ երևույթին, նաև անհիմն։ Խնդիրն այն է, որ վերնահարկի հիմնական մասից պետք է, որ պատնեշվեին բեմի կողմըն ուղղված անհրաժեշտ տեսարանները։ Այդ կապակցությամբ էլ պարզ է, որ այն չէր կարող ծառայել իրեն վերագրվող այդ նպատակին։ Իսկ եթե անդրադառնանք հայ ճարտարապետների նախասիրություններին, այն է՝ շեշտել հուշարձանում ամեն մի կոնստրուկտիվ ձև, հասցնելով այն ճարտարապետական լիարժեք բաղադրիչի աստիճանին, ապա այդ դեպքի համար առավելապես տարօրինակ կթվա աստիճանների ու նույնիսկ նրանց հետքերի բացակայությունը Զվարթնոցում։ Հետևաբար, ժամանակակից տեսակետները՝ հուշարձանում տեսնել փայտյա աստիճաններ, և, այն էլ տեղադրված որևիցե անհարմար



Նկ. 3. Աթենք— միջնաբերդի մուտքը վերանորոգման ընթացքում։



Նկ. 4. Աթենք— Դիոնիսոսի թատրոնը վերանորոգումից հետո։

տեղում, ներկա դեպքում, սյան հետևում, ավելի քան անհիմն է։

Կասկածից վեր է, որ հուշարձանի երկմտանք առաջացնող վերնահարկը հիմնականում և որպես առաջնահերթ միջոցառում ծառայել է կոնստրուկտիվ նպատակների։ Այդ ամբողջ ծավալը, իր միջհարկանի ծածկով հանդերձ, ներկա դեպքում խաղացել է կոշտ շրջանակի դեր ու ստեղծված է եղել բարձր ծավալից հաղորդվող ճնշումը մարելու համար, ճիշտ այնպես ինչպես ծառայում էին արկբուտաները (հենակամարները) գոթական տաճարներում։

Նշված հանգամանքը, ավելի համոզիչ արտահայտված է Գագկաշենում, որի կտրվածքից (վերակազմությունը Թ. Թորամանյանի) պարզ է թե վերնահարկը որքան անհարմար է մարդկանց տեղավորման համար, եթե չասենք, որ նրանում էլ չկա դեպի վեր տանող աստիճանների որևէ հետք։

Զվարթնոցի ներքին, գմբեթային համակարգով հանդերձ, բավականին բարդ այս տարածական օրգանիզմը, որում միավորված են կենտրոնագմբեթ համակարգերին բնորոշ բոլոր գծերը, դառնում է հետագա հայ ճարտարապետության այն ավանդական և ունիվերսալ թեման, որն իր պոտենցիալ ուժի շնորհիվ բազմաթիվ նոր ձևերի ծագման պայմաններ է ստեղծել։ Խնդիրն այն է, որ դասական հայ ճարտարապետության պաշտամունքային մոնումենտալ շենքերի հիմնական կոնստրուկտիվ հանգույցը կազմող նրա գմբեթային համակարգը ոչ միայն ծավալային ձևերի վերասլաց զարգացման ուրույն ու կատարյալ դրսևորումն է, նրա քարային ձևերի տեկտոնիկ հատկությունների դրսևորումը, այլև այն, որ նրան բնորոշ են նաև կոնստրուկտիվ տարբեր արտահայտությունների իրար հետ պայմանավորված լուծումներ։ Խոսքը գմբեթային համակարգերի տրոմպային ու առագաստային փոխանցումների մասին է, կամ այլ կերպ այն հենակների, որոնց վրա նստում են գմբեթային քառակուսու անկյունային մասերում կախված թմբուկային օղակների հատվածները (Նկ. 13)։

Մոնումենտալ կառույցների գմբեթային համակարգը, նրանց կոնստրուկտիվ կմախքի հիմնական հանգույցը, բնորոշվում է զարգացման իր օրինաչափ լուծումներով։ Այստեղ, այդ կառույց-



Նկ. 5. Կոնստանդնուպոլիս— Ս. Սոֆիայի տաճարը։



Նկ. 6. Կոնստանդնուպոլիս— Ս. Սոֆիայի տաճարի կոնստրուկտիվ կառուցվածքը։

ների տեխնիկական պրոբլեմները, իրենց հիմնական բնորոշումների առումով, պայմանավորված են տրոմպային ու առագաստային փոխանցումների համակարգերով։

Ընդունված է մեզ հասած նախնական գմբեթներից հնագույնը, եթե ոչ առաջինը համարել Տեկորի տաճարի գմբեթը, որը թեև ավերվել է դարաշրջանի սկզբում, սակայն մանրամասնորեն հայտնի է շինարարական իր ձևերով Թ. Թորամանյանի չափագրությունների ու հետազոտությունների շնորհիվ[1]։ Այդ գմբեթային համակարգի այն մասը, որն արտաքնապես խորանարդաձև է, կատարում է նրա թմբուկի դերը։ Ըստ Թ. Թորամանի ենթադրության ներքուստ այն ունեցել է հատած բուրգի ձև, որը կազմված է ութ համապատասխանաբար թեք հարթություններից (Նկ. 11—3)։ Հետևաբար, նրանում կարելի է տեսնել շինարարական ատավիստական երևույթներ, որոնք գալիս են կեղծ կամարների կառուցողական սկզբունքներից, որոնցում և պետք է փնտրել գմբեթի այս ձևի նախորդ աստիճանը։ Հավանաբար որպես նման աստիճան այդ կոնստրուկցիայի համար ծառայել է ժողովրդական ճարտարապետության մեջ հայտնի ծածկերի հազարաշեն կոչված համակարգը, եթե միայն չնկղմվենք դարերի էլ ավելի խորքը, ցույց տալով մեգալիթյան համանման կառուցողական ձևեր, օրինակ՝ Օշականի դոլմենները (Նկ. 11—1, 2)։

Գմբեթային կոնստրուկտիվ համակարգի զարգացման հետևյալ աստիճանը, բնորոշվում է տրոմպային փոխանցումներով։ Տրոմպները սովորաբար տեղավորված են գմբեթատակ քառակուսու անկյունային մասերի վրա և մնում են թմբուկի ծավալի բարձրության սահմաններում՝ Օձուն, Լմբատ, Բագարան և մյուսները (Նկ. 11—4)։

Դրանց կողքին առաջանում են նաև այնպիսի համակարգեր, որտեղ տրոմպները, հենվելով անմիջապես մույթերից բարձրացող կամարների վրա, ստեղծում են գմբեթատակ բազմանկյուն, իրենք, սակայն, մնալով նրանից ներքև՝ Արգնի, Պտղնի և մյուսներ (Նկ. 11—5)։

Հետևյալ քայլը, որը կատարվեց այդ կոնստրուկտիվ համակարգում՝ տրոմպների փոխարինումն է առագաստային ձևերով, որոնք գմբեթային մասի համար ստեղծում են հիմա արդեն ավելի հարմար կլոր հիմնատակ (Նկ. 11—6)։ Այսպիսով, գմբեթների հիմնատակերը, իրենց զարգացման փոխակերպումների ընթացքում ընդունում են՝ քառակուսու, բազմանկյան ու կլոր ձևերը (Նկ. 13)։ Հասկանալի է, որ տրոմպների ու առա-

[1] Թ. Թորամանյան. Պատմական հայ ճարտարապետություն ուսումնասիրություն, ա. Տեկորի տաճարը. Տփղիս. 1911։



Նկ. 7. Ա ն ի — Փրկիչի եկեղեցին։

գաստների համատեղությունը միևնույն հուշարձանում (Հայաստանում՝ Ավան, Հռիփսիմե, Վրաստանում՝ Կումուրդո) մի միջանկյալ օղակ է, տվյալ կոնստրուկտիվ լուծման մեջ, որն արտահայտում է զարգացման աստիճանական պրոցեսը։

Հայաստանի գմբեթաշինարարության բնագավառում իր եզակի տեղն է գրավում Տաթևի Պողոս-Պետրոս եկեղեցու ներկայումս փլված գմբեթը։ Վեղարի գանգվածի, կարասներով թեթևացնելու հայտնի միջոցը նրանում, փոխարինված է կոնստրուկտիվ այնպիսի լուծումով, որը ստեղծում է կրկնակի գմբեթի հայտնի ձևը։ Այս վերջինս, սակայն, հետագայում չգտավ իր տարածումը, թերևս այն պատճառով, որ երկրում չկար մեծածավալ գմբեթների պահանջ, որը ստեղծվում էր այդ համակարգերի միջոցով[1]։

Այսպիսով, այս կոնստրուկտիվ տարրերի մեջ ներդրված են տարածական մոնումենտալ ձևերի պլաստիկայի բոլոր հնարավոր փոխարկումների բազմապիսի դրսևորումները, ընդհուպ նրանց դիֆերենցված առանձին արտահայտությունները։

Ճարտարապետական մշակույթի զարգացման այս բարձր մակարդակը Հայաստանում, որն ապրում էր կարծես անխափան վերելք, VII դարում արտաքին արշավանքների հետևանքով ընդհատվեց մի քանի դար։ Ծավալված համառ, արյունալի պայքարի բովում, կործանվեցին բազմաթիվ հոյակերտ հուշարձաններ, իսկ նրանց հետ մեկտեղ աստիճանաբար մոռացվեցին դարերով ստեղծված ու դարերից եկած շատ ավանդույթներ։ Սակայն, անկումը ժամանակավոր էր, քանի

1 Ըստ Գ. Աղաբաբյանի չափագրության։



Նկ. 8. Ա ն ի — Գագկաշենի եկեղեցին։



1



6



2



7



3



8



4



9



5



10

Նկ. 9. Բազիլիկատիպ շենքերի հատակագծային հորինվածքների զարգացումը։

2—2959




Նկ. 10. Կենտրոնագմբեթ շենքերի հատակագծային հորինվածքների զարգացումը։

որ ստեղծագործական փայլուն կյանքով ապրող հայ ճարտարապետության զարգացման դարաշրջանը դեռ առջևումն էր։

Այդ նոր վերելքը սկսվեց X դարում, քաղաքների նշանակալից զարգացումով, որոնց թվում էին՝ Անին, Արծնը, Կարսը և մյուսները։ Հայաստանի պատմական կյանքի կապերի խառնարանը դարձավ նրա վեհաշուք մայրաքաղաք Անին։ Այստեղ էին կենտրոնանում ստեղծագործական առավել նշանակալից գործիչները և այստեղ էր ստեղծագործում ժամանակի մեծ ճարտարապետ Տրդատը։ Անին հայ միջնադարյան ճարտարապետության զարգացման բնագավառում առանձնակի տեղ է գրավում. այնտեղ ստեղծված ու մշակված ճարտարապետական ձևերը շատ շուտով դառնում են համահայկական, կրկնվելով երկրի տարբեր նահանգներում։ Այս առումով Անին միջնադարյան Հայաստանի ճարտարապետության օրենսդիր կենտրոնն էր։ Դասական հայ ճարտարապետության VII դարի համեմատությամբ այս դարաշրջանը բնորոշվում է նաև իր ուրույն գծերով։ Ամենից առաջ դա X—XI դարերից սկսած տեխնիկական մտքի կատարելագործումն է։ Այս վերջինս նկատելի է ինչպես պաշտամունքային, այնպես էլ աշխարհիկ կիրառական նշանակություն ունեցող կառույցներում։ Դա են ապացուցում, օրինակ, իրենց նրբին ձևերով, սակայն հզոր կամարներով գետերի ժայռոտ ափերը միացնող միաթռիչք կամուրջները։ Տվյալ մտքի լավագույն օրինակն է նաև Բյուզանդիայի մայրաքաղաքի ս. Սոֆիայի եկեղեցու մեծ գմբեթի վերակառուցումը, որը հայ շինարարների տեխնիկական մտքի կատարելության բարձր արգասիքն էր։ Ի դեպ, անցյալի հայ շինարարների մոտ իրենց մասնագիտության իմացաբանական կողմի տարբեր արտահայտությունները երբեմն դրսևորվում էին կարծես, նաև, խաղացկուն ձևով, ինչը ցուցաբերում է վարպետության, թվում է թե, անեզր սահմանները։ Ընդ որում, կառույցների կոնստրուկտիվ նախասիրություններում նկատելի են ճարտարապետական ձևերի զգացողության նուրբ դրսևորումներ։ Արդյոք դա չի հաստատում Տաթևի հանրահայտ ճոճվող սյան հորինվածքը, որը կարծես ստեղծվել է շինարարական արվեստի զարմանահրաշ հատկություն-





















*Նկ. 11. Գմբեթների կոնստրուկտիվ ձևերի զարգացումը*



Նկ. 12. Գմբեթների կոնստրուկտիվ ձևի տարբերակ։

ների արտահայտման համար[1]: Նույնով չի՞ բացառվում արդյոք, Անիի Հովվի եկեղեցու հորինվածքը, որի միջնարկանի ծածկը պահվում է արտաքին բազմանիստ պատերից դեպի կենտրոն ուղղված կամարների վրա, որոնք կենտրոնում հենվում են կախված վիճակում գտնվող փականաքարին։ Կամ թե Ցախաց քարի դամբարանի համանման կամարի համակարգը, գլխավոր ճակատի խորշի վրա։ Ինչպես նաև նույն դամբարանի ծածկի աստղաձև թաղը ու վերջապես Արատեսի վանքի երեք կամարներով կազմված համակարգը, որը պահում է ծածկը։ Այս օրինակներում դրսևորված է քարի, որպես շինանյութի, ինչպես նաև կոնստրուկցիաներում ծագած ուժերի բաշխման օրինաչափությունների գիտակցված օգտագործումը։

X—XI դարերի քաղաքաշինության ու աշխարհիկ ճարտարապետության զարգացման հետ համատեղ, ինչպես և առաջ, զարգանում էին նաև պաշտամունքային ճարտարապետությունը, և հատկապես վանական համալիրները, որոնք իրենց նոր արտահայտությամբ վերելքի հետևյալ աստիճանին բարձրացրին դասական հայ ճարտարապետությունը։ Տեղավորված քաղաքների աղմկոտ կյանքից հեռու, կիրճերի, անտառների խորքում, անառիկ սարալանջերին, վանական համալիրներն աստիճանաբար վեր էին ածվում ֆեոդալական հզոր կազմավորումների, որոնցում միայն վանականների թիվը երբեմն հասնում էր հազարի։ Սակայն, վանական համալիրները ժամանակին նաև երկրի հոգևոր մշակույթի նշանավոր կենտրոններն էին և նրանցից առավել հայտնիներում տեղավորված էին միջնադարյան Հայաստանի հռչակավոր համալսարանները՝ որոնք ժամանակի գիտության բարձր մակարդակի վրա հիմնված ուսումնական հաստատություններ էին (Գլաձոր, Տաթև, Սանահին)։

Վանական համալիրների կառուցապատումները պայմանավորված էին հայ ճարտարապետության զարգացման այն օրինաչափություններով, որոնցով կանխորոշվում էր ամեն մի հետագա զարգացում, ամեն մի նոր ոճական ուղղություն։ Ինչպես ասվեց, պատմական ամեն մի հաջորդ շրջանի ճարտարապետությանը բնորոշ ոճական ուղղության սաղմերն արդեն առկա էին նախորդ շրջանի ձևերում և նոր պահանջների պայմաններում զարգանալով դրանք նոր ու էլ ավելի ակնառու ձևեր էին ստանում։ Սրանց շնորհիվ ստեղծվում էին ճարտարապետական մշակույթի զարգացման հաջորդականություն, ինչպես նաև համապատասխան ավանդույթներ, իրենց նոր ու յուրովի մեկնաբանություններով։ Այս ամենը բացահայտում է հայկական վանական համալիրների կազմավորման ընթացքը, նրանց ձևերի ներդաշ-

1 Ի դեպ, որոշ ընդհանրություն գոյություն ունի այս սյան և հնդկական Աշոկի թագավորի օրոք հիմնված Ստամբու կոթողի միջև, թեև ակնհայտ է, որ այդ կոթողները իրար հետ կապ չունեցող ավանդույթների արգասիք են։

*նակության գաղտնիքները, որոնք այնքան բնորոշ են հայկական ճարտարապետության այդ հուշարձաններին։*

*Համալիրները, սովորաբար լավ պաշտպանված էին բավականին հզոր բերդապարիսպներով, հաճախ ինչպես անառիկ բերդեր և բացի պաշտամունքային կառույցներից պարփակում էին նաև՝ գավիթներ, գրատներ, սեղանատներ, խաչքարեր, զանգակատներ, ինչպես նաև կոմունալ ու տնտեսական նշանակության տարբեր շենքեր։*

*Պատմական Հայաստանի վանական համալիրներից առավել հայտնի են՝ Սանահնի, Հաղբատի, Հաղարծնի, Գոշավանքի, Տաթևի, Սևանի, Կեչառիսի, Մարմաշենի հուշարձանախմբերը, որոնցում առկա են ավարտուն ու ճարտարապետական բարձր մակարդակով կերտված ձևեր ու կոնստրուկտիվ հորինվածքներ։*

IX—XIV *դարերի հայկական ճարտարապետությանը բնորոշ քարային կոնստրուկցիաների բարձր մակարդակի համեմատությամբ մի ուրույն գագաթ է հատվող կամարների համակարգը, որի կոնստրուկտիվ մտահղացումը հատկապես արտահայտվում է շենքերի ներքին տարածության մեջ, գլխավորապես վանական գավիթներում, որոնցից ամենակատարյալը գտնում ենք Հաղբատում*[1]*։ Այստեղ կառույցի տարածական հորինվածքում հիմնական կոնստրուկտիվ նպատակն արտահայտված է ձևերի պարզ ու հզոր դրսևորումներով։ Տվյալ համակարգով է, որ առաջանում է ներքին ընդարձակ տարածություն, առանց կրող մույթերի կամ սյուների միջնորդության, ինչպես նաև այն, որ բոլոր լարված ուժերը, որոնք գոյանում ու մարվում են նրա կոնստրուկտիվ տարրերում, արտահայտված են պարզորոշ ու տեսանելի, առանց քողարկված ճարտարապետական ձևերի միջնորդության։ Վերջինս հատուկ է գոթական ոճի կառույցներին, ուր կենտրոնական թաղածածկ համակարգը պահում են շենքից դուրս բերված հենակամարները (արկբուտան)։ Այս առումով ուշագրավ է Սանահնի զանգակատան երրորդ հարկի ներքին, համեմատաբար, փոքր տարածության մեջ կիրառված հատվող*



*Նկ. 12 ա. Գմբեթների կոնստրուկտիվ ձևի տարբերակ։*

*կամարների համակարգը, որով միայն կարելի էր այստեղ, առանց ավանդական կոնստրուկտիվ միջոցառումների, վեր խոյացնել ռոտոնդաձև գմբեթը։ Իսկ այս, արդեն ինքնին հաստատում է, որ կոնստրուկտիվ համակարգի մշակումը անշեղորեն պայմանավորված էր նրա կիրառման ռացիոնալ հանգամանքներով։ Սակայն, այս տեխնիկական օրինաչափությունները ճարտարապետական արվեստը որպես այդպիսին բոլորովին էլ իրենց չեն ենթարկում, այլ այն դարձնում են ավելի հստակ ու որոշակի, քանի որ նրանում առկա է կոնստրուկտիվ համակարգի էսթետիկական իրացման նախադրյալը։*

---

1 Յուրգիս Բալտրուշայտիս. *Հատվող կամարների պրոբլեմը և Հայաստանը։ ՀՍՍՀ ԳԱ Հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի սեկտոր, Հայկական ճարտարապետության պատմության հարցեր, 5, Երևան, 1973 թ.։*




Նկ. 13. Գմբեթատակ հենարանների ձևերի զարգացումը։

Անդրադառնալով տաճարների արտաքին ճակատներին, նշենք, որ այս շրջանում ավելի հաճախ ենք հանդիպում դեկորատիվ կիսասյուների, որոնք էլ ավելի վերսլաց են դարձնում կառույցների ընդհանուր ճարտարապետական ձևերը։ Այս սյուներում, ինչպես կասեր Գ. Զեդլմայրը, տեսանելի է գեղարվեստական համակարգը և ոչ թե հիմնական ձևերի կոնստրուկտիվ կմախքը։ Ի դեպ, եթե Հունաստանում, ինչպես նաև Հռոմում ու այլուր, սյունը ճարտարապետական կառույցների հիմնական տարրն է, ապա Հայաստանում դրան փոխարինում է պատը, նրա հարթությունը բնորոշող խիստ մոնոլիտ արտահայտչականությամբ։

Վանական համալիրների հետ մեկտեղ բավականին ուշագրավ են նաև աշխարհիկ ճարտարապետական համալիրները, նույնպես իրենց բնորոշ տարածական լուծումներով, ինչպես նաև, կառույցների տարբեր կազմով։

Այսպես, Արագածի հարավային լանջին փռված այդ ամրոցներից մեկը, Ամբերդը, գրավելով երկու լեռնային գետակների անդնդախոր կիրճերի հատումից առաջացած եռանկյունաձև սարահարթի բավականին մեծ տարածքը, ժամանակի ուժեղագույն ռազմաստրատեգիական առաջապահն է եղել, դեպի արևմուտք, հատկապես դեպի Անի տանող բոլոր ճանապարհների համար։ Սա պատկանում է վերը նշված քաղաքաշինական այն բնորոշ սկզբունքներին, որոնք ամբողջովին ելնում են հինավուրց ավանդույթներից։ Անդնդախոր այդ կիրճը ինքնին ամրակուռ պաշտպանական մի սահմանագիծ է ամրոցի համար։ Սակայն վերջինս ունի նաև հզոր բերդապարիսպների համակարգ, հատկապես հյուսիսային հատվածում, որը ռազմական առումով մի հուսալի պատվար է։ Այս հզոր պատին է հպված երկհարկանի մեծ պալատի շենքը, որին կից կառուցված են բազմաթիվ օժանդակ շենքեր, ջրավազան, ուր հավաքվում է սարերի սառնորակ աղբյուրներից կավե խողովակներով բերված ջուրը, բաղնիքի շենքը և այլ շենքեր։ Ավելի հարավ տեղավորված են մի շարք շենքեր և դրանց թվում դեպի փետը տանող գաղտնի ճանապարհը, արտաքուստ մեծ հմտությամբ քողարկված դեպի ցած իջնող աստիճաններով, ինչպես նաև մոնումենտալ եկեղեցին։

Հասկանալի է և օրինաչափ, որ այս աշխարհիկ համալիրներում գերիշխողը ոչ թե եկեղեցին է, ինչպես վանական համալիրներում, այլ աշխարհիկ շենքը, տվյալ դեպքում ամբողջ տարածքի վրա իշխող, պալատի ծավալները։

Աշխարհիկ ճարտարապետության համար կարևոր պրոբլեմ էր նաև շենքերի բազմահարկությունը, որը Հայաստանի տարածքի արդեն հինավուրց ժամանակաշրջանում իր լուծումը գտավ դեռ ուրարտական կառուցողական պրակտիկայում։ Այդ են վկայում Թոփրախ-կալեյում հայտնաբերված բրոնզե թիթեղիկների, Կեֆկալեսիի քարե բեկորի վրա պատկերված եռահարկ բնակելի շենքերը, ինչպես նաև Արագածի ու Կարմիր բլուրի պեղումների արդյունքներով հաստատված երկհարկանի շենքերի գոյությունը։ Կարմիր բլուրի միջնաբերդի հարավային մասի մեծ դահլիճում գտնվեցին միջհարկանի փայտյա ծածկի մնացորդներ, որոնք իրենց նախնական կոնս-

տրուկտիվ տեսքով վերարտադրվում են իրենց ստույգ չափերով։

Բազմահարկության այդ նույն պրոբլեմը, իր լուծումը գտավ նաև հայ դասական ճարտարապետության մեջ։ Ու թեև այստեղ, մինչև VII դարը ներառյալ մենք չենք գտնում մեզ հասած բազմահարկ շենքեր, իրենց տեսանելի մնացորդներով, եթե չհաշվենք, միայն արտաքնապես արտահայտված Զվարթնոցի բազմահարկ լուծումը։ Հետագայում բազմահարկ շենքի լուծումը դրսևորվեց Անիի հայտնի Պարոնի պալատում։ Այստեղ լայնական պատերը վեր են խոյանում երկու հարկի բարձրությամբ, ընդ որում, միջհարկանի թաղածածկերը պատերի համար ստեղծում են կոնստրուկտիվ կոշտ համակարգ ու հուսալի կերպով պահում դրանք։ Դա նկատելի է հատկապես հիմա, երբ շենքը իր հիմնական մասով վաղուց արդեն գտնվում է ավերված վիճակում (Նկ. 26)։

Պատմական անբարենպաստ իրադարձությունների հետևանքով, XIV դարի երկրորդ կեսից երկրում նորից կանգ առավ մոնումենտալ շինարարությունը, ճարտարապետական արվեստի զարգացումը նորից կասեցվեց և այս անգամ արդեն մի քանի դարով։ Նրա նոր վերելքը, որը սկսվեց 17-րդ դարում, այլևս չփայլատակեց, նախորդ դարերի ճարտարապետական արվեստի մեծագույն գոհարների նման։

Այդ ժամանակ, հայ ճարտարապետությունը իր դրսևորումը գտավ աշխարհիկ բազմաթիվ հայկական գաղթօջախներում, ուր պատմական հանրահայտ ճակատագրի բերումով հավաքվում էր պանդխտության ճանապարհը բռնած հայ ժողովրդի մի մասը։ Այնտեղ ստեղծվեց իր տեսակի մեջ բավականին ուրույն ու պատմականորեն հետաքրքիր ճարտարապետություն, ազգային դասական ճարտարապետության ավանդույթներով և տեղական ձևերի միասնական կապերով, որոնք հաճախ ստեղծում էին թեև հիբրիդային, սակայն իրենց ձևերի մեջ շատ ուսանելի ստեղծագործական արտահայտություններ։

Այսպիսով, կանգ առավ դասական հայ ճարտարապետության երբեմնի բուռն զարգացող պատմական երկարատև ուղին։ Դա հայ ժողովրդի դարավոր կյանքի այն դրամատիկական պահն էր, երբ պատմության գիրկն էին անցնում












Նկ. 14. Թաղերի կոնստրուկտիվ ձևերը։






*Նկ. 15. 15ա, 15բ, 15գ— Ճակտոնների փոխակերպումները։*

*բազում ստեղծագործական հոյակերտ արգասիքներ։ Եվ միայն դարեր անց, պատմական հայ ճարտարապետության համար եկավ նոր ժամանակաշրջան, գիտական հետազոտությունների ժամանակաշրջանը։ Հայ ճարտարապետությունը իր վրա է բևեռում ճարտարապետության եվրոպացի հետազոտողների ուշադրությունը։ Նրանով սկսում են զբաղվել նաև ճանապարհորդները, ինչպես նաև հիմա արդեն հանրահայտ գիտնականներ՝ Դյուբուա Դ. Մոմպերեն, Շ. Տեքսիեն, Օ. Շուազին, Մ. Բրոսեն, Շ. Դիհլը, Խ. Լինչը, Աբիխը, Հ. Ստրժիգովսկին, իսկ մեր երկրում հատկապես՝ Ն. Մառը, Հ. Օրբելին, Թ. Թորամանյանը, Ն. Տոկարսկին։*

*Պետք էր ժամանակ, հետազոտական մտքի լարում, որ նոր հայտնագործություններով ուղեկցվող պատմական հայ ճարտարապետությունը, արդեն լայնորեն մուտք գործեր Եվրոպայի գիտական գրականության ոլորտները, իսկ հետագայում նորանոր ուսումնասիրություններով իր հաստատուն ու պատշաճ տեղը գրավեր նրանում, որպես համաշխարհային մշակույթի կարևոր ու նշանակալից հատված։*








*Նկ. 16. Ավանդատների ստեղծման ընթացքը։*

ԳԼՈՒԽ II.

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՄԱՆ ՈՒ ՊԱՀՊԱՆՄԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Այսպիսով, Հայաստանի երկարատև պատմության ընթացքում նրա բազմաթիվ սերունդների ստեղծագործական ջանքերի շնորհիվ, երկրի տարածքի վրա ամենուրեք բարձրացան ճարտարապետական շինություններ, որոնք իրենց ժամանակի կառուցողական արվեստի մակարդակն էին արտահայտում։ Այդ հուշարձանների մի մասը հնագույն ժամանակներում լինելով անընդմեջ գործող շենքեր ու կառույցներ, պարբերաբար վերանորոգվել են, վերականգնվել և դրա հետևանքով մեզ են հասել, համեմատաբար, բարվոք վիճակում։ Նրանց կանգունությունը առ այսօր որևէ լուրջ անհանգստություն չի առաջացնում (Նման կառույցների քանակը քիչ չէ)։

Հայ ճարտարապետության դարավոր պատմության մեջ, հիրավի իր որոշակի տեղն է ունեցել նաև կառույցների վերականգնման գործը։ Ի ապացույց բազմաթիվ հուշարձանների պատերին այսօր էլ գտնում ենք վերականգնման մասին նորոգող նվիրատուների հպարտությամբ փորագրված տողեր։ Անիի Մայր տաճարի հարավային դռան մոտ, օրինակ, գրված է՝ «...Կամաւքն աստուծոյ ես Տիգրան ծառայ քրիստոսի շինեցի հալայ ինչիւք իմով զաստիճաններս մեծափառ սրբոյ կաթուղիկէիս, զոր ի բազում ամաց հետէ խարխալեալ էր...»[1]։

Նման բազմաթիվ արձանագրությունների կողքին, փայլատակում է նաև Սասունցի Դավթի կողմից Մարութա վանքի վերականգնման մասին հայ ժողովրդի մեծագույն էպոսի բանաստեղծական գեղեցիկ խոսքը։ Հիրավի, այս ամենը հին պատմության դարերի թողած դասն է, որի շնորհիվ հուշարձաններին պարգևվել է երկարակեցության հնարավորություն։

Բազմաթիվ հուշարձանների շարքում, իրենց այդպիսի երկարակեցությամբ հայտնի են հատկապես ուրարտական ջրանցքները, որոնք կառուցված լինելով մ.թ.ա. VII դարում, այսօր էլ շարունակում են իրենց գոյությունը, ջուր են մատակարարում Արարատյան դաշտի նախկինում Կուարլինի կոչվող հողերին։ Դրանցից են Դալմայի ջրանցքը, ինչպես նաև Կարմիր բլուրի արվարձաններով անցնող Ումեշինի կոչված ուրարտական մյուս, ավելի խոշոր նույնատիպ կառուցվածքը։ Ինչպես սրանք, այնպես էլ Շամիրամի ջրանցքը (կառուցված մ.թ.ա. IX դարում, Վան քաղաքի մոտ, նույնպես շարունակում է ջուր մատակարարել քաղաքին), իրենց կազմում պահպանել են ճարտարապետական բարդ կառույցներ՝ թունելներ, ջրանցույցներ, ջրամբարներ, և իրենց այդ կիրառական նշանակության շնորհիվ դարերի ընթացքում պարբերարար վերանորոգվելով, ներկայումս գլխավորում են գործող պատմական կառույցների շարքը։

Նույն պահանջների մղումով, պարբերաբար վերանորոգվել են երկրի տարբեր մայրուղիների վրա գտնվող կամուրջները, որոնց մի մասի վրայով այսօր էլ շարունակում են վստահորեն անցնել ժամանակակից, նույնիսկ փերծանր փոխադրականները։ Այդ առումով, կամուրջներն անցյալի շինարարական մտքի այն փայլուն դրսևորումներն են, որոնց կոնստրուկտիվ մտահղացումները, ենթարկվելով դարերի փորձություններին, ըստ արժանավույն են գնահատվում ժամանակակից տեխնիկական գիտության կողմից։

Իրենց երկարակեցությամբ հայտնի են նաև բազմաթիվ աշխարհիկ շենքեր ու պաշտամունքային կառույցներ։ Սրանց թվում հատկապես ուշա-

[1] Армянские надписи в Карсе, Ани и в окрестностях последнего. Перевод. Н. О. Эмина. Москва, 1887 г. стр. 13 .













*Նկ. 17. 17ա, 17բ, 17գ— Ճարտարապետական ձևերի վեր-սլաց զարգացումը*
*18. 18ա, 18բ, 18գ։*





գըրավ է էջմիածնի Մայր տաճարը, որը կառուցված լինելով IV դարի սկզբում, անընդմեջ վերանորոգվելով ու վերափոխվելով, մեզ է հասել տարբեր դարերի կառուցողական ձևերով հարըստացած։

Սակայն, պատմական երկարատև կյանքով ապրող նման հուշարձանները, իրենց նախնական ձևերի փոխակերպումների ընթացքում աստիճանաբար ստանում են նաև միջանկյալ ձևեր, որոնք յուրովի արտահայտում են ընդհանուր ճարտարապետության զարգացման պրոցեսը։

Ցավոք անցյալի ոչ բոլոր կառույցներն են, որ պահպանվել են նման բարվոք վիճակում։ Նրանց մի զգալի մասը, հատկապես աշխարհիկ կառույցները՝ բերդերը, պալատները, իջևանատներն անընդմեջ ավերվում էին, հաճախ իսպառ ոչնչացվում։ Ուստի պատահական չէ, որ կործանված կոթողների մասին մեզ են հասել միայն նրանց հնամենի անխոս բեկորները, կան գրավոր կցկըտուր տեղեկություններ, որոնք բոլորովին էլ չեն արտահայտում այդ կոթողների ճարտարապետական ձևերը։

Ասենք նաև, որ մեզ չի հասել հայ մատենագրական և ոչ մի աշխատություն, նվիրված ճարտարապետության հարցերին։ Կարելի է ենթադրել միայն, որ գրական կոթողների շարքում ժամանակին տեղ են գտել նաև այնպիսիները, որոնք թերևս տեսականորեն ամփոփել են ճարտարապետների շինարարական գործունեությունը Հայաստանում։ Մենք հակված ենք այդպիսի բովանդակություն տեսնել Ներսես Լամբրոնացու «Անվանք քաղաքաց շինողաց» ներկայումս անհետ կորած աշխատության մեջ, որի վերնագիրը այս առումով խիստ խոստումնալից է։ Ընդ որում, եթե նկատի ունենանք, որ հեղինակին այդ գրքի ստեղծման գործում դրդողն է եղել Աբու Սայիդը, որը մի շարք մասնագիտություններից բացի նաև հնագետ էր, ապա պարզ կդառնա աշխատության հիմնական ուղղություններից մեկը, ինչպես քաղաքաշինության, այնպես էլ ճարտարապետության պատմության հետ սերտ առնչությունը և որը, ի դեպ, կարող էր այդ բնագավառի առաջնեկը լինել հայ մասնագիտական գրականության մեջ։ Ներսես Լամբրոնացու տվյալ աշխատությունը իրոք պետք է որ հարուստ ու խոր բովանդակություն ունենար, ոչ միայն այն կապակցությամբ, որ արժանացել է գրավոր հիշատակության, այլև, որ աշխատանքը գրվել է հայ ճարտարապետության զարգացման մի հարուստ ժամանակաշրջանում (XII դար)։ Մյուս կողմից, դա այն դարաշրջանն էր, երբ ճարտարապետությունը որպես այդպիսին, գիտության և արվեստի հետ մեկտեղ լայն տարածում գտած բնագավառներից էր, իսկ ճարտարապետի գործունեությունը՝ արժանի խրախուսանքի, մեծարման և ընդօրինակության։ Օրինակներից ամենացայտունը Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունուն վերաբերող մատենագրական այն տեղեկությունն է, որի համաձայն թագավորն ինքն էր կազմել իր պալատական այգու հատակագիծը և նախագծի իրացման ընթացքում գործունյա օժանդակությամբ ցուցաբերել ճարտարապետին՝ նշանավոր Մանուելին։[1] Այս կարգի շինարարական ավանդույթները պահպանվեցին բավական երկար, քանի որ նույնիսկ երկու դար հետո էլ, Անիի հարուստներից Սահմադինի գործակատար Սամդինը ինքն էր առանց ճարտարապետի օգնության հիմնադրել իր պալատը, որի մասին էլ հանդիսավոր կերպով նշել է շենքի ճակատամասին թողնված արձանագրության մեջ։[2]

Պատմա-ճարտարապետական հուշարձաններից շատերն են իրենց վրա կրում նման տողեր ոչ միայն կառուցման, այլև վերակառուցման մասին, ինչը որպես կանոն կատարվել է հանուն հոգու փրկության։ Սակայն, դրանց շինարար վարպետների անունները հիմնականում մնացել են անհայտ։ Եվ մի քանի դեպքերում միայն ժլատ տարեգրությունը, բարեբախտաբար, դարերին է թողել կարևոր ու նվիրական անուններ։ Դրանցից մեկը անցյալի հայ ճարտարապետներից մեծագույնի՝ Տրդատի անունն է, որի համբավը իր իսկ կենդանության օրոք վաղուց արդեն դուրս էր

---

1 Թովմայի վարդապետի Արծրունւոյ. Պատմութիւն տանն Արծրունեաց. Պետերբուրգ, 1877, էջ 297։

2 (ԻԹվ) Զին յաշխարհակալութեն Ապաղա ղանին ես Սամտին, որ պարոնի նստոց ու դարապաս չկայր, դաս այգիս և զգրաւիտս, որ կոչի Արքայութի, գնեցի՝ զամէն մէկ յիւր տիրոջէն. և յիմ մտաց դուս՝ առանց (՞) վարդպետի ձևեցի ու հիմն ձգեցի դարապասիս ու դրախ(տ)իս. Ի:(Ժ) տարին կատարեցի ամ շնահաւոր արասցէ պարոն Սահմատինին որդից ի յորդիք ու խարջ, որ եղաւ դարապասիս՝ Խ:Ռ: դուկատ դահեկան։ Н. Я. Марр. Ани Армгиз, 1933, Ереван. էջ 79։










Նկ. 19. Կղմինդրյա ծածկերի տեսակները։



Նկ. 20. Կղմինդրյա ծածկ։

եկել Հայաստանի սահմաններից ու լայնորեն հայտնի էր, հատկապես, Բյուզանդիայում։ Որպես ստեղծագործող Տրդատը անհասանելի է իր ժամանակի ճարտարապետների համար։ Այդ մասին են խոսում նրա գործերը՝ Անիի Տիրամոր տաճարը, Գագկաշենը, ինչպես նաև Արգինայի եկեղեցին։ Նա հավանաբար, ունեցել է նաև բազմաթիվ այլ, դեռևս չհայտնաբերված կառույցներ։

Տրդատի նշված գործերը պատմական հայ ճարտարապետության դարակազմիկ հուշարձաններ են։ Դրանք վաղուց արդեն համապատասխանաբար արժեքավորվել են համաշխարհային ճարտարապետության դասական գրականության մեջ։ Սակայն, Տրդատը բացի իր ստեղծագործական աշխատանքներից, հավասարաչափ հայտնի է նաև որպես հետազոտող, մասնավորապես, որպես վերանորոգող ճարտարապետ։ Այդ են հաստատում Զվարթնոցի վերարտադրությունը Անիում և համաշխարհային ճարտարապետության մեծագույն կոթող ս. Սոֆիայի կենտրոնական գմբեթի վերանորոգումը Բյուզանդիայի մայրաքաղաքում (Նկ. 5.6.)։

Մեր տվյալ աշխատության հետազոտությունների շրջանակները, ընդգրկում են Տրդատի միայն այս վերջին գործերը։ Այսպես, Կոստանդնուպոլսի ս. Սոֆիայի տաճարի հոյակերտ գմբեթը, X դարի վերջին քառորդում կործանվել էր երկրաշարժից։ Դա տաճարի գմբեթի երկրորդ կործանումն էր։ Առաջինը տեղի ունեցավ 558 թվականի մայիսի 7-ին, կառուցումից 21 տարի անց։ Այդ ժամանակ արդեն չկային տաճարի կառուցողներ՝ Անֆիմին ու Իսիդորը և գմբեթի վերակառուցումը իր վրա է վերցնում վերջինիս ազգական, պատմության մեջ հայտնի Իսիդոր կրտսերը։ Սակայն և նրա կառուցած գմբեթը չի դիմանում դարերի փորձություններին և նույնպես ավերվում է, այս անգամ ավելի քան չորս դար կանգուն մնալուց հետո, 986 թվի մեծ երկրաշարժերի ժամանակ։ Ինչպես հաղորդում է Տրդատի ժամանակակից, հայ պատմիչ Ասողիկը, չորս տարի հույն ճարտարապետները փորձում էին վերակառուցել այդ գմբեթը, բայց ըստ երևույթին ապարդյուն, քանի որ ի վերջո այդ գործի կատարումը հանձնա-



























Նկ. 22. Քարե ծածկերի տեսակները։



Նկ. 21. Քարե հարթ ծածկասալ։



Նկ. 23. Ծածկասալեր հարթ ելուններով։



Նկ. 24. Ծածկասալեր կիսակլոր ելուններով։

բարվում է Անիի ճարտարապետ Տրդատին։ Ասողիկը հաղորդում է այդ վերակառուցման հետ կապված մի քանի մանրամասնություններ և դրանց թվում այն, որ նախքան տեղում աշխատանքներն սկսելը, Տրդատը կազմում է տաճարի մակետը, հավանաբար, նրանում ներդնելով կոնստրուկտիվ մտահղացումների իր ողջ հանրագումարը։ Հանձն առնելով պատվերը Տրդատը չկրկնեց գմբեթի հին համաչափությունները, նույնիսկ նրա ձևը։ Նա նախկին գմբեթի համեմատությամբ զգալի չափով մեծացրեց նրա բարձրությունը և ինչպես վկայում է Ասողիկը, տաճարը դրանից հետո «գեղեցկապես շինեցաւ պայծառ քան զառաջինն»[1]: Տրդատը ս. Սոֆիայի գմբեթի վերականգնման հարցում ոչ թե կուրորեն հետևել է հնավանդ ձևերին, որոնք ի դեպ դարեր շարունակ պայմանավորել են Բյուզանդական ու համաշխարհային ճարտարապետության արվեստի այդ փառահեղ կոթողի, արդեն սովորական դարձած ուրվագիծը, այլ համարձակորեն վերափոխել է, ելնելով ոչ միայն կոնստրուկտիվ պահանջներից, այլև ճարտարապետական ձևն ամբողջացնող իր ստեղծագործական մտահղացումներից։ Տրդատի վերանորոգած գմբեթը վեր խոյանալով ու պսակելով նշանավոր կառույցը, չնայած հետագա դարերում տեղի ունեցած բազմաթիվ երկրաշարժերին, մինչև օրս էլ կանգուն է ու անսասան։ Դրանով կոնստրուկտիվ իմաստով բավականին բարդ ս. Սոֆիայի գմբեթի վերականգնումը դարձավ Տրդատի աննախադեպ սխրանքի մեկնակետը, ճարտարապետական հուշարձանների վերականգնման գործի համաշխարհային պրակտիկայի բնագավառում։ Թեև X—XI դարերի Հայաստանը չուներ այդպիսի վիթխարի (31,4 մ) տրամագծով գմբեթ, և հատկապես, նման աշխատանքների համապատասխան փորձ, սակայն հայ ճարտարապետների համար նման գմբեթի կառուցման տեխնիկական եղանակը բոլորովին էլ խորթ ու անծանոթ չէր, ինչպես այդ փայլուն կերպով ապացուցեց Տրդատ ճարտարապետը Բյուզանդիայում։ Հայտնի է, որ շատ հաճախ անցյալում, նորարական միտքը շինարարական պրակտիկայում իրացվում էր շատ ավելի ուշ, համապատասխան բարենպաստ պայմաններում միայն, իսկ վերջինիս բացակայության դեպքում, ընդմիշտ մնում էր անկատար։



Նկ. 25. Ծածկասալեր երկթեք ելուններով։

1. Այլ անդ դիպեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործին՝ տա զօրինակ շինուածոյն իմաստուն հանճարով պատրաստեալ զկաղապարս կազմածոյն և սկզբնաւորեալ զշինելն, որ գեղեցկապես շինեցաւ, պայծառ քան զառաջինն, Ստեփանոսի Տարօնացւոյ Ասողական, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 51։



Նկ. 26. Անի—Պարոնի պալատը։

Այս իմաստով բնորոշ է, օրինակ, իրար հետ հատվող վեց կամ նույնիսկ ավելի կամարների կոնստրուկտիվ համակարգը, որի շնորհիվ, միջնադարյան Եվրոպայում ստեղծվում էին բավականին ընդարձակ ներքին տարածություններ։ Հայաստանում այդ նույն ժամանակներում նույնպես հայտնի էր այդ համակարգը, այն օգտագործվել է խորանաշատի և խորակերտի, թեև, համեմատաբար, փոքր չափերի գմբեթներում։ Այստեղ այն ունի առավելապես դեկորատիվ, մասնակի, քան լայնատարած ու պոտենցյալ հնարավորություններով օժտված կոնստրուկտիվ համակարգի նշանակություն։ Պայմաններն այդպիսիք էին միջնադարյան Հայաստանում, որոնք չստեղծեցին ընդարձակ չափերի գմբեթների ու այլ համակարգերի կառուցման համար համապատասխան նախադրյալներ։ Այս պայմաններում ս. Սոֆայի գմբեթի կառուցումը մեզ համար կարևոր է ոչ միայն տվյալ գմբեթի վերականգնման տեսակետից որպես մասնավոր մի փաստ, այլ այն տեսակետից, որ հայ ճարտարապետի վարպետությամբ X—XI դարերի հայ շինարարական մտքի բարձր մակարդակը հաստատող խիստ կարևոր վկայությունն է։

Այս առումով ոչ պակաս ուշագրավ է Տրդատի նաև մի այլ աշխատանքը։ Դա վերաբերում է թագավորական այն պատվերին, ըստ որի նա պետք է Անիում վերստեղծեր այդ տարիներին ավերակների վերածված Զվարթնոցը։ Սա լի էր նույնպիսի բարդություններով, ինչպես. Սոֆիան, և չափազանց լուրջ ու ինքնուրույն հետազոտական աշխատանք էր պահանջում։ Բանն այն է, ինչպես պարզել են պեղումները, որ Զվարթնոցը փլվել է միանգամից, իր բոլոր հանգույցներով հանդերձ դարձել մի քարակույտ և այդ պատճառով անհետացել են նրա մի քանի հանգուցային ձևերի նախնական կոնստրուկցիաները։ Ի դեպ, այս հանգամանքը մեր օրերում տեղիք է տվել հուշարձանի նախնական վերականգնման երկու տարբերակի (Թ. Թորամանյան, Ս. Մնացականյան)[1]։

[1] Թ. Թորամանյան, Զվարթնոց եկեղեցին «Մուրճ» 1905 թ.։ Ս. Մնացականյան. Զվարթնոցը և նույնատիպ հուշարձանները, Երևան, 1971 թ.։



3—2959



Նկ. 27. Հառիճ—պոկված ժայռը մատուռի հետ։

Հավանաբար, ժամանակին այս կարգի երկմրտանքի առաջ կանգնած էր նաև Տրդատը։ Այս առումով է, որ տվյալ գործի բնույթից ելնելով գտնում ենք, որ Տրդատը նախապես կատարել է նաև զգալի հետազոտական աշխատանք։ Բայց հատկապես կարող ենք վստահ ասել, որ նա նույնությամբ չի կատարել Թագավորի տված պատվերը։ Այսինքն, նույնությամբ չի վերարտադրել տաճարի ճարտարապետական ձևերը։ Պահպանելով Զվարթնոցի հիմնական կերպը, նա ստեղծագործական մոտեցում հանդես բերեց խնդրին, որի հետևանքով նոր կառույցը՝ այն է Գագկաշենը վեր խոյացավ որպես ոճական նոր ուղղության բնորոշ հուշարձան, որպես Տրդատի ստեղծագործական որոնումների մի նոր արգասիք։ Տրդատը այս գործում հանդես եկավ ճարտարապետական հանճարի իր ողջ մեծությամբ ու իրեն բնորոշ ստեղծագործական ավտոնոմ մտքի կամքով։ Տպավորությունն այն է, որ նա զգում ու լավ էր հասկանում, որ ամեն մի, նույնիսկ հանճարեղ գործի կրկնօրինակը, որպես նորույթ, երբեք չի կարող գեղարվեստական արժեք ունենալ, եթե այն առօրված չէ ստեղծագործական արդիական որոնումների ու նոր մտահղացումների ամբողջ ուժով։ Այս սկզբունքով նա հանդես եկավ ինչպես Գագկաշենի կառուցման, այնպես էլ, հատկապես Բյուզանդական ս. Սոֆիայի տաճարի գմբեթի վերականգնման ժամանակ։ Հասկանալի է, որ սա ոչ թե պայքար էր հինավուրց ավանդության դեմ, այլ նոր մոտեցում նրա նրկատմամբ, քանի որ Տրդատի դարաշրջանի համար, անցյալի ճարտարապետությունն արդեն այնպիսի ավանդություն էր, որն այլևս չէր կարող անվերապահորէն կիրառելի մեկնակետի դեր ունենալ (Նկ. 8)։

Հարկ է նշել, որ Գագկաշենը ապրեց նաև իր խոր դրամատիկական պահը, երբ նրա նորովի հորինվածքի հետ մեկտեղ միաժամանակ պահպանվեց Զվարթնոցին յուրահատուկ կոնստրուկտիվ հնարավորությունների մակարդակը և դրանով իսկ առաջ եկավ կառույցի նորաստեղծ ձևի ու եղած կոնստրուկցիաների խզում, ինչը որպես հետևանք, դեռ կառուցման պրոցեսում գտնվող տաճարի համար ստեղծեց վթարային վիճակ։ Խնդիրըն այն էր, որ Գագկաշենի աբսիդների միջին զույգ սյուները, որոնց վրա հենվում էին կրկնակի կորություն ունեցող թաղի համապատասխան հատվածները իրենց բարձրությամբ շատ ավելի մեծ են քան Զվարթնոցի նույնանման զույգ սյուները։ Կասկածից դուրս է, որ այդ պատճառով էլ Գագկաշենում Տրդատն աբսիդի սյուները կառուցում է ոչ թե տուֆից, ինչպես ամբողջ շենքը, այլ բազալտից[1], ամրացնելու համար նրանց կրողունակությունը։ Սակայն սա չօգնեց սյուների կրողունակությանը, քանի որ Տրդատը մոտ երկու անգամ ավելացրեց սյուների բարձրությունը, պահպանելով նրանց գրեթե նախկին տրամագիծը։ Դարեր հետո միայն, Լեոնարդո Դա Վինչին, ուսումնասիրելով սյուների դիմադրությունը, կհանգի այն մտքին, թե սյան կրողունակությունը հակադարձ համեմատական է նրա բարձրությանը և ուղիղ համեմատական լայնական կտրվածքին։ Իսկ առայժմ, Հայաստանում փորձաշինարարությունը, թեև

---

[1] **Н. Я. Марр.** Ани. Армгиз 1939 г. Ереван. էջ 128.

դանդաղ, բայց հաստատուն քայլերով ընկղմվում էր կառուցողական գաղտնիքների խորքը, նրանում հայտնաբերելով ճարտարապետական հորինվածքների համար իմի բերվող օրինաչափությունների համակարգեր։

Այսպիսով, ակներև է, որ հնում ճարտարապետները հուշարձանների վերականգնումներին մոտենում էին իրենց ժամանակի բնորոշ ոճական ուղղության դիրքերից, ելակետ ունենալով կառուցվածքների ճարտարապետական ռացիոնալ հորինվածքների հետագա զարգացումը։

* *

*

Ինչպես անցյալում, այնպես էլ ընդհուպ մինչև մեր դարաշրջանը, հուշարձանների ու հատկապես պաշտամունքային կառույցների վրա նկատված գրեթե բոլոր վերակառուցումները իրականացրել են մեր ժողովրդական ճարտարապետության գերազանցապես անանուն վարպետները։ Վերջիններիս շարքում մեզ հայտնի դարձան XIX դարի վերջում և XX դարի սկզբում գործող ժողովրդական ճարտարապետության նշանավոր դեմքերից մի քանիսի անունները։



Նկ. 28. Կիրանց վանք. աղյուսե կառուցվածքի օրինակ։

Այսպես, մինչև 30-ական թվականները Օձուն գյուղում ապրող Նալբանդ Սերգեյը համարվում էր Հայաստանի հյուսիսում ստեղծագործող գրեթե բոլոր ժողովրդական վարպետների ուսուցիչը։ Նա ոչ միայն բազմաթիվ կառույցների հեղինակ էր. այլև մի շարք պատմական հուշարձանների վերանորոգող։

Նալբանդ Սերգեյը հուշարձաններում վերականգնում էր միայն այն ձևերը, որոնց հավաստիությունն անվիճելի էր. այս էր նրա ճարտարապետական սկզբունքը։ Միայն մի դեպքում նա խախտել է իր այդ սկզբունքը, Օձունի տաճարը արևելակողմից լրացնելով երկու փոքր դանդաղկատան ծավալներով։ Բարեբախտաբար, վերջիններս, ի պատիվ նրա, ներդաշնակորեն ձուլվեցին հինավուրց հուշարձանի ընդհանուր ուրվագծին և այսօր ընկալվում են բուն հուշարձանի ծավալների հետ, ոչ մի կասկած չառաջացնող օրգանական կապով։

Ճարտարապետության և շինարարության ամենօրյա աշխատանքներում նա, ինչպես և բոլոր ժողովրդական վարպետները, օգտագործում էր իր փորձնական կանոնները, որոնք հիմնված էին կանգուն կառույցներից քաղված օրինաչափությունների վրա։ Սակայն, հայտնի է նաև, որ փորձնական կանոնները, որոնք ձեռք էին բերում ժողովրդական ճարտարապետները, իրենց անընդմեջ պրակտիկ գործունեության ընթացքում, ի վերջո դառնում էին նրանց համար շինարարական արվեստի անխախտելի օրենքներ։ Իսկ եթե ընդունենք, որ պրակտիկան փորձի անընդմեջ օգտագործումն է, ապա Նալբանդ Սերգեյի և մյուսների շինարարական կանոնները, անշուշտ, խարսխված էին այդ պրակտիկայի անկյունաքարի վրա։[1]

Դեռևս 1846 թվականին Երևանի գավառական

[1] Ժողովրդական ճարտարապետության կառուցողական սկզբունքները Հնդկաստանում, օրինակ, ի մի էին բերված «Շիլպաշաստրա»-ում բանավոր կերպով, որը փոխանցվում էր սերնդից սերունդ անգիր արած մինչև նրա տպագրվելը մ.թ.ա. I դարում։ **А. А. Короцкая**. Архитектура Индии раннего средневековья. Москва 1946 г. стр. 26.



Նկ. 29. Օղուզլու. եկեղեցու վերանորոգված ճակատները։



Նկ. 30. Հաղբատ. Նախնական դիրքին բերած սյունը։

դպրոցին կից կազմակերպվել էր հայկական հնությունների կաբինետ, ըստ որի այնտեղ պետք է պահպանվեին գավառում հայտնաբերված հնագիտական զանազան բեկորներ, որոնք կարող էին հափշտակվել ու անհետ կորչել։ Այդ փաստաթղթում մասնավորապես նշվում է Գառնիից հափշտակված չորս խոյակների բռնագրավումը, որոնք ժամանակին ի պահ էին հանձնվել այդ դպրոցին, ուր նրանք ինչպես և բոլոր մյուս նյութերը, պետք է թանգարանային կանոնների համաձայն մշակվեին։ Շատ հաճելի անակնկալ էր իմանալ, որ այդ կաբինետի տնօրենը ժամանակին կարգվել է Երևանի գավառական դպրոցի հաստիքային տեսուչ։ Այդ անձնավորությունը Խաչատուր Աբովյանն[1] էր, որը հետևաբար, ամենայն իրավամբ պետք է համարվի հուշարձանների պահպանության գործի առաջին պաշտոնական կազմակերպիչն ու ղեկավարը Հայաստանում։

Թեև հուշարձանների վերականգնման զուտ փորձնական շրջանը և դրա վրա ստեղծված ավանդույթների զարգացումը մեզանում ունի բազմադարյան պատմություն, սակայն դրա գիտական ելակետերը մշակվել են ընդամենը մեր դարասկզբին՝ հանձինս Անի քաղաքում գործող հնագիտական արշավախմբի անդամների ջանքերի։ Այստեղ է, որ հուշարձանների պահպանության ու վերականգնման գործը սկզբնավորել են ժամանակի նշանավոր գիտնականները, պարզ ըմբռնելով հարցի ամբողջ կարևորությունն ու իմաստը, նրա պատմական ու գիտական նշանակության ամենալայն առումով։ Այլ կերպ ասած, այս արշավախմբում է, որ հուշարձանների պահպանության ու վերականգնման սկզբունքները ընդունեցին կոմպլեքսային բնույթ՝ հուշարձանի պեղումները, չափագրությունները, գիտական ուսումնասիրությունները, վերականգնման նախագծերը, տեղում վերանորոգումները ու վերջապես նյութերի հրատարակությունների գործը։ Հետևապես Անիի արշավախումբը իրագործում էր արդիական պահանջներին համապատասխան հուշարձանների գիտահետազոտական աշխատանքների լրիվ համակարգը։

Անիի լայնատարած պեղումների շնորհիվ ժա-

[1] **Л. М. Меликсет-Бек.** Из истории археологических изысканий в Армении. Известия АН Арм. ССР. № 6, 1947 г. стр. 45—50.



Նկ. 31. Գեղարդ. գավթի կտխարինված խարիսխները։

մանակին ի հայտ բերվեց քաղաքի կառույցների մի զգալի մասը, որը և չափագրվեց ամենակատարյալ վարպետությամբ։ Միևնույն ժամանակ վերանորոգվեցին մի շարք հուշարձաններ, այդ թվում՝ Պալատական եկեղեցին, Աբուղամրենցը, Հովվի ու Փրկիչի եկեղեցիները, Գագիկի տաճարը, մասնավորապես նաև քաղաքի պարիսպները։ Հարկ է նշել Գագիկի արձանի վերականգնումը, ինչպես նաև Տիգրան Հոնենցի որմնանկարների վրա կատարված աշխատանքները։

Սակայն, Անիի հնագիտական արշավախումբը իր աշխատանքները չէր սահմանափակում միայն հինավուրց քաղաքով։ Նրա արշավախմբի անդամները զգալիորեն լայնացնում էին հետազոտությունների աշխարհագրական սահմանները։ Այն հասնում էր մինչև Գառնի, ուր 1909—11 թվականներին կատարվեցին հելլենիստական տաճարի ավերակների հայտնի պեղումները։ Այպա պեղվեցին Երերույքը, Տեկորը, Բագարանը, Շիրակավանը, Վանի ուրարտական որմնախորշերը։

Ժամանակով ու ավանդույթներով սրբագործված Անիում իրականացվեցին հուշարձանների կոնսերվացման գիտական հիմքերի վրա խարսխված առաջին գործնական փորձերը։ Հարկ է նշել, որ այդ գործում շատ հարցեր, բնականաբար, երբեմն դուրս չէին գալիս իրենց նախնական փորձարարական շրջանից և տեխնիկական առումով գտնվում էին նախնական վիճակում։ Աշխատանքները հիմնականում ընթանում էին լուծումների հայտնաբերման ուղղությամբ և դեռևս երազանք էր մնում հուշարձանների վերականգնման, կոնսերվացման գործի հիմնավոր կազմա-





*Նկ. 32. Կարասներ վեղարի որմածքում։*

*կերպումը։ Անիում եզակի հուշարձաններ էին արժանացել վերանորոգման բախտին, այն էլ պատահական ու անկանոն հանգանակության հայթայթած դրամի շնորհիվ։ Սակայն այսուհանդերձ, ճարտարապետական հուշարձանների վերանորոգման գործը Անիում դրված էր գիտական ճիշտ ուղու վրա։ Անիում, ուրեմն, սկզբնավորվեց այն մեծ գործը, որը միայն հետագայում, խորհրդային իշխանության տարիներին, պետք է պետական մեծ կարևորություն ստանար ու հասներ այսօրվա ցանկալի աստիճանին։[1]*

*Ճարտարապետական կառույցների այն մեծ ժառանգությունը, որը պահպանվում է խորհրդային Հայաստանի տարածքի վրա ամենուրեք սփռված ճարտարապետական ու հնագիտական բազմաթիվ հուշարձանների ձևով, կերտված հայ ժողովրդի կողմից իր պատմական երկարատև ու մաքառումներով լի կյանքի ընթացքում, լավագույն վկան է մեր ժողովրդի անցյալի հարուստ մշակույթի։ Այդ հուշարձանների միջոցով այսօր հառնում են մեր ժողովրդի անցյալ սոցիալ-տընտեսական կյանքը, մշակույթը, հատկապես շինարարական արվեստը, արտացոլելով նրա պատմական կյանքի վերելքի ու անկման տարբեր փուլերը։*

*Այս կապակցությամբ, ինչպես սկզբում ասվեց, համաձայն Հայաստանի ժողովրդական կոմիսարների խորհրդի դեկրետի, հիմնվեց Հնությունների պահպանության կոմիտեն։ Բոլոր հուշարձանները հայտարարվել էին պետական անձեռնմխելի սեփականություն և քրեական օրենսգրքով ապահովվեց նրանց պահպանությունը։*

*1924 թվականի ապրիլին կոմիտեն հրատարակեց իր անդրանիկ կոչը՝ «Պահպանեցեք հնությունները», ուղղված հանրապետության բնակչությանը, որի մեջ ընդգծվում էր պատմական հուշարձանների նշանակությունը և միևնույն ժամանակ պահանջը՝ հնությունների պահպանության արթուն հսկողություն։ Հաջորդ տարվա մարտի 20-ին Հայաստանի լուսավորության ժողովրդական կոմիսարիատը հաստատում է Կոմիտեի կանոնադրությունը։ Հինգ հոգուց բաղկացած իր անդրանիկ կազմով Կոմիտեի առաջին նիստը հրավիրում է նույն տարվա ապրիլի 1-ին։ Այդ կազմը հետագայում հասցվեց 19 հոգու, որոնցից մեկը՝ Ն. Մառը, կոմիտեի պատվավոր անդամն էր[1]։ Կոմիտեն անմիջապես դարձավ Հա-*

1 **Н. Я. Марр.** Ани. Ленинград—Москва, 1934 г. И. А. Орбели. Краткий путеводитель по городу Ани С-П-б, 1910 г.

*1 Այդ կազմումն էին՝ Ա. Թամանյանը (նախագահ), Ա. Քալանթարը (գիտ. քարտուղար), Մ. Սարյանը, Թ. Թորամանյանը, Ս. Տեր-Հակոբյանը, Գ. Ասատուրը, Ն. Բունիաթյանը, Բ. Հասան-Ջալալյանը, Ե. Շահազիզը, Գ. Լևոնյանը, Ս. Լիսիցյանը, Ա. Խաչատրյանը, Ռ. Դրամբյանը, Է. Բայբուրդյանը, Հ. Օրբելին, Ս. Տեր-Աբրահամյանը, Տարագրոսը, Ա. Ջաքյանը։*

*Հետագայում կոմիտեի նախագահներ էին՝ Բ. Մարտի-*

*յաստանի հինավուրց անցյալի նյութական մշակույթի պահպանության, ինչպես նաև ուսումնասիրության կենտրոնը, որի շուրջը համախմբվեցին հայ մշակույթի մեծանուն գործիչները, որոնք իրենց ողջ գործունեությամբ Հայաստանում նյութական մշակույթի պահպանության սկզբունքների սահմանողները եղան։*

*Կոմիտեի արխիվում պահպանված տարեկան թեմատիկ պլանների մանրամասն ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ իր հիմնադրման առաջին իսկ օրից Կոմիտեն նպատակադրվել է՝ որպես առաջնահերթ խնդիր լուծելու՝ պատմական հայ ճարտարապետության հաշվառման ու պահպանության գործը, հուշարձանների հետազոտությունը, հայտնաբերելով նրանցում ժողովրդական ստեղծագործության տարրը, հայ ճարտարապետության հուշարձանների կապերի բացահայտումը պատմական այլ ոճերի հետ և այլ պրոբլեմներ։ Սակայն, ընդամենը մի քանի տարի անց, Կոմիտեի գիտահետազոտական հարցերի շրջանակները զգալիորեն ընդլայնվում են, ընդգրկելով կառույցների կոնստրուկտիվ առանձին տարրերի ու առանձին հուշարձանների ճարտարապետական ընդհանուր ձևերը, ընդհուպ պատմահնագիտական մի շարք ընդհանուր պրոբլեմներ՝ մատենագրությունը, վիմական արձանագրությունների կորպուսը, հանրապետության հնագիտական շրջանների գիտական նկարագրությունը և այլն։*

*Պահպանության պարտականությունների հետ մեկտեղ, հետազոտական այս պրոբլեմները բնորոշ էին Կոմիտեի գործունեության վաղ շրջանին, քանի որ այն եղել է նաև գիտահետազոտական հիմնարկ։ Եվ դա ոչ միայն այն առումով, որ նրանում գործող ավագ սերնդի գիտնականների մղումն էր դա, այլև այն՝ որ այդ տարիներին Կոմիտեն ճարտարապետական ու հնագիտական հուշարձանների ընդարձակ բնագավառում բոլոր պրոբլեմների միակ տնօրենն էր։ Կոմիտեի վրա է կառավարությունը 1923 թվականի դեկտեմբերի իր դեկրետով դնում նաև հուշարձանների «սիստեմատիկ ուսումնասիրության գործը»։ Ստեղծման համարյա առաջին իսկ օրից Կոմիտեն սերտ գիտական կապերի մեջ է մտնում Միության մի շարք գիտահետազոտական հիմնարկների և առաջին հերթին Ռուսաստանի նյութական կուլտուրայի պատմության ակադեմիայի հետ։ Ակադեմիայի նախագահ, մեծանուն գիտնական Ն. Յ. Մառը, կոմիտեին է ուղղում իր ընդարձակ շնորհավորական նամակը, և առաջարկում գիտական համագործություն հաստատել ակադեմիայի և Կոմիտեի միջև։ Կոմիտեն հայտնում է իր համաձայնությունը և համագործությունը սկսվում է անմիջապես։ Ն. Մառի առաջարկով առաջ է քաշվում այսպես կոչված «Տրիպոլյան մշակույթի» ուսումնասիրությունը և նրա զուգահեռների հայտնաբերումը Հայաստանի հինավուրց մշակույթում։ Հնագիտության տեսական մի հարց, որը հրատապ էր հին դարաշրջանների ժամանակագրությունը պարզելու գործում։ Ընդունելով առաջարկը, միևնույն ժամանակ Ն. Մառին հայտնվում է, որ Կոմիտեի մտահոգության առարկան, այնուամենայնիվ, մնում է հուշարձանների նախնական ցուցակագրության գործը, որը նույնպես կարևոր մեկնակետ էր Կոմիտեի ողջ հետագա գործունեությունը կարգավորելու ու պլանավորելու համար։ Եվ իրոք, շուտով նախապատրաստվեցին դաշտային գործողության մի քանի արշավախմբեր։*

*Գիտական համագործակցության սահմանները լայնացնելու նպատակով նույն տարում, Հնությունների պահպանության կոմիտեն կապվում է նաև Վրաստանի պետական համալսարանի հետ, որը նույնպես տալիս է իր համաձայնությունը։ Շուտով Թբիլիսիից Երևան է ժամանում համալսարանի գիտական արշավախումբը, որը համատեղ ու լայն ծրագրով սկսում է համապատասխան ուսումնասիրություններ կատարել անցյալի մշակույթի տարբեր բնագավառներում։*

*Հետագայում Կոմիտեն պարբերաբար ընդլայնում է կապերը ինչպես Միության տարբեր քաղաքներում այնպես էլ արտասահմանյան երկրներում գործող բազմաթիվ գիտական հաստատությունների հետ։ Այսպես, հայտնի է, որ մի շարք արտասահմանյան գիտական հիմնարկների հետազոտական աշխատանքներ կատարելու խնդրանքին կոմիտեն աջակցել է պատմական հայ մշակույթին վերաբերող ճարտարապետական ու հնագիտական իր նյութերով։ Մասնավո-*

---

*րոսյանը, Հ. Օրբելին, իսկ տեղականներ հաջորդաբար՝ Դ. Դանիելյանը, Ն. Տոկարսկին և Վ. Հարությունյանը։*

*րապես, այդպիսի նյութեր են ուղարկվել Սորբոնի համալսարան, Բելգիա, Իտալիա և այլուր։ Ինչպես հայտնի է, այս նյութերի հիման վրա ժամանակին հրատարակվել են մի շարք մեծարժեք գիտական աշխատություններ՝ նվիրված պատմական հայ ճարտարապետության տարբեր պրոբլեմներին։ Հայտնի է նաև այն, որ Սորբոնի համալսարանի Գեղարվեստի պատմության ինստիտուտում այդ տարիներին հանրահայտ գիտնական Շառլ Դիլի նախագահությամբ և Ն. Մառի փոխնախագահությամբ կազմակերպվել էր Հայաստանի, Վրաստանի և Դաղստանի արվեստների ուսումնասիրության հատուկ կենտրոն։*

*Կարճ ժամանակից հետո, հանրապետության տնտեսական վիճակի բարելավմանը համընթաց, Կոմիտեն սկսում է դուրս գալ նյութական իր սուղ պայմաններից ու ձեռք բերելով անհրաժեշտ միջոցներ, ինչպես նաև ավարտելով կազմակերպչական իր հրատապ գործերը, 1924 թվականի օգոստոս և սեպտեմբեր ամիսներին նախաձեռնում է վաղուց ծրագրված իր առաջին գիտարշավը՝ թվով հինգ դաշտային արշավախմբերի աշխատանքը՝ Էջմիածնի, Ապարանի, Լենինականի, Լոռի-Փամբակի, Դիլիջանի շրջաններում, ինչպես նաև Արագած լեռան շուրջը։ Մշակված բավականին ընդարձակ ծրագրի համաձայն արշավախմբերը տվյալ շրջաններում կատարելու էին պատմաճարտարապետական ու հնագիտական հուշարձանների համառոտ նկարագրություն, նրանց հաշվառում չափագրություններ, լուսանկարում և վիմական արձանագրությունների պատճենահանում, ինչպես նաև նոր հուշարձանների հայտնաբերում։*

*Հնագիտական այս արշավախմբերի գործունեության առաջին քայլերի արդյունքը եղավ այն, որ կազմվեց Հայաստանի պատմական հուշարձանների անդրանիկ ցուցակը, որի մեջ այն ժամանակ գրանցվեց ընդամենը 80, հիմնականում հանրահայտ հուշարձան, ինչպես նաև խոշոր հուշարձանախմբեր։ Այսպիսով, դրվեց կարևոր գործի սկիզբը։ Հուշարձանները գրանցվեցին մի ցուցակում, որն այդ օրվանից ի վեր նրանց համար դարձավ հաստատուն ու հուսալի ապաստարան՝ բնական արհավիրքների հետևանքով առաջացած քայքայումներից ու այլ ավերումներից։ Միևնույն ժամանակ, այդ հուշարձանները, մշտապես մնացին մասնագիտական արթուն հսկողության և պետական օրենքների պահպանության ներքո։*

*Այնուհետև Կոմիտեն ձեռնամուխ է լինում կազմելու Հայաստանի հնագիտական անդրանիկ քարտեզը, ինչպես նաև նախնական գիտական դասակարգման ենթարկելու հանրապետության սահմաններում սփռված մշակույթի բոլոր բեկորները։ Հարկ է նշել, որ այդ նույն ժամանակ, չնայած նյութական միջոցների դեռևս սուղ պայմաններին, այնուամենայնիվ ,արդեն իսկ ծրագրված էր մի շարք ծայր աստիճանի վթարային վիճակի մեջ գտնվող ճարտարապետական հուշարձաններին ցույց տալ անհրաժեշտ տեխնիկական շտապ օգնություն, մասնակի կոնսերվացիայի միջոցով։ Սակայն, ելնելով եղած հնարավորություններից, կատարվում էին միայն նախապատրաստական աշխատանքներ, որոնք սահմանափակվում էին վթարային դրության մեջ գտնվող հուշարձանների գրանցումով, վերանորոգման համար նրանց հերթագրումով ու համապատասխան հսկողության սահմանումով՝ քայքայման հնարավոր ընթացքը կանխելու համար։ Աստիճանաբար ընդարձակելով իր գործունեության ծրագիրը, Կոմիտեն պլանավորում է պեղումներ մի շարք հնագիտական վայրերում՝ առաջին հերթին հին Վաղարշապատի պատմական տարածքում, որի գիտական ղեկավարությունը նախատեսվում էր հանձնարարել Ն. Մառին։*

*Այսպիսի հեռանկարներով հնությունների պահպանության նորաստեղծ հիմնարկը մտնում է հաջորդ, 1925 թվականը։*

*Մի քանի տարի անց, 1928 թվականին, Կոմիտեն հանրապետության ժողովրդական տնտեսությանը համընթաց, հուշարձանների պահպանության գործը կազմակերպչորեն ու գիտականորեն ամուր հիմքերի վրա դնելու նպատակով, կազմում է աշխատանքների հնգամյա պլանը (1929—1933 թթ.)։ Այդ ծրագիրը պարունակում էր տվյալ բնագավառի բոլոր կարգի աշխատանքների կատարումը լայնատարած մասշտաբներով։ Հիմնականը, ինչպես և տարիներ առաջ, մնում էր հուշարձանների սևեռման աշխատանքը, որը բազմաթիվ արշավախմբերի գործունեության շնորհիվ պետք է կատարվեր հանրապետության նախապես բաժանված 20 հնագիտական շրջան-*

ներում։ Միևնույն ժամանակ ծրագրով նախատեսված էր հնգամյակի ընթացքում կատարել վթարային վիճակի մեջ գտնվող 32 հուշարձանների վերանորոգման աշխատանքներ։ Սակայն, առաջին տարում, հնարավոր եղավ, այն էլ մասնակի, վերանորոգել միայն երկու հուշարձան՝ Երերույքի բազիլիկան և Սանահնի կամուրջը։ Վերջինս վերանորոգվեց Հանրապետության խճուղային շինարարության վարչության միջոցներով, քանի որ կամուրջը կիրառական նշանակություն ունեցող կառույց էր։

Իսկ մյուսը, Երերույքի բազիլիկան, վերանորոգվող հուշարձանների ցուցակի մեջ առաջինն էր գրանցված, որպես վաղ հայկական ճարտարապետության ամենայն իրավամբ, հոյակերտ և եզակի ճարտարապետական կոթող։ Բարեբախտաբար հնարավոր եղավ կանխել հուշարձանի հավանական փլուզումը, շնորհիվ Ա. Թամանյանի անմիջական ղեկավարության։ Ամրացվեցին հուշարձանի շքամուտքերը և պատերի քայքայված մասերը, որոնցով զգալիորեն ապահովվեց Երերույքի կայունությունը։ Դրան զուգահեռ կոնսերվացման ավելի մանր աշխատանքներ կատարվեցին Թալինի, Զոդի, Ծաղկաձորի, Հռիփսիմեի և Պողոս-Պետրոս հուշարձանների վրա։ Հետագա տարիների ընթացքում, կատարվեցին մի քանի տասնյակ հուշարձանների կոնսերվացման աշխատանքներ ևս, որոնք, սակայն, մասնակի բնույթ ունեին։

Այդ նույն աշխատանքների հետ մեկտեղ, զգալի ուշադրություն դարձվեց Հանրապետության շրջաններում սփռված հնագիտական բեկորների հավաքման գործին և նրանց ի պահ հանձնումը տեղական հնադարաններին, քանի որ դրանց թվում կային նաև այնպիսիները, որոնք պատմական մեծարժեք նշանակություն ունեցող արձանագրություններով էին։ Շարունակվեցին վիմական արձանագրությունների արտանկարումը և վերծանումը որպես առաջնահերթ ու կարևոր գիտական հետազոտություն։

Հնգամյա պլանում հատկապես զգալի տեղ էր հատկացված պեղման աշխատանքներին։ Ծրագրված էր պարզել նոր հուշարձանների առկայությունը նշված 20 հնագիտական շրջանների տարածքում։ Այդ արվում էր հատկապես հնագիտական քարտեզը լրացնելու նկատառումով։

Նշանակալից հայտնագործություն էր Երևանի Պողոս-Պետրոս եկեղեցու քանդման ժամանակ 6 շերտ որմնանկարների բացումը, որոնցից մեկը 1431 թվականին էր պատկանում։ Այսպիսով այդ տարիներին ուշադրությունից չվրիպեց նաև որմնանկարների ուսումնասիրությունը, որպես անցյալի մշակութային ժառանգության մի կարևոր բնագավառ։

Այդ հետազոտությունները, որպես կանոն, նախապատրաստվում էին հրատարակությունների համար և նրանց հիմնական մասը ծրագրված ձևով ժամանակին պարբերաբար լույս ընծայվեց։ Հիշատակության արժանի է այն փաստը, որ Հնությունների պահպանության կոմիտեն ունեցավ պարբերաբար հրատարակվող «Օրագիր», ուր տեղ էին գտնում հրատարակումները և Կոմիտեի ընթացիկ գործունեության մասին տեղեկությունները։

Պատմական հուշարձանների պահպանության գործն աստիճանաբար սկսում է իր վերելքը, որն արտահայտված էր զարգացման տարբեր ձևերով, հատկապես ճարտարապետական ու հնագիտական հուշարձանների սևեռման, բարեկարգման ու վերականգնման ասպարեզում։ Հիմք ընդունելով հուշարձանների առաջին ցուցակը, հետագա տարիներին, բազմաթիվ արշավախմբեր, այն պարբերաբար լրացնում են նորանոր անուններով, որոնց հիման վրա, ի վերջո, կազմվում է Հայաստանի պատմագիտական, ներկայումս արդեն ընդլայնված ցուցակն ու քարտեզը։ Վերջինիս մեջ նշված են մեգալիթյան մշակույթի կոթողներ, բերդ-շեներ, ուրարտական ամրոցներ ու քաղաքներ, աքեմենյան կառույցներ, հելլենիստական կոթողներ, ուշ պարսկական շենքեր, իսկ քարտեզի հիմնական մասը կազմում են պատմական հայ ճարտարապետության ցուցակագրված և պահպանության ներքո վերցված պաշտամունքային ու աշխարհիկ կառույցները։ Ուշագրավ է, որ բազմազան է Հայաստանում պահպանված նաև էպիգրաֆիկ նյութը։ Բացի վիմական հայերեն արձանագրություններից Հայաստանի տարածքի վրա գոյություն ունեն ուրարտական, ասորական, աքեմենյան սեպագրեր, ապա արամեական, հունական, հռոմեական, արաբական, պարսկական վրացական, ադրբեջանական, ինչպես նաև ռուսական արձանագրություններ։ Այս արձանագրու-

թյունների հետ միասին առկա են նաև տվյալ մշակույթին վերաբերող կոթողներ կամ նրանց առանձին պատառիկներ։

Արձանագրությունների այն մասը, որը կապված է տեղի պատմական կյանքի հետ, հաստատում է, որ գիրը Հայաստանում, որպես մշակութային երևույթ, գոյություն է ունեցել շուրջ 3000 տարի, սկզբնական շրջանում ուրարտական սեպագիր արձանագրությունների ձևով։ Պատմական տեսակետից սա կարևոր հանգամանք է նաև այն առումով, որ դարերի խորքից մեզ հասնող անցյալի բազմաթիվ պատմական իրադարձություններ, փաստեր, դեմքեր ու դեպքեր դառնում են հավաստի, անվիճելի ու ճշգրիտ իսկություն։ Այն հատկապես նպաստում է ճշտորեն ուրվագծելու Ուրարտուի պատմությունը և որոշելու նրա բազմաթիվ հեռավոր հուշարձանների տարեգրությունը։

Եվ այսպես, նորանոր անուններով պարբերաբար աճող հուշարձանների ցուցակը, ներկայումս, ի տարբերություն անդրանիկ ցուցակի, պարունակում է շուրջ 4000 անուն, որոնց կեսից ավելին ճարտարապետական հուշարձաններ են, մնացածը՝ հնագիտական։

Հուշարձանների հաշվառման, սևեռման ուղղությամբ ձեռնարկվող կարևոր միջոցառումներից է նաև նրանց մանրակրկիտ չափագրությունը, լուսանկարումը, ինչպես նաև նկարագրությունը։ Սրանք պարբերաբար կատարվող աշխատանքներ են, որոնց շնորհիվ ներկայումս հուշարձանների պահպանության և վերականգնման վարչության արխիվում հավաքված է մոտ 4000 չափագրական գծագիր, 200 գեոհանույթ, 5000 լուսապակի, լուսանկար։ Այս բոլորից բացի յուրաքանչյուր հուշարձանի համար ստեղծված է գիտական «անձնագիր», որը հակիրճ տեղեկություններ է պարունակում կառուցվածքի տիպի, կառուցման ժամանակի, տարբեր վերանորոգումների, ինչպես նաև կառուցողների ու այլնի մասին։ Այս փաստաթղթերը սևեռում են հուշարձանների արդի տեխնիկական վիճակը, որոնցով հետագայում հնարավոր է դառնում որոշել նրանց պատմական կյանքը, քայքայման հնարավոր ձևերը և այլ կարգի փոխակերպումները։

Վերջին տարիներին զգալիորեն ընդլայնվեց չափագրական գործի ծավալը, հատկապես այն բանից հետո, երբ նախապատրաստական աշխատանքներ ձեռնարկվեցին հուշարձանների համահավաք ցուցակը կազմելու համար։ Չափագրվող հուշարձանների անհրաժեշտ քանակը, անցնում էր մի քանի հազարից, և նրանց հայտնի, սովորական չափումների կատարումը, այն էլ սահմանափակ ժամանակամիջոցում, կապված էր լուրջ բարդությունների հետ։ Այս կապակցությամբ հարկ եղավ անցնել չափագրությունների մեքենայացված ձևերի, մանավանդ, որ Երևանում այդ միջոցներին անցնելը հնարավոր էր համապատասխան ու խիստ եզակի սարքավորումների առկայության պայմաններում։ Սակայն, վերերկրյա ստերեոլուսանկարագրամետրական տվյալ հանույթները բնորոշվում են ոչ միայն իրենց արտադրողականությամբ, այլև ինչն առավելապես կարևոր է, չափումների ճշգրտությամբ և օբյեկտիվ հավաստիությամբ[1]։

Ընդ որում, հավասարաչափ բարձր որակով ու ճշգրտությամբ նկարահանվում են, ինչպես շենքերի ճակատները, այնպես էլ հատակագծերը։ Նույն ճշգրտությամբ նկարահանվում են նաև քաղաքատեղիների ընդհանուր հատակագծերը, որոնց ավանդական հանույթները պահանջում են բավականաչափ ժամանակ և իրենց հավաստիությամբ չեն կարող համեմատվել մեքենայացված հանույթների հետ։ Պետք է ենթադրել, որ ժամանակի ընթացքում, հնագիտության բնագավառի աշխատանքների որոշ պրոցեսներում նույնպես կկիրառվեն հարակից գիտությունների նորարական մեթոդները։ Այս առումով արդեն տեսանելի է ինչպես Շոտլանդական Լոխ Նեսսէ լճում առեղծվածային դարձած խորհրդավոր «Նեսսի» կենդանու որոնումների ժամանակ օգտագործված ուլտրա-ձայնը հայտնաբերեց լճի հատակին հինավուրց բնակավայրի հնագիտական մնացորդները, իրենց բավականին տեսանելի, եզրագծերի սահմաններում[2]։

Ուշադրության են արժանի նաև հանրապետության առանձին շրջանների, հուշարձաններով

[1] Наземная стереофотограмметрия при инженерных изысканиях и съемках (тезисы докладов Всесоюзного совещания 24—26 сентября 1975 г.) Научно-техническое горное общество. г. Новосибирск, 1975 г.

[2] **Н. Полянов**. Экспедиции по следам Мифа. Журнал «Наука и жизнь», 1977 г. № 1.

հարուստ գյուղերի, ավանների ու քաղաքների քարտեզները։ Վերջիններս կազմված են նաև ըստ դարաշրջանների, ինչպես օրինակ՝ պալեոլիթի, նեոլիթի, էնեոլիթի ու բրոնզե դարերի համար։ Ինչպես ցույց է տվել տարիների փորձը տվյալ ձևով կազմված քարտեզները զգալիորեն հեշտացնում են գիտահետազոտական նպատակներով նյութերի ըմբռնումը և ուսումնասիրությունը, ինչպես նաև հարմարություն են ստեղծում հուշարձանների հաշվառման գործում։

Տասնյակ տարիների ընթացքում Պետշինում կազմված ու կուտակված այս նյութը, վաղուց ի վեր գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում ինչպես Միության, այնպես էլ արտասահմանյան թե անհատ գիտնականների, և թե տարբեր գիտական հիմնարկների համար։ Դա արտահայտվում է Միության տարբեր քաղաքներից գիտական արշավախմբերի, ինչպես նաև առանձին գիտնականների պարբերական այցելություններով Հայաստան, անցյալի մշակույթը հուշարձանների շրջապատում հետազոտելու համար։ Վարչությունը ի սպաս է դնում նրանց իր պատրաստի նյութերը։ Այդ նույն նպատակով վարչությունը սերտ համագործակցության մեջ է նաև արտասահմանյան մի շարք գիտահետազոտական հիմնարկների ու մասնավորապես Հռոմի համալսարանի ու Միլանի պոլիտեխնիկական ինստիտուտի հետ, որոնց արշավախմբերը պարբերաբար, շուրջ 7 տարի գործուղվում են Հայաստան, հետազոտելու պատմական հայ ճարտարապետությունը և նրա կապերն արևմուտքի ճարտարապետության հետ։ Այս համագործակցությունը արդեն տվել է իր շոշափելի արդյունքները։ Իտալիայում մեր պատմական ճարտարապետության վերաբերյալ վերջին տարիների ընթացքում զգալի քանակությամբ գրականություն է հրապարակվել իտալերեն, անգլերեն, ու հայերեն լեզուներով։ Տվյալ ծրագրի համապատասխան լույս են տեսել ընդհանուր կարգի հակիրճ տեղեկություններ պատմական հայ ճարտարապետությանը, ինչպես նաև ուրարտական որմնանկարների, Ամբերդի, Գեղարդի, Գոշավանքի հուշարձանների, խաչքարերի վերաբերյալ. բոլորն էլ հագեցված անհրաժեշտ գծագրերով, հաճախ, հուշարձանների գունավոր լուսանկարներով ու այլ նյութերով[1]։ Համատեղ կատարվող այդ աշխատությունները Հայաստանի և Իտալիայի գիտահետազոտական հիմնարկների կողմից արդեն իսկ մեծ հետաքրքրություն են առաջ բերել Եվրոպայում և տարածում գտել տարբեր երկրներում։

Հուշարձանների պահպանության ցուցակում ընդգրկված են նաև հանրապետության ժամանակակից, այն է՝ սովետական ճարտարապետության ստեղծագործությունները։ Խոսքը վերաբերում է այն կառույցներին, որոնք հարստացնում են սոցիալիստական ճարտարապետության և շինարարական մշակույթի գանձարանը իրենց նշանակալից ներդրումներով, և որոնք իրենց նորարարական արտահայտություններով մուտք են գործել սովետական ընդհանուր ճարտարապետության ասպարեզը։ Այդ ցուցակը ընդգրկում է՝ հասարակական շենքեր, առանձին հուշակոթողներ, որոնք նվիրված են քաղաքացիական ու Հայրենական մեծ պատերազմի հերոսներին, ինչպես նաև այնպիսի հուշահամալիրներ, որոնք պատկանում են մեր ժողովրդի պատմության այլ էջերին։ Այս հուշարձանների թվում տեսնում ենք հուշակոթողների այնպիսի ավանդական ձևեր ինչպիսիք են աղբյուր հուշարձանները, ուղղաձիգ կանգնած սալաքարերը կամ նրանց բազմաթիվ տարբերակները։ Այս մոնումենտալ հուշահամալիրները կամ առանձին կանգնած կոթողները բնութագրվում են իրենց թեմատիկ մտահղացման հարստությամբ, որտեղ ճարտարապետական ու քանդակագործության հորինվածքների ձևերը խիստ ինքնատիպ են ու յուրահատուկ։

Հայտնի մեծ ու նշանակալից համալիրներից է հատկապես Լենինի անվան հրապարակը Երևանում, որտեղ Վ. Ի. Լենինի արձանը իր վեհաշուք մոնումենտալ ձևերով ու դարդաքանդակների նուրբ պլաստիկայով համալիրի գլխավոր քանդակագործական ու ճարտարապետական ստեղծագործությունն է։ Այն հրապարակի ողջ տարածական հորինվածքին գաղափարական հագեցվածություն է հաղորդում։

---

[1] **P. Cuneo.** Le basiliche paleocristiane apmene „Corsi du cultura suffiarte tavennate e bizantina“. Ravenna 1973.

— Archittua medievale armena. Roma-Palazzo venezia 10—30 giugno 1968.

Վ. Ի. Լենինի հրապարակին օրգանապես միահյուսված է քաղաքի մյուս նշանակալից հրապարակը, որտեղ գտնվում է Ստ. Շահումյանի արձանը իր ջրավազանով ու շատրվանով մոնումենտալ արտահայտությամբ։ Հուշահամալիրների շարքում են նաև այնպիսիները, որոնք լայնատարած տեղանքի վրա փռված զարգացած ու բարձրարվեստ հորինվածքներ են։ Այդպիսին է «Հաղթանակ» զբոսայգում, Մայր Հայաստանը խորհրդանշող մեծածավալ կոթողը։ Քանաքեռի հարթավայրի եզրին կառուցված այդ հուշարձանը իշխում է Երևան քաղաքի ամբողջ տարածքի վրա։ Նման ձևով է ընկալվում, նաև Ծիծեռնակաբերդում 1915 թվականի հայկական ցեղասպանության զոհերին նվիրված խիստ յուրօրինակ հորինվածքը։ Իր քանդակագործական ու ճարտարապետական բնորոշ կոթողներով աննախադեպ է Սարդարապատի ճակատամարտին նվիրված մեմորիալը։

Բացի ընդարձակ համալիրներից, պահպանության տակ են վերցրված նաև առանձին կանգնած արձանները՝ Միքայել Նալբանդյանի, Ղուկաս Ղուկասյանի, Ավետիք Իսահակյանի, Հովհաննես Թումանյանի, Ալեքսանդր Սպենդիարյանի, ինչպես նաև դյուցազնական Սասունցի Դավթի և հերոսական Վարդան Մամիկոնյանի բրոնզակերտ ձիարձանները։

Ցուցակում տեղ են գտել նաև հանրապետության այլ քաղաքների, շրջկենտրոնների ու գյուղերի մի շարք համանման կառույցներ։

Տեղ գտնելով հուշարձանների պահպանության ցուցակում, այդ կառույցները քաղաքների վերակառուցումների ընթացքում պահպանում են իրենց ինքնուրույնությունը նոր կառուցապատումներում ոչ միայն տարածական ծավալով, այլև հանդիսանում են քաղաքաշինարարական ակտիվ բաղադրիչներ։

## ա) ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ՆՐԱՆՑ ՔԱՅՔԱՅՄԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

Ճարտարապետական հուշարձանների բոլոր կարգի հիմնավորված վերանորոգումները հնարավոր են միայն այն դեպքերում, երբ նախապես պարզվում են նրանց քայքայման պատճառները։ Վերջիններս բազմազան ու տարբեր բնույթի են և հիմնականում առաջանում են շինանյութերի բնական քայքայման, հողմահարման, ինչպես նաև կոնստրուկտիվ հանգույցների խարխլման հետևանքով, որոնք խախտելով կառույցների կայուն հավասարակշռությունը, ի վերջո հանգեցնում են հուշարձանների ամբողջ սիստեմի կործանմանը։ Հարցն, այսպիսով, վերաբերում է այն որոշակի օրինաչափությունների հայտնաբերմանը, որոնցով պայմանավորված են շինանյութերի, ինչպես նաև կոնստրուկտիվ հանգույցների քայքայման ճշգրիտ պատճառները։ Դրանից հետո է միայն, ու ելնելով այդ վերջինից, համապատասխան կոնսերվացման, վերանորոգվող աշխատանքների միջոցով հնարավոր է դառնում կանխել կառույցների կործանումը։ Այլ կերպ ասած հուշարձանների վերանորոգման գործի նպատակն է հայտնագործել կառույցների պատմական կյանքի երկարակեցության օրենքները։

Հայաստանի երկրաբանական մակերեսը բնորոշվում է հրաբխային ծագում ունեցող բազմազան քարային տեսակներով, ինչպես օրինակ՝ տուֆ, բազալտ, մարմար և այլն։ Բնական է, որ շինարարական տեխնիկան այսպիսի պայմաններում չէր կարող շրջանցել այդ ամուր ու երանգավորումներով հարուստ, և մատչելի շինանյութերը։ Հայ ճարտարապետության համար այսպիսով անընդմեջ ու հիմնական շինանյութ դարձան տուֆի զանազան տեսակներն ու բազալտը։ Տուֆն օգտագործվել է իր բազմազան տեսակներով ու երանգավորումներով, որ ժամանակակից դասակարգումով՝ Անիի, Արթիկի, Երևանի, Բյուրականի ինչպես նաև, ֆելզիտի տեսակներ են[1]: Տուֆի լայն օգտագործումը պայմանավորված է նրա որակական և քանակական բարձր հատկություններով, այն է՝ ամրությամբ ու առատությամբ, որն ինքնին արդեն մի կարևոր հանգամանք էր միջնադարի պայմաններում։

Տուֆին բնորոշ է հատկապես թեթևությունը ջրադիմացկունությունը, ցրտադիմացկունությունը, ինչպես նաև դյուրին մշակումը։ Նույնը, սակայն, չի կարելի ասել անհամեմատ ավելի դուրեկան երանգավորումներ ունեցող ֆիզիտային տուֆի մասին, քանի որ ինչպես ցույց է տալիս այդ տուֆից կառուցված հուշարձանների հետազոտությունը, այն հողմնահարվում ու քայքայվում է անհամեմատ ավելի արագ, քան մյուս տուֆատեսակները։

Թեև քարը կարծր շինանյութ է ու բավական լավ պահպանվող, բայց և այնպես նրա կոնսերվացման համար դեռևս չի գտնված որևիցե հուսալի ու ապահով միջոց։ Առ այսօր հայտնի բոլոր միջոցներից կիրառվում է քարի մակերեսի օծումը հիդրոֆոբ լուծույթով, որը որպես քարի պահպանության միջոց առաջարկել է Հայաստանի շինանյութերի ինստիտուտը։

Հուշարձանների վերանորոգման վրացական պրակտիկայում, քարի պահպանության համար նույնպես իր կիրառությունն է գտել հիդրոֆոբիզացիայի եղանակը, սակայն ոչ որպես միակ ու բավարար պայման։ Այստեղ լրացուցիչ կերպով

---

[1] **З. А. Ацагорцян.** Исследование свойств и применение вулканических туфов в строительстве. Автореферат диссертации. г. Тбилиси, 1966.

Его же. Природные каменные материалы Армении. Издательство литературы по строительству. Москва 1967 г.

օգտագործված են նաև՝ էպօքսիդային խեժը, պոլիվինիլ ացետատային էմուլսիան և հրաքարային օրգանական սիլիկատը՝ որպես քարի մակերեսը ծծող լուծույթներ։ Ընդ որում, վերանորոգման գործի վրացական պրակտիկան ապացուցում է, որ լավագույն լուծույթը այդ գործի համար հանդիսանում է հրաքարային օրգանական սիլիկատը[1]։ Վերջերս Անգլիայում որպես կոնսերվացման միջոց լայն տարածում է գտել հողմահարվող քարի մակերեսը կրահողից ստացված կրաջրով թրջելու պրակտիկան։ Սակայն, այս մեթոդը դեռևս դուրս չի եկել փորձարարական շրջանից և նրա դրական արդյունքների մասին որևիցե հաստատուն վերջնական խոսք չի ասված։

Քարի հետ մեկտեղ ճարտարապետական հուշարձաններում օգտագործվել է նաև փայտը, թեև շատ ավելի սահմանափակ քանակով։ Փայտը համեմատաբար ավելի լայն օգտագործում է գտել հատկապես ժողովրդական ճարտարապետության կառույցներում՝ բնակելի և հատկապես արտադրական շենքերում։ Պաշտամունքային շենքերում այն օգտագործվել է հազվադեպ։ Բացի ուրարտական տաճարներից, դասական հայ ճարտարապետության մեջ մեզ հայտնի են միայն մի քանի եկեղեցական շենքեր, որոնք կառուցված են լրիվ փայտից (Գոշավանք) կամ հետագա մասնակի հավելումով։ Էջմիածնի տաճարում օրինակ փայտն օգտագործվել է որմածքում որպես հակասեյսմիկ գոտի։ Նման փայտյա գոտիներ էին ստեղծում նաև ռուսական եկեղեցական կառույցներում։ Ներկայումս ճարտարապետ վերանորոգող Պ. Բարանովսկին առաջարկել է հնացած փայտի փոխարեն նույն մասերում տեղադրել երկաթբետոնե գոտիներ։ Ընդ որում նրա փորձն առաջին անգամ հաջողությամբ պսակվեց Սմոլենսկի մարզի Բոլդինո վանքի եկեղեցիներից մեկում։ Դրանից հետո այն դարձավ կիրառելի սկզբունք[2]։

Պարզվել է, որ որպես շինանյութ, փայտը բնորոշվում էր արտակարգ դիմացկունությամբ, թեև այդպիսին չէին, փայտի, որպես շինանյութի մասին նախկինում գոյություն ունեցող կարծիքները[1]։ Այդ հաստատվեց միայն վերջերս, Էրեբունի միջնաբերդի խալդիի տաճարի պեղումների ժամանակ։ Այնտեղ հայտնաբերվեց թվով 8 գերան, որոնք, ավելի քան 27 դար անընդմեջ կրում էին տաճարի հոծ պատերի մի հատվածը, մեկ մետրանոց թռիչք ունեցող առվակի վրա։ Հաստատվեց նաև, որ այդ հինավուրց հեծանները իրենց արդի տեխնիկական վիճակով միանգամայն օգտագործելի են, և դիմացկունությամբ միանգամայն հուսալի շինանյութ։

Հայտնի է, որ փայտը որպես արժեքավոր շինանյութ Ուրարտուից արտահանվում էր Ասորեստան, իսկ նրա առավել ամուր տեսակները նաև Եգիպտոս, հատկապես մարտակառքեր պատրաստելու համար։

Անդրադառնալով շինանյութերի ու հատկապես քարի մշակմանը, պետք է նշել, որ այն տաշվում էր կանոնավոր երկրաչափական ձևերով, հանդիսանալով կառուցվածքների ծավալատարածական լուծման հստակ ու պարզ տարր։ Այսօր բոլոր հուշարձանները լայնորեն ցուցադրում են տեղական շինանյութի, այն է՝ քարի ռացիոնալ օգտագործման բոլոր հնարավոր միջոցները, երբ կառույցները հասցվում էին այնպիսի մակարդակի, որտեղ ձևը, կոնստրուկցիան և շինանյութը դրսևորված են ներդաշնակ միասնությամբ։ Ընդ որում, այդ ամենն արտահայտվում է շինանյութի փոխակերպման հաջորդական փուլերում, երբ այն դուրս գալով իր բնական վիճակից դառնում է կոնստրուկցիա, իսկ ներդրվելով կառույցի մեջ արդեն դիտվում է որպես ճարտարապետական ձև։

Հայկական ճարտարապետության մեջ տարածում գտած «միդիս» կոչվող որմածքը բնորոշվում է երեսապատման ճակատաքարերի միջև լցվող կրաշաղախի առկայությամբ։ Շաղախը ամրանալուց հետո միավորում է ոչ միայն պատի առանձին շարքերը, այլև ողջ կառուցվածքը, դառ-

---

[1] Т. Якашвили. Проблема эрозии и защиты каменных материалов на примере памятников культуры Грузии «Вардзия» и «Уплисцихе». II Международный симпозиум по грузинскому искусству. Тбилиси 1977 г.

[2] Всеобщая история архитектуры в 12 томах. том. 12 (первая книга) Москва 1975. էջ. 15.

[1] **Г. А. Арзуманян, П. А. Хуршудян и А. А. Яценко-Хмелевский.** Физико-механические свойства древесины сосны из раскопок Кармир-Блура (VII в. до н. э.). Доклады Академии Наук Армянской ССР XXXIII 1961 № 4 стр. 173—179.

նալով այն կոնստրուկտիվ կմախքը, որը կանգուն է մնում նույնիսկ առանց երեսպատման քարերի։ Այս առումով նշանակալից է Ի. Ստրժիգովսկու այն միտքը, թե հայկական մոնումենտալ հուշարձանների կոնստրուկտիվ լուծման առավել բնորոշ կողմը որմածքի կմախքը հանդիսացող շաղախն է (կրաբետոնը), որը և նրա կարծիքով հայկական կառուցվածքների կայունությունը ապահովող հիմնական գործոնն է[1]։

Իրոք, կարելի է բազմաթիվ օրինակներով ամրապնդել նրա այդ միտքը, թե տվյալ բետոնն հուսալի ձևով մնում է կանգուն, կառուցվածքի ընդհանուր ծավալի ուրվագիծը պահպանելով նույնիսկ այն դեպքերում, երբ ընկել ու խսպառ անհետացել են հուշարձանի երեսապատման բոլոր սրբատաշ քարերը։ Միաձուլության այս կոնստրուկտիվ սկզբունքն է, որ իշխում է անցյալի հուշարձանների կառուցողական արվեստում, և որը ժամանակին հնարավորություն է տվել հայ միջնադարյան վարպետներին մեծ հմտությամբ ու վարպետությամբ վերանորոգելու, օրինակ՝ Գեղարդավանքի գավիթի ծածկը պահող, ծանր բեռնավորված չորս կենտրոնական սյուները։ Երբ պարզվել էր, որ սյուների ստորին, մոտ մեկ մետրը բարձրությամբ, խիստ վնասված ու քայքայված մասերը սպառնում են կառուցվածքի կայունությանը, վտանգը կանխվել է խիստ հանդուգն միջոցով։ Շենքի կանգուն վիճակի պայմաններում, սյուների քայքայված մասերը, իրենց խարիսխներով հանդերձ, դուրս են բերվել նախկին տեղերից և փոխարինվել նորերով։ Այդ են վկայում սյան վերին հատվածների վրա տվյալ վերանորոգումից առաջ փորագրված խաչերի պահպանված վերին մասերը։ Այս, այնքան համարձակ և հստակ կատարված վերանորոգումն ակընհայտորեն վկայում է ոչ միայն կոնստրուկտիվ առանձնահատկությունների, այլև հայ վարպետների մեծ հմտության մասին, ինչպես շինարարության մեջ ընդհանրապես, այնպես էլ հուշարձանների վերանորոգման բնագավառում մասնավորապես (Նկ. 31)։

Ինքնին հասկանալի է նաև մի այլ հանգամանք։ Երբ կրաբետոնը դառնում է կառույցի կոնստրուկտիվ կմախքը, պատերը ջլատող հորիզոնական քարե գոտիները (այդ թվում և այն գոտիները, որոնք նշանավորում են պատից թաղին անցնելու սահմանագիծը) ըստ էության ստանում են միայն դեկորատիվ նշանակություն և չունենալով համապատասխան տեկտոնիկ ֆունկցիա, գրեթե խսպառ վերանում են։ Բազմաթիվ են նըման օրինակները, երբ պատի հարթությունը սահուն ու, ասես, աննկատ անցնում է թաղի կորագիծ մակերեսին, չսահմանազատվելով նրանից։

Ճարտարապետական ձևերի հորիզոնական ջլատումներին հակառակ (սկսած XI դարից) հայկական ճարտարապետության և հատկապես նրա պաշտամունքային կառույցներում սկսում են գերիշխել ուղղաձիգ շարժումը, հզոր ու վերսլաց ձևերի միջոցով։ Դրա գեղարվեստական արտահայտչականության գագաթնակետն են մեծ ճարտարապետ Տրդատի գործերը, և ամենից առաջ այնպիսի մի հոյակերտ կառույց, ինչպիսին է Անիի աստվածամոր տաճարը։ Այստեղ է, որ նուրբ, դինամիկ ճարտարապետական ձևերը, ասես, սլանում են դեպի վեր, դեպի գմբեթ, ստեղծելով այն արտակարգ հանդիսավորությունն ու վեհությունը, որ այնքան բնորոշ է այդ նշանավոր կառույցին։ Կրաբետոնային կոնստրուկտիվ համակարգը, միավորելով ամբողջ կառուցվածքը, սկսած որմնախարիսխից մինչև գմբեթի վեղարը, կառույցը դարձնում է մեկ միասնական ծավալ, մի համաքայլ ամբողջություն։ Շինարարական տեխնիկայի նման սկզբունքն է, որ դրված է միջնադարյան հայ ճարտարապետների կոնստրուկտիվ տարրերի հիմքում, սկզբունք, որն այնքան յուրօրինակ և նշանակալից հորինվածքների ելակետը հանդիսացավ։

Սակայն, այսուհանդերձ կան հակառակն ապացուցող բազմաթիվ օրինակներ, երբ անձրևաջրերի միջոցով կրաշաղախը որմածքից դուրս մղված լինելուց հետո էլ, շենքը նույնպես մնում է կանգուն վիճակում, այս անգամ էլ, շնորհիվ միայն քարերի շարվածքի։ Մատնանշենք, օրինակ, Արուճի տաճարը, որտեղ վերանորոգումից առաջ, ի դեպ ոչ միայն պատերը, այլև, ծածկը մնացել էր առանց շաղախի։

Քարի մասին խոսելիս կարող ենք ավելացնել, նաև, որ երբեմն որմածքի կարանները իրենցով

---

[1] I Strzygovski. Die Baukunst de Armenier und Europa. Wien 1918. I

Թ. Թորամանյան, Շինանյութերն ու նրանց գործածության կերպը հին Հայաստանում, էջ 21—25.



Նկ. 33. Որմածքի կարանները։

գծագրում են ոչ միայն շարքերի հորիզոնական ուղղությունները, այլև եզրագծում են առանձին բեկորների ճարտարապետական ձևը, ինչպես, օրինակ, այն ցույց է տրված մեր լուսանկարում (Նկ. 33)։ Նրանում մենք տեսնում ենք քարի որպես ճարտարապետական բեկորի համապատասխան արժեքավորումը, ինչ որ չափով նրա ինդիվիդուալ արտահայտությունը կառուցվածքի ողջ համակարգում։ Այսպիսով, վերջնական եզրակացությունը կարող է լինել այն, որ պատմական հայ ճարտարապետության կառուցվածքների կոնստրուկտիվ համակարգի կայունությունը հավասարաչափ պայմանավորված է այդ երկու շինանյութի փոխադարձ համաձույլ կապով ստեղծված որմածքով։ Այս առումով պատկերավոր է Թովմա Արծրունու համեմատությունը, նույն այդ շինանյութից ստեղծված որմածքի մասին, որն ըստ նրա, նման է՝ «իբրև զհալուածս կապարի և պղնձոյ ընդ միման խառնեալ»[1]։

Պատի որմածքի տվյալ ձևի կողքին, բոլորովին էլ բնորոշ չէ, օրինակ, Նախիջևանից հարավ գտնվող Կարմիր Վանքի կամ ինչպես այն անվանում են նաև Աստապատի վանքի կառուցողական եղանակը (17-րդ դ.)։ Այս հուշարձանը կառուցված լինելով անմշակ կամ կիսամշակ բազալտ քարից, կրաշաղախով, երեսապատված է աղյուսով։ Հավանաբար շինարարական այս տեխնիկան, որը բնորոշ չէ մոնումենտալ կառույցների համար, փոխ է առնված ժողովրդական շենքերի կառուցողական փորձից, որտեղ միայն կարելի է տեսնել նման շինարարական տեխնիկա։

Պատմական հայ ճարտարապետական կառույցների կոնստրուկտիվ առանձնահատկություններից է նաև նրանց քաշի անընդմեջ իջեցումը, որը սկսվում է V դարից ու տևում է մինչև XIV դարը ներառյալ և արտահայտվում է իր տարբեր լուծումներով։ Դրանցից հիմնականը պատի հաստության պարբերաբար նվազեցումն է (1 մետր 5 սմ-ից մինչև 60 սմ) ինչն արգասիք է փորձի վրա խարսխված տեխնիկական մտքի անընդմեջ զարգացման[1]։ Առանձին դեպքերում պատի հետ մեկտեղ զգալիորեն նվազեցվում է նաև ծածկի քաշը՝ նրանց հաստությունը կազմող միջուկի իներտ շինանյութի բաղադրիչներից մեկը, սովորական տուֆ քարը, փոխարինվում է շատ ավելի թեթև պեմզաքարով։ Ավելի ուշ կոնստրուկտիվ այս ձևն ավելի է փոխակերպվում, երբ իներտ նյութի փոխարեն նրա տարածությունը զբաղեցնում են տարբեր չափերի կարասներ (Նկ. 32)։ Կոնստրուկտիվ այս միջոցառումը ոչ միայն իջեցնում է շենքի քաշը, այլև օժանդակում է, հատկապես պաշտամունքային շենքերի համար այնքան բնորոշ վեղարների ամբողջությունը։ Թվում է, թե այս պրոբլեմը բոլորովին էլ հրատապ չէր Հին Արևելքի ճարտարապետական ոճերի ու հատկապես իրենց խիստ զանգվածայնությամբ ու ծանրությամբ բնորոշ եգիպտական ճարտարապետության համար։ Սակայն հակառակ դրան, օրինակ, Կառնակի կիսավեր վիճակում կանգուն տաճարի պիլոններից մեկում, երևում են միայն պատերի արտաքին շարքերը, իսկ մնացած միջին ծավալում դրանք լրիվ դատարկ են (Նկ. 1)։ Հայտնի է նաև մի ուշագրավ փաստ, թե ինչպես Լ. Ալբերտին սյան քաշը որոշելու գործում միջամտել է ճարտարապետների մի վեճին, որից պարզվում է, որ միջնադարում շենքի քաշը ճշտվում էր նույնիսկ ընդհուպ մինչև առանձին դրվագները[2]։ Այս փաստերը մեզ

---

1 Թովմայի Վարդապետի Արծրունւոյ — Պատմութիւն տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ 1887 թ., էջ 295։

---

1 Թ. Թորամանյան. — Շինանյութերն ու նրանց գործածության կերպը Հին Հայաստանում. Երևան, 1932 թ.։

2 **Леон-Баттиста Альберти.** Десять книг о Зодче-

համոզում են, որ տվյալ պրոբլեմը որպես այդպիսին գոյություն ունենալով հինավուրց ժամանակներից, միշտ էլ եղել է շինարարների մտահոգության առարկան։ Այլ կերպ ասած, շինարարները, թեև փորձնական ձևով, սակայն միշտ էլ ձգտել են բարձրացնել կառույցների կոնստրուկտիվ որակի գործակիցը, որը նյութի կամ կառույցի զանգվածի ամրության հարաբերությունն է նրա ծավալային քաշին։

Ինչպես արդեն նշվեց, ճարտարապետական հուշարձանների կոնսերվացիայի էֆեկտավոր մեթոդների մշակումը պայմանավորված է նրանց քայքայման պատճառների բացահայտումով, որոնք բավականին շատ են ու բազմազան։ Դարեր շարունակ կրելով արտաքին միջավայրի քայքայիչ հանգամանքների անմիջական ազդեցությունները, հուշարձանները հողմահարվում ու խարխլվում են, ինչպես նաև քայքայվում են, սեյսմիկ ուժերի հարվածների ներքո։ Առաջին դեպքում հուշարձանների վրա անընդմեջ ներգործող այս երևույթները տևական են, հաճախ աննկատ, սակայն շինանյութն ու կոնստրուկցիաները պարբերաբար մաշող, իսկ մյուս դեպքում հուշարձանները կործանվում են հանկարծակի, մեկ ակնթարթում ու հիմնահատակ, մեծ երկրաշարժերի ժամանակ։ Այդ ճանապարհով էլ կործանվել է հայկական միջնադարյան ճարտարապետության հուշարձանների գերակշռող մեծամասնությունը։ Այդ արհավիրքները նման են հիվանդությունների մեջ հայտնի համաճարակային երևույթներին, որոնք նույնպես հայտնվում են անսպասելի ու բնորոշ են իրենց խուճապային իրավիճակով։ Սակայն, հայ ճարտարապետներին հայտնի էին սեյսմիկ կործանարար ուժերին դիմագրավելու միջոցներ։ Շատ հուշարձանների կոնստրուկտիվ համակարգերում նկատելի են հակասեյսմիկ միջոցառումներ, որոնց մի մասը հիշեցնում է այժմ կիրառվող երկաթբետոնե գոտիները։ Մենք ի նկատի ունենք միջնադարյան հուշարձանների պատերի մեջ ներդրված փայտյա գոտիները, որոնք հայտնի էին դեռևս ուրարտական ճարտարապետությունից և հատկապես այդպիսի գերաններ հայտնաբերվել են էրեբունիի կառույցների որմածքներում։ Հում աղյուսե պատերի մեջ կիրառվող նման սկզբունքն արդեն վկայում է բազում դարերի հակասեյսմիկ միջոցառումների գոյության մասին ու հետևապես, դարերի խորքից եկող ու մեծ փորձի վրա հիմնըված կայուն ավանդույթների մասին։ Դրանք են գուցե, որ ստեղծել են նաև այլ լուծումներ, ինչպես օրինակ պատի շարքերի քարերի ատամնավոր միացումները միմյանց հետ, որոնք կազմելով մեկ ամբողջական գոտի, և շրջանցելով կառուցվածքի ճակատները կազմել են օղակաձև կուռ զանգված։ Ատամնավոր միացումների ըսկըզբունքը լայնորեն օգտագործվում էր նաև մուտքերի բարավորներին, ինչպես նաև կամարներին համապատասխան կայունություն հաղորդելու համար։ Մոնումենտալ հուշարձաններում սեյսմադիմացկունությունն ապահովում են նախ՝ որմածքի միջին համաձույլ կրաշաղախը, և ապա կամարների, հենակամարների, թաղերի, ինչպես նաև միաձույլ պատերի փոխայարձ կապերի հետևանքով ստեղծված կոնստրուկտիվ հորինվածքների կոշտ համակարգերը։ Սակայն, հակասեյսմիկ միջոցառումներն ավելի շատ էին ու կատարյալ, նրանց կիրառումը սկըսվում էր տեղանքի ընտրությունից ընդհուպ մինչև կառույցի հատակագծային ու ծավալային ձևերի հորինվածքի լուծումները։[1]

Այս ամենը ակնհայտորեն վկայում է միջնադարյան հայ ճարտարապետների փորձնական գիտելիքները հուշարձաններին սպառնացող երկրաշարժերի վտանգների ու հատկապես դրանք կանխող միջոցառումների մասին։ Մարդու նման ջանքը բնության ուժերի հաղթահարման գործում մի հակամարտություն էր, որն արտահայտում էր նրա ստեղծագործական մտքի էվոլյուցիան ճարտարապետության զարգացման պրոցեսում։

Բացի երկրաշարժերից հուշարձաններին վնասել են, հատկապես լեռնային շրջաններում, հաճախակի մոլեգնող կայծակները։ Կայծակները կործանել են հուշարձանների առանձին հատվածները, ճեղքեր առաջացրել, դրանով իսկ խարխլել նրանց սեյսմակայունությունը։ Այդ կապակցու-

стве. В двух томах. Том II. Изд. Всесоюзной Академии архитектуры. Москва, 1937, стр. 100.

[1] Հ. Գ. Սարգսյան, Յու. Ա. Թամանյան, Հայկական պատմական կառույցների սեյսմակայունության զարգացման հարցի շուրջը։ Պատմաբանասիրական հանդես 1970, № 1 (80) էջ 212—219։



Նկ. 34. Ուղղաթիռը շինանյութ տեղափոխելիս։



Նկ. 35. Ուղղաթիռը շինանյութ իջեցնելիս։

*թյամբ է, որ ներկայումս հուշարձանների վերականգնման ընթացքում, օրինակ, Ամբերդում, փորձ կատարվեց կառույցի պահպանության համար կիրառել շանթարգելներ։*

*Հուշարձանների աստիճանական քայքայմանը նպաստում են նաև ստորերկրյա ջրերը և մթնոլորտային տեղումները, եթե դրանք ներթափանցում են որմածքի մեջ։ Կրաբետոնի ողողման հետևանքով որմածքի մեջ առաջացած դատարկությունները ձևախեղում են կառուցվածքի հորինվածքը, խախտում ներքին ուժերի ստատիկ հավասարակշռությունը, ինչպես նաև կառուցողական նախնական ողջ համակարգը։ Մթնոլորտային ջրերի ներթափանցման հիմնական պատճառը շենքերի ծածկերի վնասվածքներն են։ Անհամեմատ մեծ վնաս են հասցնում հուշարձաններին ստորգետնյա ջրերը, որոնք ողողում են նրանց հիմքերը, խախտում շինության հավասարակշռությունը, ինչպես նաև թուլացնում հիմնատակը և ի վերջո սահքեր առաջացնելով, նպաստում կառուցվածքների կործանմանը։*

*Հուշարձանների կործանման պատճառ են դառնում նաև հիմնատակների ոչ խոր լինելը։ Անցյալի ճարտարապետների ուշադրության կենտրոնում, հավանաբար, նման խնդիր չի եղել, քանի որ չեն եղել երկրաբանական պատշաճ պատկերացումներ։ Այս առիթով, սակայն, հիշատակության արժանի է բյուզանդական շինարար Ֆիլինիի (IV դար) միտքը. նա զգուշացնում է նստվածքային երևույթներից. առաջարկում է, կառուցվող պաշտպանական պարիսպների համակարգում կարաններ թողնել նրանց ծանր աշտարակների ու պարիսպների միջև, այն ինչ ընդունված է ժամանակակից շինարարությունում[1]։ Իսկ արդեն XV դարում Վերածննդի ճարտարապետ Ալբերտին առաջարկում է նախքան կառույցների հիմնադրումը կատարել տեղանքի հետազոտություն, ջրհորներ փորելու միջոցով պարզել հողի շերտավորությունը[2]։ Սա արդեն ավելի է*

[1] **Н. Н. Аистов, Б. Д. Васильев, В. Ф. Иванов, С. В. Сахновский, Н. А. Смирнов, А. И. Орлов, С. М. Шифрин.** История строительной техники. Гос. изд. лит. по строительству архитектуры и строительным материалом. Ленинград—Москва 1962 г., стр. 188.

[2] **Леон-Баттиста Альберти.** Десять книг о зодчестве. Изд. Всесоюзной Академии архитектуры. Москва. 1935; том 1



Նկ. 36 Մեխանիզմների կիրառումը վերանորոգման գործում։

մոտենում ժամանակակից երկրաբանական հասկացություններին։

Հայտնի է, ինչպես տեղանքի հետ կապված նստվածքային երևույթների հետևանքով, ժամանակին, թեքվել են համաշխարհային ճարտարապետության մի շարք, հիմնականում աշտարակաձև կառույցներ, որոնցից են Պիզայի ու Բոլոնյեի աշտարակները Իտալիայում կամ Ուլուգբեկի Մեդրեսեի մինարեն, Սամարղանդում։ Վերջինս 1930 թվականին ձեռնարկած միջոցառումների շնորհիվ բարեհաջող բերվեց իր նախնական դիրքին։

Տվյալ հարցի պատկերացումները դիտականորեն ընկալվեցին շատ ավելի ուշ, իսկ մինչ այդ անդնդախոր կիրճերի եզրամասերի սահքերը, իրենց հետ ոչ քիչ հուշարձաններ են տարել։ Նման մի դեպք հայտնի է Հառիճում, որտեղ կիրճի եզրամասից պոկված և խիստ առաջ եկած հսկա ժայռաբեկորը իր հետ տարել է մի փոքրիկ մատուռ, որը թեև թեքված, սակայն բարեբախտաբար մնացել է կանգուն (Նկ. 27)։ Սակայն առավել ցայտուն օրինակ է Ջուխտակ վանքի բավականին ընդարձակ տարածքը, որը համարյա ամբողջությամբ ենթարկվել է սահքի, շենքերի մեջ առաջացնելով վթարային երևույթներ։

Հուշարձանների համար, որոշ առումով, աննպաստ են նաև օդի ջերմաստիճանի փոփոխությունները։ Ընդ որում դա առավել վնասակար է

որմածքի ներսում թափանցված ջրի առկայության դեպքում, քանի որ ջուրը սառչելիս կամ գոլորշիանալիս խախտում է պատի որմածքը։

Ջերմային տատանումները կարող են սկզբնապատճառ դառնալ նաև շատ ավելի լուրջ վնասվածքների, ընդհուպ մինչև հուշարձանների ամբողջական կործանման։ Այս կապակցությամբ ուշագրավ է այն փաստը, որ մեզ հասած բազմաթիվ կիսավեր հուշարձաններում որպես կանոն պահպանվել է միայն հյուսիսային պատը։ Այս հանգամանքը ժամանակին չի վրիպել նաև Թ. Թորամանյանի ուշադրությունից և նա նույնիսկ կազմել է նման հուշարձանների մի ամբողջ ցուցակ։ Տվյալ երևույթը բացատրվում է հուշարձանների ճակատների խիստ կանոնավոր դիրքով երկրի կողմերի նկատմամբ։ Հայտնի է, որ այդ դիրքով հուշարձանների բոլոր ճակատները, բացի հյուսիսայինից, օրվա որոշ ժամերին արևի կիզիչ ճառագայթների ազդեցության ներքո զգալիորեն տաքանում են ու անցնելով զով ստվերի մեջ, իսկ երբեմն նաև ողողվելով անձրևների սառ ջրերով, անցնում են ջերմային հակադիր աստիճանին։ Ջերմային նման տատանումներն առավելապես ուժեղ են հարավային, արևելյան ու արևմտյան ճակատներում, որոնք նրանց հասցնում են մինչև քայքայման վիճակին։ Քանի որ ջերմային տատանումները նվազագույնի են հասնում հյուսիսային ճակատներում, այդ պատճառով էլ հյուսիսակողմի պատերը, համեմատաբար, երկար են կանգուն մնում։

Հուշարձանների կայունության վրա բացասաբար է անդրադառնում նաև ցերեկային բարձր և գիշերային ցածր ջերմաստիճանների տարբերության պարբերական կրկնությունը։ Ջերմային այդ տատանումները, թեև շատ դանդաղ են և աննկատ, սակայն նույնպես բացասաբար են անդրադառնում հուշարձանների վրա, նրանց ճակատային մասերում առաջացնելով տարբեր վնասվածքներ, որոնք, աստիճանաբար խորանալով, նույնպես ստեղծում են վթարային վիճակ։

Հուշարձանների ավերման, վերը նշված պայմաններից բացի, ոչ պակաս վտանգավոր են նաև կենսաբանական գործոնները։ Հուշարձանների պատերի ճեղքերում և հատկապես լանջավոր ծածկերի վրա աճած զանազան թփերը և բուսական ծածկույթը իրենց արմատներով, բավականաչափ խոր ներթափանցելով կառուցվածքի հոծ զանգվածների մեջ, ճեղքում ու կործանում են դրանք, մեծապես նպաստելով մթնոլորտային տեղումների ներթափանցմանը։ Բազմաթիվ են նաև այնպիսի դեպքերը, երբ հուշարձանից ոչ հեռու աճած դարավոր ծառերի արմատները, ներթափանցելով հուշարձանների որմածքի մեջ, պարագծով, շրջափակում են ողջ կառուցվածքը, խարխլում նրա շաղախը։ Այսպիսի վիճակ էր ստեղծվել հատկապես Վահանավանքի եկեղեցում, ինչպես նաև, ավելի մեծ չափերով Մշկավանքի հուշարձանախմբի գավթում, որտեղ անհրաժեշտ եղավ խիստ բարդ միջոցառումներ կիրառել հուշարձանը այդ արմատներից ազատելու համար։

Հուշարձանների կայունության հարցում տագնապալից վտանգ են առաջացնում նաև քիմիական գործոնները, և առաջին հերթին որմածքի աղակալումները։ Ջրերի ներծծումը և միգրացիան կատարյալ քայքայում է առաջացնում զանգվածային մասերում ու արտաքին հարթություններում։ Խնդիրն այն է, որ այդ շարժման ժամանակ, ջուրը դուրս գալով որմածքի մակերեսը նրա վրա աղային շերտ է թողնում։ Ժամանակի ընթացքում այս վերջինը պոկվելով որմածքից իր հետ տանում է քարի մակերեսի զգալի մասը, որից հետո նրա քայքայման պրոցեսը ավելի է արագանում, ինչպես նաև այլանդակում է հուշարձանի ճակատները։

### բ) ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՆՈՐՈԳՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Ճարտարապետական հուշարձանների պահպանության հիմնական ձևերից մեկը նրանց նորոգումն է, որն անհնարին է ու անբաժան նրանց գիտական հետազոտությունից։ Նորոգումը մրշտապես համարվել է ամենառացիոնալ միջոցառումը շենքերի անընդմեջ շահագործման հետեվանքով առաջացրած վնասվածքներից, ինչպես նաև հուշարձանների քայքայման բոլոր բնական



Նկ. 37. Շենգավիթ— պեղված բնակելի տների մնացորդները կոնսերվացիայից հետո։

ու արհեստական պատճառներից առաջացած պրոցեսները կանխելու համար։ Հուշարձանների նորոգումը, նրանց պահպանության հավաքական սկզբունքների արտահայտությունն է, որի նորովի հստակ ըմբռնումը, այդ հարցի մասին տարբեր մոտեցումները սաղմնավորվել են մեր դարում։ Քանի որ հեռավոր անցյալում, արդի հասկացությանը հակառակ, հուշարձանը չէր դիտվում որպես հնավանդ կոթող, այլ համարվում էր գործող կառույց, հետևապես իր վթարային վիճակում էլ ենթակա էր վերանորոգման, ժամանակակից շինարարական պահանջների համաձայն։ Այս հարցում ղեկավար սկզբունքը կոնստրուկտիվ տրամաբանությունն էր, ճարտարապետի ստեղծագործական մտահղացումը, ինչպես նաև խնդրի լուծման նրա անհատական մոտեցումը։ Հետևաբար հասկանալի է, որ այդ սկզբունքի համաձայն հուշարձանների նորոգման աշխատանքները հնում պայմանավորված չէին նրանց նախնական ձևերի պահպանման ու, մանավանդ, վերականգնման հասկացողությամբ։ Դրանով է բացատրվում այն երևույթը, որ հաճախ շենքերի վերանորոգման ժամանակ հիմնովին ու անճանաչելիորեն վերափոխվում էին նրանց ծավալային ձևերը, բոլորովին հաշվի չնստելով նախնական հորինվածքի հետ։ Հենց սա է այն սկզբունքային տարբերությունը, որն առկա է միջնադարի և մեր ժամանակակից ճարտարապետ վերանորոգողների մոտեցման միջև։ Ժամանակակից ճարտարապետը ձեռնարկելով վթարային վիճակում գտնվող հուշարձանի վերականգնման գործը, մնում է նրա հնավանդ ձևերի ու դրվագների սահմաններում, ոչինչ չայլափոխելով։ Սրանով է, որ պահպանվում են հուշարձանների հնագիտական արժեքը ու պատմական իսկությունը։ Սա առանձնապես պարտադիր է ու կարևոր հուշարձանների հետագա հետազոտությունների համար, որոնց մեկնաբանությունները չեն կարող հիմնվել



Նկ. 38. Թեյշեբայինի. պեղված բնակելի տների մնացորդները կոնսերվացիայից հետո։

արդիականացված, առավելապես, նորոււյի հորինված ճարտարապետական ձևերի վրա։ Դրանով է, որ պահպանվում է հուշարձանի պատմական իսկությունը մեր ժամանակակից համկացողությամբ։ Մինչդեռ, եթե հինավուրց ժամանակների համար վերանորոգումների մերօրյա սկզբունքի բացակայությունը պայմանավորված էր «հուշարձան» հասկացության բացակայությամբ, ապա միանգամայն այլ բան ենք տեսնում XIX դարի Եվրոպայի վերականգնման աշխատանքների պրակտիկայում։ Այս առումով բնորոշ է Վիոլե-Լե-Դյուկի այն միտքը, թե՝ «ճարտարապետը պետք է վերափոխի ոչ միայն այն, ինչ արվեստի տեսակետից նրան թվում է անհաջող, այլև այն, ու մենք չենք տատանվում դա պնդել, ինչը նրան անհաջող է թվում հորինվածքի առումով»[1]։ Վիոլե-Լե-Դյուկի այս միտքը միանգամայն բնորոշ է իր ժամանակի Եվրոպայի վերանորոգումների ոճական ուղղությանը և նրա սկզբունքների անկյունաքարն է։ Եվրոպայում այս սկզբունքով կատարված վերանորոգումները ժամանակին հիմնովին այլափոխեցին մի շարք դասական հուշարձանների սկզբնական ձևերը, հորինվածքները, ու հետևապես նրանց ճարտարապետական կերպարները։

Ինքնին հասկանալի է, որ կոթողների պատմական իսկությունը պահպանելու մղումով կազմված վերականգնման ամեն մի նախագիծ չի կարող վերջնական համարվել և ենթակա է համապատասխան լրացումների ու կատարելագործման դաշտային աշխատանքների ընթացքում, երբ ճշտվում են նրանց ձևերը, և հայտնաբերվում նորանոր մանրամասներ։

Սա միևնույն ժամանակ նշանակում է, որ մեր օրերում վերականգնող ճարտարապետի ստեղծագործությունը չպետք է լինի չափազանց կամերային։ Այն պետք է միշտ ընթանա հետադարձ

[1] Leon. P. La vie des monuments Franceais. Paris. 1951. էջ 375.



Նկ. 39. Գառնի. պեղված պալատի մնացորդները
կոնսերվացիայից հետո։

հայացքով դեպի հուշարձանը, նրա առկա մնացորդները, ինչպես նաև սերտորեն կապվի ավանդույթների հետ առնչվող բազմաթիվ հանգամանքների։

Հետևապես, մեր օրերի ճարտարապետ վերանորոգողից պահանջվում է լինել բազմակողմանի զարգացած մասնագետ, որը պետք է կարողանա լուծել ոչ միայն ճարտարապետական կոնստրուկտիվ և շինարարական խնդիրներ, այլև թափանցել պատմական հարցերի խորքը ու հատկապես ճարտարապետական անցյալի բնագավառը, կարողանա ինքնուրույն հնագիտական պեղումներ կատարել վերանորոգվող հուշարձանի շրջակայքում, ինչպես նաև ծանոթ լինի ազգագրության հարցերին և որ գլխավորն է, պետք է հնությունը ընկալի պատմական անցյալի ստեղծագործական որոնումների ու գեղագիտական պատկերացումների տեսանկյունով։ Բանն այն է, որ ձեռնարկելով կոնստրուկտիվ-վերականգնողական նախագծի կատարումը, ճարտարապետը հաճախ մենակ է մնում վերականգնվող հուշարձանի հետ, չունենալով տվյալ կառույցի մասին ոչ մի պատմական վկայություն, ինչպես նաև տեղեկություններ նրա անհետ կորած ճարտարապետական ձևերի մասին։ Հետևաբար, հաճախ, նման պայմաններում նա մնում է որոնումների ու ենթադրությունների, թվում է թե անելանելի շրջանակներում։ Այս դեպքերի համար է, որ նրան պետք է օգնության հասնեն նրա գիտելիքների ամբողջ հանրագումարը, և ամենից առաջ ստեղծագործական տրամաբանության ողջ ուժը, նրան ետ պահելու նաև «ոճական վերանորոգումների ուղղության սկզբունքներից»։ Այսպիսով, վերանորոգող ճարտարապետը, ոչ այնքան ստեղծա-

գործող է, տվյալ մտքի հանրահայտ իմաստով, որքան անցյալի ճարտարապետության գոհարների մասսայականացնողն ու պրոպագանդիստը։

Վերանորոգման մեթոդների առումով կան մի շարք ձևեր, սակայն հիմնականը մենք համարում ենք միայն երեքը։ Այդ երեք ձևերը հետևյալներն են՝

**ա.—Կոնսերվացիա՝** Հուշարձանը ամրացվում է որմածքի սահմաններում, առանց նրա ձևերի փոխակերպումների։

**բ.—Նորոգում՝** Հուշարձանը ամրացվում է որմածքի սահմաններում, կատարվում է վերաշար, վթարված մասերը փոխարինվում են նորերով, կատարվում է կոնստրուկտիվ պահանջներից բխող ձևերի մասնակի լրացում։

**գ.—Վերականգնում՝** կատարվում է հուշարձանի նախնական տեսքի լրիվ վերարտադրություն։

Այս երեք սկզբունքներն են, որ վթարային վիճակի մեջ գտնվող հուշարձանների դիֆերենցված բաղադրիչների՝ հորինվածքին, այն է, ձևին, կոնստրուկցիային, շինանյութին, ինչպես նաև միջավայրին, որում ստեղծվել է այդ հուշարձանը, երկարակեցության նոր հնարավորություններ են հաղորդում։ Այս բաղադրիչների պատմաճարտարապետական ու տեխնիկական համարժեք նշանակության հանգամանքը, պարտավորեցնում է համապատասխանորեն վերանորոգել դրանք, իրենց բոլոր շաղկապած տարրերով հանդերձ, որոնք հուշարձանի ընդհանուր կերպի ներդաշնակ միասնության դրսևորումն են։ Մերժելի է այն նորոգումը, որտեղ անտեսվում է նշված բաղադրիչներից որևէ մեկը, մյուսի արտահայտչականությունը շեշտելու ձգտումով։ Հետևաբար, նորոգելով ձևը, հարկ է պահպանել նաև նրա բնորոշ կոնստրուկտիվ կառուցվածքը, քանի որ յուրաքանչյուր կատարյալ կոնստրուկտիվ մտահղացում դրսևորվում է իրեն հստակ պլաստիկ արտահայտչականությամբ, որն ի վերջո ինքը կառույցի ձևն է, կամ այլ կերպ, կառույցի գեղարվեստական կողմի հիմքը։

Ինչ վերաբերում է միջավայրին, ուր գտնվում են հուշարձանները, նշենք, որ վերջիններիս պահպանության գործի հասկացողության մեջ տեղի են ունեցել նշանակալից փոփոխություններ, այն իմաստով, որ եթե անցյալում յուրաքանչյուր հուշարձանի պահպանության հարցերը դիտվում էին բուն հուշարձանի եզրագծերի սահմաններում միայն, ապա ներկայումս, հատկապես ԻԿՈՄՈՍ-ի քննարկումներից ու որոշումներից հետո դրանք դիտվում են բաղաքների կառուցապատումների ծավալատարածական հորինվածքների շրջապատի հետ միասնական կապով հանդերձ։ Այս դրույթի կարևորությունը հասկանալի է, քանի որ հուշարձանի առկայությունը յուրաքանչյուր կառուցապատման մեջ, ինքնին արդեն տվյալ շրջապատին հաղորդում է ճարտարապետական անհատական արտահայտություն, դրանումն է նրանց ներդաշնակ ու անխզելի միասնությունը։

Վերականգնման նշված երեք մեթոդներից, այն է՝ **կոնսերվացիա, նորոգում և վերականգնում**, յուրաքանչյուրի ընտրությունը պայմանավորված է հուշարձանի տեխնիկական վիճակով և մասնավորապես նրա առանձին բաղադրիչների դրությամբ։

Այդ բաղադրիչներից առաջինը ձևն է։

**ՁԵՎԸ:** Հուշարձանների վերանորոգումների բոլոր կարգի աշխատանքները սովորաբար սկըսվում են նրանց մանրակրկիտ գիտական հետազոտությունից, որով բացահայտվում են վերանորոգման ենթակա կոթողների ճարտարապետական ձևերի մեջ դարերի ընթացքում տեղի ունեցած փոփոխությունները և, մասնավորապես, նրանց արդի վթարային վիճակի ծագման կոնկրետ պատճառները։ Սովորաբար այն սկսվում է հուշարձանների սկզբնական ճարտարապետական ձևերի հայտնաբերումով, քանի որ շատ հաճախ իրենց դարավոր պատմության ընթացքում հուշարձանները ոչ միայն կառուցապատվել են, այլև ենթարկվել զանազան փոփոխությունների, ընդհուպ հիմնովին վերակառուցման։ Այս վիճակով մեզ հասած հուշարձանները բազմաթիվ են։ Նրանց նախնական ձևերի վերականգնման հարցը, հետագա կառուցապատումներից ազատվելու իմաստով, որոշվում է վերջիններիս պատմաճարտարապետական արժեքի գնահատումից հետո միայն։ Խոսքը, այսպիսով, վերաբերում է հուշարձանների այն հավելվածների գնահատականին, որոնք արտահայտում են նրա պատմական կյանքի դրվագները տարբեր դարաշրջաններում, տարբեր ոճական ուղղությունների ժամանակ կրած փոփոխությունների ճարտարապետական

իմաստը կամ բնորոշվում են ճարտարապետական ու գեղարվեստական նոր խոսքով, և որոնք, հետևաբար, անվերապահորեն արժանի են պահպանման։ Այսուհանդերձ, հարցի վերջնական լուծումը միշտ էլ լի է վերապահումներով։ Օրինակ, ժամանակին, հուշարձանների վերականգնման գործի ռուս նշանավոր տեսաբան Պ. Պոկրիշկինը գտնում էր, որ հետագա հավելումների վերացումը կարող է թույլատրելի համարվել այն ծայրահեղ դեպքերում, երբ դրանք վնասում են հուշարձանին տեխնիկական, գիտական կամ գեղարվեստական առումով[1]։ Բայց արդյո՞ք հուշարձանին վնասող այս հանգամանքներից որևէ մեկը կարող է ժխտել մյուսների արժանիքները, և այս առումով մերժելի դարձնել հետագա հավելումների գոյության անհրաժեշտությունը։

Ճարտարապետական հուշարձանների նախնական տեսքի վերականգնման այս հարցը դարձավ XIX դարի Եվրոպայի վերականգնողական աշխատանքների մեջ մխրճված ու անընդմեջ քննարկվող, սակայն վերջնականապես չլուծվող մի պրոբլեմ, թեև պրակտիկ գործունեության մեջ նախնական ձևի վերարտադրությունը դարձավ նրա գլխավոր նպատակը։ Այդ սկզբունքը չբաժանողների շարքում շատերին ենք տեսնում, որ հանդես են եկել այդ տեսակետի վճռական մերժումով։ Նրանց թվումն էր նաև գրող Անատոլ Ֆրանսը։ Իր վեպի հերոս ճարտարապետ Ֆիլիպ Դեշարտրի անունից Ա. Ֆրանսը որպես ընդդիմախոսություն Վիոլե-Լե-Դյուկին ասում է, թե տաճարների, դղյակների և մյուսների հետագա հավելումների վերացումը գիտական բարբարոսություն է և, որ հանցագործություն է ջնջել բոլոր հետագա հետքերը, որ թողել են քարի վրա մեր նախնիների ձեռքը և նրանց հոգին։ Ֆիլիպ Դեշարտրը պահանջում է, որ ճարտարապետհնագետը սահմանափակվի հուշարձանների (նրա մոտ պատերի) պահպանության և ամրության հոգսերով միայն։ Անատոլ Ֆրանսը այստեղ եռանդագին ավելացնում է, թե, նա, Ֆիլիպ Դեշարտրը, իհարկե, իրավացի է[1]։

Հարցի ճիշտ լուծումը, հավանաբար, ամեն անգամ պահանջում է խիստ անհատական մոտեցում յուրաքանչյուր առանձին հուշարձանի նկատմամբ։

Այս բանի բնորոշ օրինակներից է էրեբունին, որտեղ պեղումներով հայտնաբերված մ.թ.ա. VIII դարում կառուցված Խալդիի և Սուսի տաճարները ունեին հետագա դարերի շինարարական հավելումներ։ Պարզվեց, որ վերջիններս ոչ թե ընթացիկ շինարարության պրոցեսում կատարված սովորական հավելումներ են, և ոչ էլ հաջորդ դարաշրջաններին պատկանող, այլ բոլորովին տարբեր մշակույթի, այն է աքեմենյան Իրանի ճարտարապետության ծնունդ են։ էրեբունին այս կապակցությամբ դիտվեց այն հանգուցակետը, Հին Արևելքի ու նրան փոխարինող դարաշրջանի այն սահմանագիծը, որում ավարտվում է ուրարտական մշակույթը ու նշմարվում է աքեմենյան Իրանի ճարտարապետական մշակույթի տարրը։ Սրանո՛վ է հավելումների իմաստի բացահայտումը։ Մյուս օրինակը, որը նույնպես կրում է մի շարք դարաշրջանների շինարարական գործունեության բազմաթիվ ակնհայտ ձևափոխություններ, էջմիածնի Մայր տաճարն է։ Այս առումով էլ, տաճարը փաստորեն դասական հայ ճարտարապետության այն կոթողն է, որտեղ դրսևորվել են ոճական զանազան ուղղություններ։ Դրանք են՝ արևմտյան կողմում կցված զանգակատունը, հյուսիսային և հարավային աբսիդների վրա վեր խոյացած փոքր զանգակատները, շենքի արևելյան կողմին կցված թանգարանը և վերջապես ամենավերջին շրջանում կատարված որմնանկարներն ու բազմաթիվ այլ վերանորոգումներ։ Տաճարի նախնական ձևը, որը բազիլիկատիպ ոչ մեծ կառուցվածք էր, ինչպես դա պարզեցին շենքի ներսում կատարված պեղումները, վաղուց անհետացել է տաճարի հետագա դարերի վերակառուցումների, նույն տեղում ստեղծված կենտրոնագմբեթ հորինվածքի ընդերքում։ Հետևաբար տվյալ դեպքում տաճարի նախնական հորինվածքի վերականգնումը անհնարին է, և այն չի էլ ար-

[1] **П. П. Покрышкин.** Краткие советы по вопросам ремонта памятников старины и искусства. Изд. Императорской археологической комиссии. Вып. 57. Петроград. 1915,.стр. 178.

[1] **А. Франс.** Красная лилия. Сборник произведений, 3-ий том, 1956 г. стр. 66.

*դարացվում որևէ անհրաժեշտությամբ։ Այդպիսին պետք է լինի մոտեցումը համանման վիճակի մեջ գտնվող բոլոր այլ հուշարձանների նկատմամբ։ Որքան ճշմարտացի էր այս առումով Պրոսպեր Մերիմեն, որն ի դեպ, Ֆրանսիայում գլխավորել է հուշարձանների պահպանության գործը, ասելով թե՝ ճարտարապետական հուշարձանը, դա մի գիրք է, որի մեջ յուրաքանչյուր սերունդ գրել է իր էջը։ Չպետք է ավերել նրանցից և ոչ մեկը*[1]։

*Հիրավի։ Այդ առումով հետաքրքրական է հիշատակել համանման մի միտք, որ կարդում ենք Արգիշտիխինիլիում հայտնաբերված սեպագիր արձանագրության մեջ.*

*«Սարդուրն՝ Արգիշտիի որդին, ասում է, թագավորն, որը հետագայում լինելու է տիրակալը, թող չլքի այս բերդը, թող չփչացնի (այն), թող ոչ մի բան այդ կառույցից նա չվնասի»*[2]։

*Խոսելով հուշարձանների նկատմամբ ձևերի վերականգնման սկզբունքների մասին, կարող ենք վկայակոչել ժամանակին Եվրոպայում տարածված մի այլ մոտեցում ևս, երբ անհայտացած ձևերը վերականգնվում էին մեկ այլ հուշարձանում պահպանված համանման ճարտարապետական տարածական ձևերի ճշգրիտ ընդօրինակության միջոցով*[3]*։ Սակայն, տվյալ մոտեցումը զերծ չէ պատահականություններից և նրա կիրառումը սովորաբար հասցնում է ամենաանսպասելի հետևանքների, քանի որ, ըստ էության այն ոչնչով չի տարբերվում ներկայումս արդեն նույնպես մերժելի դարձած հուշարձանների վերականգնման ինտուիտիվ, այն է, ենթադրական լուծումներից*[4]։

*Անդրադառնալով հուշարձանների ձևերի նորոգման հարցին, այս առումով միշտ էլ ծագում է ավանդական երկմտանքը՝* **կոնսերվացիա՞**, *թե՞* **վերականգնում**։ *Տվյալ պրոբլեմը սկզբունքային է, և մեկ անգամ չէ, որ այն քննարկվել է մի շարք միջազգային համաժողովներում, թերևս վերջիններիս առաջարկությունները ոչ բոլոր դեպքերում է, որ վերջնական խոսքի ուժ ունեն։ Այսպես, Աթենքի համաժողովը (1931) վերանորոգման աշխատանքների հիմնական սկզբունքը համարեց կոնսերվացիան, մինչդեռ 1964 թվականին, նույն պրոբլեմներին նվիրված Վենետիկի համաժողովը, թեև որոշ վերապահումներով, սակայն, հակվեց հուշարձանների նաև վերականգնման հնարավորությունների կողմը։ Այս վերջին մոտեցումն իր կողմնակիցները գտավ մի շարք երկրներում, այդ թվում նաև Աթենքում, որտեղ 60-ական թվականների սկզբին մասնակիորեն վերականգնվեց Ակրոպոլիսի հուշարձաններից նրա շքամուտքը և այդ թվում նաև Ակրոպոլիսի ստորոտում տեղավորված Դիոնիսիոսի թատրոնը՝ ամֆիթատրոնի մասը (նկ. 3, 4)։ Մեր այցելության պահին (1960) արդեն պատրաստ էին առաստաղային մեծածավալ սալաքարեր, մշակված իրենց նախնական զարդաքանդակներով, և որոնք, ինչպես պարզվեց տեղում, նախատեսվում էին Ակրոպոլիսի մյուս հուշարձանների վերանորոգման համար։*

*Սակայն, հավանաբար, տվյալ հարցի հետ կապված երկմտանքը դեռ չի վերացել, ավելին, գիտամեթոդական ոլորտներում զգացվում է դեպի կոնսերվացիան ուղղված հակումների անընդմեջ ընդլայնումը։ Ինքնին հասկանալի է, որ հուշարձանների լրիվ վերականգնման պրոբլեմը որպես այդպիսին, չի վերանում իսպառ, այն իրականացվում է, ընդ որում, այն դեպքերում միայն, երբ այդ հարցում ամեն մի կոնկրետ հուշարձանի համար գոյություն չունի որևէ վարկած, կամ ինչպես արձանագրում է Վենետիկի համաժողովը, վերականգնվող ձևերի հավաստիությունը կասկածից դուրս է։ Հակառակ դեպքում, հուշարձանի վերականգնված կերպը զրկվում է գիտական հավաստիությունից, պատմական նշանակությունից ու հետևապես դադարում է լիարժեք «կոթող» լինելուց։ Այս կապակցությամբ հնագիտական հուշարձանների վաղնջական ձևերի անձեռնմխելիության սկզբունքը, նրանց լրիվ կամ նույնիսկ մաս-*

---

1 France A. Pierre Noziere 1889. էջ 169։

2 **Г. А. Меликишвили.** Урартские клинообразные надписи. Изд. АН СССР. Москва, 1960, стр. 315.

3 *Նման սկզբունքով է, օրինակ, ներկայումս կատարված Մոսկվայի Պոկրովկա եկեղեցու գմբեթների նախնական տեսքը վերարտադրող նախագծի տարբերակներից մեկը։*

**Н. Соболев.** — Проект реконструкции памятника архитектуры—храма Василия Блаженного в Москве. Архитектура СССР 1977.

4 *Եթե ինտուիցիան կարող է օժանդակել գիտության բնագավառի դեռ չլուծված հարցերի վերհանմանը, ապա կործանված ճարտարապետական ձևերի վերականգնման գործում նույն ինտուիցիան, միշտ մնում է անհավաստի միջոց։*

նակի վերականգնման առումով, XIX դարում կնքվեց «պուրիզմ» տերմինով։ Այս սկզբունքի անտեսումը համարվել է հուշարձանների վաղընջականության արժեզրկումը, կամ այլ կերպ, նրանց հնագիտական դևալվացիան։ Կասկածից վեր է, որ հնագիտական հուշարձանների համար, անշուշտ, գերադասելի է կոնսերվացիան։

Մեր կարծիքով, ճարտարապետական հուշարձանների լրիվ վերականգնումներն անվերապահորեն ընդունելի են այն դեպքերում միայն, երբ սրանց անհետացած ձևերը, համեմատաբար, փոքր տոկոս են կազմում ընդհանուր կանգուն ծավալի նկատմամբ և միևնույն ժամանակ լրացվող ձևերի հավաստիությունը կասկածից դուրս է։ Այս սկզբունքը, որպես բացառություն, ընդունելի պետք է համարել նաև հնագիտական հուշարձանների այն դեպքերի համար, երբ այդ ձևերը ինքնին խիստ եզակի երևույթ են ճարտարապետության ասպարեզում ու երբ նրանց հազիվ նշմարելի հետքերը կանգնած են լրիվ կորստյան վտանգի առաջ։ Նման դեպքերի համար պահպանության ներքո արժե ունենալ ձևերի թեկուզ և նմանակված օրինակներ, միայն թե նրանք գալիքին հաղորդեն անցյալի ճարտարապետական մտքի իմաստը դրսևորող որոշակի արտահայտությունները։

Այդպիսի հուշարձաններից է (որոնք պահպանել են իրենց նախնական ծավալի 20—30%-ը միայն) Պսկովի կրեմլի բերդապարիսպը։ Ավելի պակաս էին պահպանված Նինվեի պարիսպները, բայց և այնպես երկուսն էլ վերանորոգվել են ըսկզբնական ձևերին համապատասխանող ծավալներով։ Սակայն Նինվեի արտաքին պարիսպների վերակառուցումը ևս որոշ երկմտանք է առաջացնում, քանի որ այն չի պայմանավորված հնագիտական մնացորդների ինչ որ չափով անհրաժեշտ ապացույցներով։ Թերևս այս մոտեցումը կարող է ունենալ իր հիմքերը։

Այսպես, օրինակ, մեր պրակտիկայում ստեղծվեց համանման իրադրություն, երբ հարց բարձրացավ Էրեբունիի միջնաբերդի առանձին կառույցների պահպանության պրոբլեմը։ Այստեղ, միջնաբերդի մուտքի մոտ, պեղումներով հայտնաբերված արտաքին սյունազարդ շքամուտքից պահպանվել էին հազիվ նկատելի հետքեր միայն՝ պատերի, աստիճանների, ինչպես նաև որմնանկարների առանձին բեկորների ձևով, որոնց մոտակա կորուստը, նկատի ունենալով նրանց հողմնահարման ռեալ վտանգը, ակնհայտ էր։ Հետևաբար, տվյալ հուշարձանի նախնական ձևի պահպանության հարցը երկընտրանք չէր կարող առաջացնել։ Ելնելով տվյալ անհրաժեշտությունից, մենք ամբողջացրինք կառույցը, վերականգնելով այն իր նախնական ծավալատարածական ձևերով, ինչպես նաև որմնանկարների մանրամասներով։ Միայն այսպես կատարված լրիվ վերականգնումը փրկեց այս եզակի կառույցի ճարտարապետական կերպարը անվերապահ կորստից, քանի որ նրա հազիվ նշմարելի մնացորդների նույնիսկ կոնսերվացիան չէր կարող ապահովել նրա հետագա պահպանումը։ Համանման իրադրություն էր ստեղծվել Էրեբունիի նաև մի քանի այլ հուշարձաններում։ Ընդ որում հարկ չկա նշել, որ տվյալ վերականգնումները կատարվեցին մանրակրկիտ հետազոտություններից հետո միայն, հենվելով տեղում պահպանված փաստացի անվերապահ տվյալների վրա։ Բանն այն է, որ վերականգնումը, որպես այդպիսին, գիտահետազոտական մի բարդ տեխնիկական պրոցես է, ինչպես տվյալ կոնկրետ հուշարձանի ճարտարապետական ձևերի, այնպես էլ տվյալ դարաշրջանի ճարտարապետության բացահայտման գործում ընդհանրապես, միշտ մնալով, սակայն, ինքնուրույն բնագավառ իր յուրովի կանոններով հանդերձ։ Այսպիսով, որպես կանոն, հնագիտական կոթողների առավել մեծ մասում, բացառյալ այստեղ նշված նման արտակարգ դեպքերի, խոսքը կարող է վերաբերվել միայն կոնսերվացման աշխատանքներին։ Իսկ մասնավոր դեպքերում, հնագիտական կառույցներում հինավուրց ձևերի բոլոր արդիական վերականգնումները ոչ ոքի մոտ չեն կարող պուրիզմի հասկացողության առումով որևիցե տարակուսանք առաջացնել, եթե նրանցում դրսևորված է միակ նպատակը՝ կորստյան ենթակա խիստ եզակի վաղնջական ձևերի վերակենդանացումն ու պահպանումը։

Ի տարբերություն հուշարձանների ընդհանուր ճարտարապետական ձևերի, կամ նրանց առանձին բեկորների վերականգնման, կոնսերվացման աշխատանքներն իրենց կատարողական իմաստով ունեն ավելի սահմանափակ խնդիր, այն ըստ էության հուշարձանների քայքայված կոնստրուկտիվ տարրերի տեխնիկական ամրացումն է։

Կոնսերվացման գործի մյուս նպատակը հետագա հնարավոր քայքայումից հուշարձանների կանխումըն է, այլ կերպ ասած, պրոֆիլակտիկ միջոցառումների ձեռնարկումը։ Նման ձևով ու մեծ հաջողությամբ համաշխարհային պրակտիկայում վերանորոգվել են բազմաթիվ հուշարձաններ։

Հուշարձանների վերականգնման ընթացքում առանձնակի ուշադրություն է դարձվում դեկորատիվ հարդարանքներին՝ վարդյակներին, բարձրաքանդակներին, երեսապատումներին, պսակներին, քիվերին, ամենատարբեր տիպի գոտիներին, ինչպես նաև այլ զարդմոտիվներին։ Այստեղ հարկ է նշել, որ VII դարի ճարտարապետական հուշարձանների հզոր ու լակոնիկ պատերը կրում են համապատասխան զարդաքանդակներ, այն դեպքում, երբ X ու հետագա դարերում նոր զարդաքանդակները բնորոշվում են իրենց մանր պլաստիկայով ու նրբին ձևերով։ Ինչ վերաբերում է խաչքարերին, որոնց զարդաձևերի մշակումը հասել է իրար չկրկնող աննախընթաց հարստության ու նրբագեղության, նրանցում չեն կրկնվում նույնիսկ զուգակշիռ դասավորություն ունեցող զարդաձևերը։ Անտարակույս միանգամայն բացառվում է այդպիսի զարդաձևերի վերականգնման որևէ հնարավորություն։ Այս է պատճառը, որ նման դեպքում զարդաձևերի անհետացած հատվածները վերականգնվում են ճարտարապետական տարրերի ընդհանուր ծավալային ձևերով, պահպանելով միայն զարդաձևը կրող տարրերի հիմնական եզրաձևը։

Հուշարձանների վերականգնման ժամանակ զգալի դժվարություններ են առաջանում, մանավանդ այն դեպքերում, երբ անհայտ են վերանորոգվող հուշարձանի նախնական ընդհանուր ձևերը, ինչպես նաև նրա առանձին դրվագները։ Սխալներից ու հուշարձանի ճարտարապետական ձևերի խեղաթյուրումից զերծ մնալու համար նրման ձևերը ծածկվում են թիթեղով և այդ վիճակում թողնվում հետագա հետազոտությունների համար։

Այսպիսով կարելի է հաստատապես ասել, որ քայքայված հուշարձանների, ինչպես և նրանց մնացորդների պահպանման և ամրացման առավել ռացիոնալ մեթոդը նրանց կոնսերվացումն է, որի դեպքում միայն հնարավոր է ապահովել հուշարձանի անաղարտությունը, ամենափոքր չափերի հասցնելով վերականգնողների միջամտությունը և խուսափելով հին վարպետների ստեղծագործական մտահղացումների արգասիք հանդիսացող ճարտարապետական ձևերի խեղաթյուրումից։

**Կոնստրուկցիա:** Հավանաբար սխալված չենք լինի, եթե ասենք, որ ամեն մի հուշարձանի ճարտարապետական ձևի կատարելությունը նրա կոնստրուկտիվ մտքի տրամաբանվածության մեջ է։ Այդ կապակցությամբ ճարտարապետական օբյեկտի կոնստրուկցիան, որն անխզելի միասնության մեջ է նրա ձևի հետ, պետք է պահպանվի վերը նշված սկզբունքներից ելնելով։ Եվ որովհետև յուրաքանչյուր կոնստրուկցիա, ինչպես և ձև, ապրում է զարգացման իր փուլերը, արտահայտելով տարբեր դարաշրջանների շինարարական արվեստի մակարդակը, ապա այն պետք է վերանորոգվի ու վերականգնվի բացառապես իր իսկ ժամանակի տեխնիկական մտքի մակարդակին համապատասխան։ Այս առումով կարծում ենք, որ քայքայված առանձին կոնստրուկցիաների պահպանությունը պետք է ապահովվի ոչ թե նրա վերարտադրման եղանակով, այլ նրանց մնացորդներն է, որ պետք է ամրապնդվեն, մեր ժամանակակից շինանյութերի ու կոնստրուկտիվ հնարավորությունների օգնությամբ։ Դրանով է, որ կապահովվի հին վարպետների կոնստրուկտիվ մտքի արգասիք հանդիսացող շինարարական մնացորդների նախնական տեսքը։ Միևնույն ժամանակ, բոլոր այն մյուս դեպքերում, երբ վերականգնվում է սկզբնական կոնստրուկտիվ ձևը, նպատակահարմար է, որ այն կատարվի համապատասխան ժամանակակից տեխնոլոգիայով։ Խնդիրն այն է, որ յուրաքանչյուր հնամենի կոնստրուկտիվ համակարգի վերարտադրությունը նոր նյութով, մասնավորապես երկաթբետոնով, միևնույն ժամանակ պետք է պահպանի քարի հատուկ նախնական չափերը, այլապես կընկալվեն որպես կեղծիք։ Հասկանալի է, որ ելնելով ժամանակակից հաշվարկներից, նպատակահարմար չէ երկաթբետոնին կամ այլ շինանյութին տալ համապատասխան չափսեր, քանի որ դրանով իսկ կանհետանա անցյալ ժամանակի համար բնորոշ կոնստրուկտիվ համակարգը, նյութի իներտ ավելցուկներով հանդերձ, որը նրա կարևոր ավանդական ցուցանիշներից է։

Երբ կառույցի մեջ հանուն արտաքին հնամենի ձևի պահպանության, ի փոփոխություն նրա քայքայված մասերի, օգտագործվում են ժամանակակից կոնստրուկտիվ միջոցառումներ, հուշարձանը կորցնում է ձևի և կոնստրուկցիայի իր նախնական ճշմարտացի օրգանական միասնությունը։ Հայտնի է, որ դասական հայ ճարտարապետության մոնումենտալ կառույցներում ճարտարապետական ձևերի ու կոնստրուկցիաների փոխադարձ կապը միշտ էլ հիմնված է տեկտոնիկայի հստակ սկզբունքների վրա։

Այդ հավերժական օրենքների խախտումից խուսափելու համար, հարկ էր սկսել երկու հիմնական բաղադրիչների՝ ձևի ու կոնստրուկցիայի սևեռումից և ուսումնասիրությունից, քանի որ հուշարձաններում բոլոր կարգի վթարային վիճակները ստեղծվում են կառույցի ձևի ու կոնստրուկցիայի խզման ու քայքայման հետևանքով։

Կառույցների պատմական կյանքի ընթացքում, նրանց տեխնիկական վիճակի մեջ տեղի ունեցած քայքայման դարավոր երևույթները ցույց են տալիս, որ հուշարձանները աղետալի դրության հասցնող ամենախոցելի հանգամանքներից մեկը՝ ծածկի քայքայումն է։ Իրոք, եթե ուշադրությամբ զննենք անցյալի վերանորոգումները, ապա կնրկատենք հին վարպետների առանձնահատուկ ջանքերը ծածկերի վերանորոգման բնագավառում։ Որպես կանոն վերջիններս կատարվում էին ի հաշիվ լանջերի թեքությունների բարձրացման, ջրերի հոսքը հեշտացնելու նպատակով, որով նվազում էր նրանց ներթափանցումը որմածքի մեջ։ Այսպիսի ձևափոխություններն անցյալում առկա են համարյա բոլոր վերանորոգված հուշարձաններում։ Ի դեպ, ծածկերի թեքությունների մեծացումը լիովին համապատասխանում է հետագա դարերի ոճական նոր սկզբունքներին, այն է ճարտարապետական ձևերի վերսլացությանը։ Գուցե կիրառական նշանակություն ունեցող այս հանգամանքը ևս իր հերթին որոշ դեր է խաղացել ոճական նոր սկզբունքների զարգացման գործում, որի մասին խոսվեց վերևում։

Վաղ միջնադարյան հայկական հուշարձանները, և հատկապես մինչև VII դարը կառուցված շենքերը, սովորաբար ծածկվել են կղմինդրով։ Այդ տիպի ավանդույթներն ամենայն հավանականությամբ գալիս են ուրարտական ժամանակաշրջանից։ Հիշենք, օրինակ, Ուրարտական Մուսասիրի տաճարը, որը պատկերված է հայտնի բարձրաքանդակի վրա (գտնվել է պեղումների ընթացքում Ասորեստանի թագավոր Սարգոն 2-րդ-ի Դուռ-Շարրուկին քաղաքի պալատում) երկլանջ ծածկ ունեցող շենքի ձևով։ Միևնույն ժամանակ, Մենուախինիլի քաղաքի (Արարատի հյուսիսային լանջի ժամանակակից Տաշբուրուն գյուղը) պեղումների ժամանակ հայտնաբերվել են ծածկի կղմինդրներ, առանձին սալերի վրա բարձրացած կողերով ու նրանց վրա դրվող կիսագլանների ձևով, որոնք հաստատեցին ինչպես լանջավոր ծածկերի կիրառումը ուրարտական շենքերում, այնպես էլ կղմինդրի օգտագործումը։ Հավանաբար այստեղ առկա է կղմինդրե ծածկի հնագույն, իսկ գուցե նաև նախնական ձևի օրինակը Հայաստանում (Նկ. 19,1)։ Այս առումով ուշադրության արժանի է Մենուախինիլիի և Զվարթնոցի կըղմինդրների (Նկ. 19, 2) նմանությունը, թեև նրանց բաժանում է պատմական մեծ ժամանակաշրջան՝ շուրջ 1600 տարի։ Ավելի ուշ շրջանում, սկսած մոտավորապես IX դարից, կղմինդրներին փոխարինում են տուֆակերտ սալերը, որոնք ավելի հարմար էին կառուցողական տեսակետից, քանի որ չէին պահանջում կղմինդրների պատրաստման համար հատուկ արտադրություն։ Քարե սալերը պատրաստվում էին տեղում, ընդհանուր որմածքի հետ մեկտեղ և որ գլխավորն է նույն քարից, որից և կառուցվում էր տվյալ շենքը, հետևաբար պահպանվում էր նրանց միասնական արտահայտությունը։

Սկզբնական շրջանում քարե սալերը ունեին պարզ ձև՝ ամբողջապես հարթ էին ու հետագայում է միայն, որ նրանց կարանների գծում ստեղծվում են ատամնավոր ձևեր միացումների համար, որով զգալիորեն կանխվում են ջրերի ներթափանցումը։ Ծածկասալերի ավելի բարդ օրինակները ունեն ուղղանկյուն կամ կիսագլանաձև ելուններ, որոնք ընդհուպ փակում են կցված սալերի միջև եղած կարանները (Նկ 22)։

Այժմ, ծածկերը վերանորոգումից հետո, որպես կանոն, օծում են հիդրոֆոբ լուծույթով կամ օլիֆով, որոնք նրանց վրա առաջացնում են մեկուսիչ բարակ թաղանթ, հուսալիորեն ապահովելով ծածկի անջրանցիկությունը։ Նման միջոցառում ձեռնարկվում էր նաև հինավուրց անցյալում,

այն տարբերությամբ միայն, որ այն ժամանակ նույն նպատակի համար օգտագործվում էր եռացրած ձեթ։[1]

Տվյալ աշխատանքներից հետո ստեղծվում են բարենպաստ պայմաններ հուշարձանի մնացած մասերի ու նախ և առաջ որմածքի վերանորոգումների համար։ Վերջինիս շաղախը սովորաբար վերականգնվում է ներարկելու միջոցով, որի հետևանքով լրիվին վերականգնվում է որմածքի հոծ զանգվածը, կոնստրուկտիվ անհրաժեշտ ամրության սահմաններում։ Ի դեպ, ներարկումը հնարավոր է կիրառել միայն այն հորինվածքներում, որոնք չեն ենթարկվել այլաձևությունների, հակառակ դեպքում նրանց ամրացումից հետո, նախնական ձևի վերականգնումը, առանց հիմնովին քանդումների, բացառվում է։ Ներարկումը, ամենայն իրավամբ, կոնսերվացման արդյունավետ միջոցառումներից է, որն հուսալիորեն ամրացնում է հորինվածքը և միաժամանակ բացառում որևէ խաթարում կառուցվածքի ճարտարապետական ձևերում։ Անհամեմատ ավելի բարդ է ներարկման միջոցով միակտոր քարից կազմված հորինվածքների վերանորոգումը (կամար, սյուն և այլն)։ Միակ ելքը, եթե հնարավոր չէ դրանք ամրացնել ներարկման միջոցով, մնում է վերաշարը, որի պահանջը հուշարձանների վերականգնման աշխատանքների ընթացքում ավելի հաճախ է զգացվում, հատկապես, ձևախեղված հորինվածքների ուղղման ժամանակ։

Եվ այսպես, կարող ենք լիակատար համոզմունքով ասել, որ կոնսերվացման լավագույն միջոցառումներից մեկը ներարկումն է, որը ըստ էության գրեթե չի միջամտում հուշարձանների նախաստեղծ տեսքին և միևնույն ժամանակ հուսալիորեն ամրապնդում է շարվածքի առկա վիճակը, թե ներքուստ և թե արտաքուստ։

Փորձը ցույց է տվել, որ առանձին դեպքերում տեղաշարժված պատերի, սյուների և կոնստրուկտիվ որոշ տարրերի նախնական դիրքի բերելը հնարավոր է նաև մեխանիկական ուժի գործադրումով, առանց նրանց վերաշարի, հզոր ամբարձիչների կամ նույնիսկ սովորական լծակների միջոցով։ Առաջին անգամ նման փորձը հաջողությամբ կատարվեց Հաղբատի ճարտարապետական համալիրի հուշարձանների կոնսերվացման ժամանակ, 1956 թվականին, երբ ուղղվեց ս. Նշան եկեղեցու արևելյան բաց սյունասրահի կենտրոնական, բավականին ծանրաբեռնված, սյան թեքվածությունը (Նկ. 30)։ Նախատեսված է, այդ նույն ձևով, իր նախնական դիրքին բերել մի շարք թեքված պատեր։ Վերջիններս, անշուշտ, խիստ կտուժեն վերաշարի դեպքում, քանի որ դարեր շարունակ կանգուն մնալով հողմահարվել ու ստացել են արտաքուստ աննկատ բազմաթիվ մազանման ճեղքեր։ Վերաշարի դեպքում ոչ միշտ է հնարավոր դրանք վերականգնել նախնական ձևով։

Նորոգման աշխատանքներին զուգընթաց առանձնակի ուշադրություն է դարձվում հուշարձանները այլանդակող (հետագայում կատարված) սվաղների վերացման գործին։ Վերջին տարիների ընթացքում մաքրվել են ներքին պատերն այլանդակող ուշ շրջանում արված նման սվաղի շերտերը։ Այս գործում, որպես առաջին փորձ, կիրառվեց պատերի ավազաշիթային մաքրման եղանակը, որը գոհացուցիչ արդյունք տվեց Հռիփսիմե տաճարի մաքրման ժամանակ։ Հաստատվեց, որ ավազաշիթային գործիքը վնաս չհասցնելով որմածքին, կարող է լայնորեն օգտագործվել հուշարձանների մաքրման գործում։ Ավազաշիթային այս մեթոդը դեռ 1946—50 թվականներին դրական արդյունքով կիրառվեց Մոսկվայի Կրեմլի վերանորոգման ժամանակ, երբ նստվածքային դարավոր շերտերից մաքրվեցին նրա արտաքին պարիսպների ու աշտարակների մակերեսները, որից հետո վերջիններս ներկվեցին իրենց նախնական կարմիր գույնով։ Սակայն այս մեթոդը, այսուհանդերձ, ընդունելի է որոշ վերապահումներով, քանի որ քայքայվող, փափուկ, մանավանդ փխրուն տուֆաքարերի դեպքում մեքենայից դուրս ժայթքող ավազը ընդունակ է վերացնել նման քարի մակերեսային շերտը, որը սովորաբար ծածկված է լինում ժամանակի փառով կամ հինավուրց վարպետների ձեռքով դրոշմված հնագիտական այլ նշաններով, որոնց անհետացումը զրկում է հուշարձանը վաղնջականության իր նշաններից։

[1] Ծածկերի մասին տես՝ Յու. Ա. Թամանյան, Պատմական հուշարձանների տանիքների վերանորոգման հարցի շուրջը, Հայկ. ՍՍՀ ԳԱ, Լրաբեր հասարակական գիտությունների 1969—6, էջ 76—82։

Ինչպես ցույց տվեց փարիզյան փորձը, նույն նպատակի համար, ավազից բացի կարելի է օգտագործել նաև սովորական ջուրը։ Ուժեղ ճնշման տակ դուրս թռչող նրա շիթերը ոչ պակաս հաջողությամբ են մաքրում հուշարձանը նստվածքային նույնիսկ շատ կարծրացած դարավոր շերտերից։ Մի քանի տարի առաջ, օրինակ, ջրի ճնշման տրվյալ եղանակով գերազանցապես մաքրվեց Փարիզի Աստվածամոր հռչակավոր տաճարը և ստացավ սպասածից ավելի սպիտակավուն երանգ։ Հավանաբար ջուրը որոշ հանգամանքներում ունենում է նաև իր դրական ներգործությունը հուշարձանների պահպանության գործի մեջ։ Այսպես, Նեղոսի ջրերով պարբերաբար ծածկվող Եգիպտոսի Ֆիլե կղզու հանրահայտ հուշարձանները թեև ինչ-որ չափով տուժում են դրանից, սակայն մյուս կողմից, ինչպես դա նկատվել է, մաքրում են քարը քայքայող նրա վրա կուտակվող աղային շերտերից։

Շինանյութ.— Պատմական հայ ճարտարապետության կոթողների հիմնական շինանյութը, ինչպես արդեն ասվեց, քարն է՝ տուֆը, ֆելզիտը, բազալտը, որոնք այլ շինանյութերի հետ մեկտեղ կոնստրուկցիայի ու ճարտարապետական ձևի կազմավորման ֆունկցիա են կրում։ Անցյալի վարպետները գերազանցությամբ էին ընկալել քարի որպես շինանյութի յուրահատկությունները և նրանցից բխող կոնստրուկտիվ լուծումների հնարավորությունները, ինչպես նաև ճարտարապետական ձևերի ստեղծման ունակությունները։ Կրաշաղախի հետ միասնական ձևով հանդես գալով՝ քարը իր ֆիզիկամեխանիկական հատկություններով հանդերձ, տվյալ որմածքի տեկտոնիկ արտահայտության հիմքն է։ Իսկ կրաշաղախը նույն որմածքի կոնստրուկտիվ կմախքն է, կառույցի համաձույլ միջուկը, որը մեծապես ազդում է նրա ծավալատարածական հորինվածքի ստեղծման վրա։

Շաղախի ամրության պոտենցիալ ունակությունների արտակարգ դրսևորումը կոնստրուկցիաներում տեսնում ենք Հայրավանքի գավթի ծածկի մասում։ Այստեղ շաղախից կառուցված թեք լանջերը ներքուստ ունեն առաստաղի աստիճանաձև կտրվածք, իսկ նրանից ցած, մինչև թաղերը ստեղծված տարածությունը դատարկ է և այն չունի իներտ նյութի, կամ մեծ կարասների ավանդական կոնստրուկտիվ միջոցառումը[1]։ Նման վիճակով միայն շաղախից կառուցված այդ թեք լանջերը կանգուն են դարեր շարունակ, հուսալիորեն կրելով քարե ծածկասալերը, սեփական, ինչպես նաև ժամանակավոր բեռը։

Շատ ամուր շաղախը հայտնի է նաև Շոռոթում (պատմական Երնջակի գավառ այժմյան Ջուլֆայի շրջանում)։ Այստեղ գյուղի «... դաշտերի մեծ մասը սպիտակագույն են, դա աղանյութի գերակշռող բաղադրությունից է, որի բարակ շերտերը պատել են ամենուր, հողը զրկել բնական գույնից։ «Շոռ ձոր» կամ «Հաղլաղուզ» անվանվող վայրի կավանյութը դարեր ի վեր շոռոթեցիների համար ծառայել է որպես հրաշալի շինանյութ, որի հունցվածքը դիմացկուն է և ունի ամուր շաղախ՝ քարեղեն տների, ջրատար խողովակների համար»[2]։

Տարբեր քարատեսակներից լայնորեն օգտագործվել է նաև պեմզան, որը անցյալում, ինչպես նաև հիմա[3] համարվել է սեյսմակայուն շինարարության առավել հարմարավետ շինանյութ։ Պեմզան, օրինակ, այդ նպատակի համար օգտագործվել է Զվարթնոցի ծածկերի զանգվածներում, ինչը զգալիորեն թեթևացրել է շենքի ընդհանուր քաշը։ Մյուս շինանյութերից՝ աղյուսը, փայտը, երկաթը պատմական հայ ճարտարապետության հուշարձաններում օգտագործվել են աննշան չափերով ու հազվադեպ։ Մոնումենտալ շինարարության մեջ եզակի հուշարձաններ են հայտնի, որոնք աղյուսից են կառուցված (Կիրանց վանքի հուշարձանախումբը, Սրվեղի վանքը, Շաքրի վանքը, Նախիջևանի մոտ գտնվող Կարմիր կամ Աստապատի վանքը և մյուսները)։ Աղյուսը օգտագործվում էր նաև բնակելի շենքերի ու արտադրական կառույցների համար։ Սրանցում հայ վարպետները միաչափ աղյուսից կարողացան ճակատային հարթություններում ստեղծել տարբեր երկրաչափական հորինվածքներ, որոնք կա-

[1] Տվյալ կոնստրուկցիան հայտնաբերել է ճարտ. Վ. Խաչատրյանը։

2 Արգամ Այվազյան, Շոռոթի և Գաղի եկեղեցական ճարտարապետական հուշարձանները։ Էջմիածին, 1977 թ. ի. էջ 46—47։

3 Վ. Ստեփանյան, Երկրաշարժերը Հայկական լեռնաշխարհում և նրա մերձակայքում, «Հայաստան» հրատ. Երևան, 1964 թ. էջ 18։

*րող են դասվել բազմաձև զարդաքանդակների շարքը։ Աղյուսի որպես շինանյութի օգտագործման ավանդույթները կապված են խոր անցյալի հետ ու հայտնի ուրարտական ժամանակաշրջանից էլ առաջ, քանի որ աղյուսը կատարելապես օգտագործվել է դեռ Շենգավիթի հինավուրց կառույցներում։*

*Սահմանափակ էր նաև փայտի գործածությունը մոնումենտալ շենքերում։ Սակայն նրանց առանձին բեկորները հաստատում են, որ փայտի մշակման վարպետությունը այդ կառույցներում կանգնած էր արտակարգ բարձրության վրա։ Մեզ հասած այդ եզակի օրինակներից են իրենց բարձրարվեստ վարպետությամբ կատարված Մշո ու Սևանի հուշարձանների քանդակազարդված դռները, Սևանի հոյակերտ խոյակները, ժողովրդական ճարտարապետության կառույցները, հատկապես նրանց ծածկերը։*

*Վերջին տարիների ընթացքում հուշարձանների վերականգնման գործում կիրառվում է նաև էպոքսիդալ սոսինձը։ Տարբեր հուշարձանների վրա այդ նյութի կիրառման առաջին իսկ փորձերը համոզում են, որ վերանորոգման գործում այն ունի պոտենցիալ մեծ հնարավորություններ, քանի որ մեծ է նրա կապակցող ուժը։ Նույնիսկ բազալտի ծանրակշիռ բեկորները, ինչպես ցույց տվեցին Գառնիի տաճարի վերականգնման աշխատանքները, կպչում են ապահովապես։ Հավանաբար այդ սոսինձը կգտնի իր կիրառման նոր ձևերը, հատկապես կոնսերվացման աշխատանքներում, օգտագործվելով որպես ներարկվող նյութ կոնստրուկցիաների նրբին հատվածները խորության մեջ կապակցելու համար։*

*Հուշարձանների վերանորոգման ժամանակ ծառանում է մի կարևոր հարց ևս՝ դա որմածքի մեջ օգտագործված նոր շինանյութի տարբերանշումն է հնից։ Տասնյակ տարիներ առաջ ամենուրեք ընդունված էր, որ հուշարձանում օգտագործված ամեն մի նոր շինանյութ, մասնավորապես քարը, թե գույնով, թե ֆակտուրայով և թե ձևով տարբերվի նախկինից։ Այլ խոսքով, ամեն ինչ պետք է կատարվեր նրանց հակադիր զուգորդությունը արտահայտելու համար։ Նման լուծումների առավելապես հանդիպում ենք Իտալիայի և Հունաստանի վերականգնողական աշխատանքներում, նույնը տեսնում ենք նաև Եգիպտոսի որոշ հուշարձաններում (Կառնակի և Լուկսորի տաճարներում)։ Այս սկզբունքը արժանի է ուշադրության, քանի որ նրանում ակնհայտ է հուշարձանների մնացորդների նկատմամբ ունեցած որոշակի վերաբերմունքը։ Այս կապակցությամբ հետաքրքրական է դարերի խորքից եկած մի օրինակ։ Դեռևս 1001 թվականին, համաձայն Օղուզլու հուշարձանի վրա թողնված արձանագրության, կատարվեց վերանորոգում, վերանորոգողը հուշարձանի հարավ-արևելյան պատը շարել էր տարբեր գույնի քարերի իրար հաջորդող հերթականությամբ։ Միտումնավոր կատարված վերանորոգման այդ ձևը շատ որոշակի ու տեսանելի դարձրեց տարբեր դարերի որմածքները։ Այդ յուրովի վերանորոգումը ժամանակին չվրիպեց նաև Ի. Ստրժիգովսկու ուշադրությունից, որը նշում էր նրա առավելությունները և պատմական կարևորությունը, որպես վերանորոգման գործի մի ցայտուն սկզբունք (Նկ. 29)։*

*Նշենք, նաև, որ ժամանակի ընթացքում տվյալ պրոբլեմը, այն է՝ նոր շինանյութի տարբերակումը ստացավ մի այլ լուծում ևս, որի մասին, որպես ընդունելի մեթոդի մասին նույնպես խոսվեց վենետիկյան համաժողովում։ Վերջինս ընդունելի համարեց հուշարձանների կոնսերվացման, վերանորոգման աշխատանքները կատարել նույն շինանյութով և նույն հնամենի շինարարական տեխնիկայով, որոնցով ժամանակին կառուցվել են հուշարձանները։ Դրանով ավելի ակնհայտ են դառնում բուն հուշարձանի ճարտարապետական կառուցողական և շինարարական առանձնահատկությունները, ինչը համապատասխանաբար ապահովում է նրանում հնի ու նորի ներդաշնակ միասնությունը։ Այս սկզբունքի կիրառումը միևնույն ժամանակ պահանջում է, որ ամեն մի նոր տարր իր նշանագիրն ստանար թեկուզ հազիվ նշմարելի ձևերով, բայց և այնպես որոշակի կերպով տարբերելու համար հին որմածքը լրացնող մասերից։*

*Առանձին դեպքերում անհրաժեշտ է լինում դիմել նաև թանգարանային ցուցադրման եղանակին, բացելով տեսանելի տարածություններ դեպի պահպանվող հինավուրց հատվածները։ Այդ ձևով էջմիածնի և Հռիփսիմեի տաճարների հատակի մակարդակից ցած գտնվող հինավուրց*

խարիսխների ցուցադրման համար թողնված են ապակեպատ պատուհաններ։

**Ճարտարապետական հուշարձանների միջավայրը.**— Ճարտարապետական հուշարձանների ձևերի բացահայտման գործին այժմ ներկայացվում են անհամեմատ ավելի մեծ պահանջներ։ Անհրաժեշտ է բացահայտել ոչ միայն տվյալ հուշարձանը, այլև պարզորոշ նշանավորել պատմաճարտարապետական, տարածական այն միջավայրը, որի մի մասն է կառույցը։ Այս կապակցությամբ ներկայումս վերանորոգման աշխատանքները զուգակցված են նաև շրջապատի բարեկարգման հետ, որպեսզի հուշարձանի ընկալման համար հնարավորին չափ վերարտադրվի նրա սկզբնական պատմական միջավայրը։ Անցյալում հուշարձանները ստեղծվել են որոշակի ու կոնկրետ շրջապատի պայմաններում, և նրանց ճարտարապետական ձևերի կազմավորման հարցում առաջնակարգ նշանակություն են ունեցել ինչպես տեղանքը, այնպես էլ ճարտարապետական միջավայրը։ Սակայն, դրա հետ մեկտեղ, դարերի ընթացքում, պատմական կյանքի զանազան պահանջների բերումով, շատ հուշարձանների շրջապատը անընդմեջ կառուցապատվել է, իսկ շատ հաճախ այդ կառուցապատումները կատարվել են նաև տարերայնորեն, երբեմն էլ հագեցվել են գեղարվեստական ու պատմական արժեքից զուրկ շենքերով։ Դրանց վերացումը կամ ձևափոխումը սերտորեն առնչվում է հուշարձանների համար պատմական միջավայրի վերարտադրման գաղափարի հետ։

Քաղաքները աստիճանական զարգացման ընթացքում պարբերաբար ենթարկվում են ծավալատարածական վերակառուցման, մշտապես արտահայտելով ինչպես անցյալի, այնպես էլ արդի ճարտարապետության իմաստն ու հնարավորությունները։ Ընդ որում, վեր խոյանալով հինավուրց հուշարձանների շրջապատում, նոր կառույցները, որպես կանոն, նրանց գերազանցում են իրենց ծավալներով։

Քաղաքներում արդի ճարտարապետության կառուցվածքների իշխող դերը օրինաչափ է, սակայն նրանց հետ համատեղ քաղաքաշինական ակտիվ բաղադրիչի վիճակում են նաև պատմական հուշարձանները, թեկուզ որպես ավանդական սովորություն, շրջապատի ծավալատարածական հեռանկարի ընկալման տեսակետից։ Այս դեպքում, սակայն, չլուծված է մնում հուշարձանների ու արդի կառուցվածքների զուգորդումը քաղաքների տարածական հորինվածքներում։ Դեռևս 1972 թվականին Բուդապեշտի իր նստաշրջանում ԻԿՈՄՈՍԸ հատուկ զբաղվեց «Արդի ճարտարապետությունը հնամենի համալիրներում» պրոբլեմով։ Այն քննարկվեց տեսական մտքի ամենաբարձր մակարդակի վրա, որպես համաշխարհային ժամանակակից ճարտարապետության կարևոր ու առաջնակարգ խնդիրներից մեկը։ Բանն այն է, որ քաղաքի անսամբլային նոր հորինվածքի հետ հուշարձանի օրգանական կապը բարդ պրոբլեմ է։ Այդ դեռ արձանագրված է նաև 1964 թվականի վենետիկյան կոնվենցիայում։ Այս պատճառով Ֆրանսիայում օրենքն արգելում է հուշարձանի շրջակայքում (500 մետր տրամագծով) որևէ հարևան շենքի ճարտարապետական ձևափոխումը։ Իսկ Չեխոսլովակիայում, մասնավորապես Պրագայում, ամեն մի կոնկրետ հուշարձանի վերականգնումը պայմանավորվում է տվյալ ճարտարապետական միջավայրի հարակից փողոցների ու հրապարակների կառուցապատմանը համապատասխան[1]: Սակայն դա չի նշանակում պատմաճարտարապետական միջավայրի լիակատար պահպանություն նոր կառուցապատման մեջ, ինչպես նաև նոր ճարտարապետական ձևերի ներթափանցման անհնարինությունը։ Մեզ թվում է, որ խնդրի լուծումը կատեգորիկ չպետք է դրվի։ Այստեղ պետք է նկատի առնվի կառուցապատման այնպիսի արգելափակիչ գոտի, որում հինը և նորը զուգորդվեն ներդաշնակ կամ թերևս հակադրամիասնությամբ։ Այլ կերպ ասած հնամենի հուշարձանները չպետք է ներկայանան ինքնամփոփ, սոսկ որպես թանգարանային անձեռնմխելի նմուշներ։ Նման ըմբռնումը խարխուլ է ու անիմաստ։ Արդի կառուցապատման և հինավուրց հուշարձանների ներդաշնակությունը կարող է և պետք է ստեղծի գեղարվեստական նոր լուծումներ և, հետևապես, գեղարվեստական նոր արժեքներ։ Քանի որ, ինչպես ամեն մի կառուցվածք, այնպես էլ ամեն մի հուշարձան, նրանում քաղաքաշինական կամ քաղաքների կազմավորման նշանակալից բաղադրիչ է։ Այս տե-

[1] Памятники архитектуры служат новым поколениям. Архитектура СССР 1/1977 г.

սակետից ճարտարապետական գեղարվեստական ինքնուրույնությունը կամ մեկուսացումը հուշարձանին զրկում է միջավայրի զարկերակից, որով պայմանավորված է նրա գոյությունը, նրա պատմական իմաստը։ Այս պրոբլեմը իր մի այլ արտահայտությամբ սերտորեն կապված է հուշարձանների շրջակա արգելափակիչ գոտիների ստեղծման հետ, որն ինքնին մի բազմակողմանի միջոցառում է։ Բնության գրկում մեկուսի կանգնած հուշարձանի դեպքում դա մի առանձին դժվարություն չի ներկայացնում։ Հարցը խիստ բարդանում է քաղաքային կառուցապատումներին առնչվելիս, հատկապես այնպիսի պայմաններում, երբ ժամանակակից քաղաքները իրենց զարգացող ճարտարապետական ծավալներով օրեցօր նորանոր տարածություններ են գրավում՝ հորիզոնական և ուղղահայաց գծերով։

Արդի կառուցապատման ու հինավուրց հուշարձանի ներդաշնակ միասնության հաջողված օրինակ է Էրեբունի համալիրի տարածքը՝ նրա թանգարանային շենքի դասավորությունը մայրուղու առանցքի կանաչապատված բլրի լանջին, պարկային տարրերից ու աստիճանային անցումներից, ինչպես նաև բլրի գագաթին հառնած հինավուրց միջնաբերդի շենքերի մնացորդների միասնական ընկալումը։

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ճարտարապետական հուշարձանների վերականգնման նախագծերը կազմելիս մշտապես պետք է հաշվի առնվեն համաչափական օրինաչափությունները, որոնք առանձին դեպքերում կարող են օժանդակել մի շարք հարցերի լուծման։ Հենվելով այդ օրինաչափությունների վրա՝ կարելի է կռահել կիսակործան հուշարձանի նախնական հորինվածքը կամ նրա առանձին հատվածը։ Բանն այն է, որ համաչափական օրենքների վրա հենված վերականգնման նախագիծը, ի տարբերություն երկմտանք առաջացնող ինտուիտիվ վարկածների, շատ ավելի հավաստի է ու հիմնավոր։

Մեր հետազոտությունները ցույց են տվել, որ հայկական պատմական հուշարձաններում հանդիպող համաչափ համակարգերը հնագույն ժամանակներից եկող ավանդույթներ ունեն, և սերտորեն առնչվում են մասնավորապես ուրարտական ճարտարապետության մեջ ընդհանրացած օրինաչափություններին։ Խնդիրը հենց այն է, որ ճարտարապետական համաչափությունները ոչ թե բնորոշ են քննարկվող հուշարձանին, որպես նրա մասնավոր հատկանիշը միայն, այլ նրանով կարելի է որոշել կառույցի պատկանելությունը համապատասխան դարաշրջանին։

Տվյալ հետազոտությունների պրակտիկ արդյունքները նախ և առաջ հայտնաբերել են ուրարտական գծային չափերը։ Պարզվել է, որ Ուրարտուում կիրառվել է երեք տիպի կանգուն՝ 47,4 սմ, 51,8 սմ, 52,5 սմ: Պարզվել է նաև, որ 52,5 սմ կանգունը ընկած է ուրարտական շատ կառույցների համաչափությունների հիմքում[1]: Ուշագրավ է այն հանգամանքը, որ հիշյալ կանգուններից երկուսը՝ 51,8 և 47,4-ը կիրառվել են երկար ժամանակ, քանի որ նրանք հայտնաբերվել են նաև պատմական հայ ճարտարապետության հուշարձանների չափումներում։ Օրինակ 51,8 կանգունը առկա է Գառնիի հեթանոսական տաճարի, Էջմիածնի մայր տաճարի և Քասաղի բազիլիկայի չափագրությունների հիմքում, 47,4 կանգունը՝ Աշտարակի ծիրանավոր կոչվող եկեղեցում[2]:

Գծային չափերի հայտնաբերումը մեծապես օժանդակեց ուրարտական ճարտարապետական հուշարձանների համաչափությունների բացահայտմանը։ Մենք հայտնաբերեցինք, որ վերջինները հիմնականում խարսխված են 5×8 հարաբերության վրա, որի ամեն մի մասը ծառայում է որպես մոդուլ։

---

[1] **К. Л. Оганесян** — Кармир-Блур. IV Архитектура Тейшебаини. Изд. А. Н. Армянская ССР, 1955 г.

2 Ա. Ա. Սահինյան, *«Էջմիածնի Մայր տաճարի սկզբնական տեսքը», Պատմաբանասիրական հանդես, 1966, № 3, (34) էջ 89։*

Ուրարտական ճարտարապետության մեջ 5×8 համաչափությունների վրա կառուցված են՝ շենքերի հատակագծերը, նրանց ճակատները, առանձին դրվագները, ինչպես նաև որմնանկարների հորինվածքները, ընդհուպ մինչև նրանց մանրամասնությունները։ Այսպես, օրինակ, Էրեբունիի Խալդիի աստծո տաճարի սյունասրահի ճակատի լայնությունը ամբողջ տաճարի ճակատի լայնության համեմատությամբ 5×8 է։

Սյունասրահի լայնությունը՝

32,9:5=6,58 մ

ճակատի լայնությունը՝

52,60:8=6,59 մ

Ընդ որում մոդուլը, որը 6,58 մետր է, 14 անգամ կրկնապատիկ է կանգունի նկատմամբ՝

0,474.14=6,63 մետր

Էրեբունիի Սուսի տաճարի ներքին տարածությունը՝

5,05×8,08 մ է, որը նույնպես հիմնված է 5×8 համաչափության վրա։ Կանգունը այստեղ հավասար է 50,5 սմ։

Անդրադառնալով կառույցների ճակատներին, կարող ենք բերել այսպես կոչված Արշրուտի դռան օրինակը, որը գտնվում է Վան և Ուրմիա լճերի միջև ընկած Սալխանե գյուղում։ Դռան չափերն են՝ լայնությունը՝ 2,61, բարձրությունը՝ 4,10 մետր։

2,61:5=0,522 մ

4,10:8=0,512 մ

Նման համաչափություններով են բնորոշվում նաև Թեյշեբաինի հուշարձանների մի շարք դրրվագներ։

5×8 հարաբերությունը լայնորեն կիրառվել է նաև Գառնիի տաճարի հատակագծային հորինվածքում։ Այսպես, այն հանդես է գալիս ներքին տարածության լայնության և երկարության չափերի հարաբերությունում, ներքին տարածության լայնության և գլխավոր ճակատի սյունասրահի երկարության հարաբերությունում, պոդիումի հատակագծային կառուցվածքում և այլն։

Ուրարտական և հայկական ճարտարապետության համաչափությունները հաստատում են, որ դրանք ըստ էության համանման են, թեև հիմնրված են տարբեր թվային հարաբերությունների վրա։ Այսպես, հայկական ճարտարապետության մեջ առավելապես տարածված է 7×11 հարաբերությունը։ Բազմաթիվ են այդ համաչափության օրինակները ուղղանկյուն հատակագծային լուծում ունեցող կառույցներում (Անիի Աստվածամոր տաճար, Կեչառիսի ս. Նշան եկեղեցի և այլն)։ Տվյալ համաչափությունը առկա է նաև քառակուսու, շրջանագծի և դրանց հարակցություններում։ Ընդ որում մոդուլը ստանալու համար դրանք պետք է բաժանվեն 7-ի կամ 11-ի։ Ճարտարապետական համաչափությունները դրսևորվում են ոչ միայն կառուցվածքների հատակագծային հորինվածքներում, այլև առանձին հատվածներում և մանրամասներում, ինչպես օրինակ՝ շքամուտքի, լուսամուտի, քիվի ձևերում և այլն։

5×8 և 7×11 ճարտարապետական համաչափությունները ընդհուպ մոտենում են այսպես կոչված «ոսկե հատման» համաչափությանը, այն տարբերությամբ միայն, որ «ոսկե հատումը» պայմանավորված է առանձին երկրաչափական հատվածների հարաբերությամբ և չի դրսևորվում գծային չափերով, որոնց հիման վրա էլ հենց խարսխվում են 5×8 և 7×11 համաչափությունները։

Այլ հետազոտություններում առաջ է քաշվում պատմական հայ ճարտարապետության կառույցներում համաչափությունների առկայության և մոդուլային համակարգով արտահայտված ճարտարապետական ձևերի փոխպայմանավորվածության խնդիրը։ Դրանցում հեղինակը ընդունում է, որ միանավ բազիլիկ կառուցվածքներում այդ մոդուլը արտահայտում է նաև թաղակիր որմնամույթի լայնությունը։ Իսկ կենտրոնագմբեթ կառույցներում մոդուլը արտահայտում է գմբեթի հիմքի շառավիղը։ Ինչպես տեսնում ենք, այս սկզբունքը դրսևորում է ճարտարապետական կառույցների համաչափությունների մի այլ մոտեցում, որի հիման վրա հեղինակը մի շարք հուշարձանների ճարտարապետական ձևերի համաչափությունների վերարտադրության նոր փորձեր է անում։[1]

XI դարից սկսած Հայաստանի ճարտարապետական հուշարձանների ընդհանուր ձևերում առաջ են գալիս նոր համաչափություններ, որոնք որ-

[1] Ա. Ա. Սահինյան, Քասախի բազիլիկայի ճարտարապետությունը, Երևան, 1955, էջ 184։

պես հուշարձանների դարաշրջանային կարևոր հատկություններ, միշտ էլ հաշվի պետք է առնվեն վերանորոգման գործում։

Ճարտարապետական ձևերի այդ համաչափությունները ընդհանուր առմամբ բնորոշվում են իրենց վերսլացությամբ, իսկ մասնավոր դեպքերում նկատվում է հետևյալը.

— Հուշարձանների հարթակները եզրագծող աստիճանները մոտենալով կառույցին՝ ելուստներում պատերի հետ ձուլվելու չափ փոքրանում են։

— Պաշտամունքային շենքերի ճակատների համաձույլ կիսասյուները թռիչքներում (դեկորատիվ կամարներում) աստիճանաբար նեղանում են ու ձգվում դեպի վեր։

— Կիսակամարները, ինչպես նաև պայտաձև կամարները, փոխարինվում են երկկենտրոն սլաքաձև կամարներով։

— Սյուները, ինչպես նաև մույթերը հաճախ ուղղահայաց ջլատվում են, ստեղծելով սյունախուրցերի վերսլաց շարժում։

— Շքամուտքերը իրենց սյուներով ու համապատասխան կամարներով կրկնում են ներքին տարածության ձևերի լեյտմոտիվը։

— Լայն պատուհանները նեղանալով ընդունում են ձգված ճեղքի ձև։

— Երկթեք ծածկի լանջագոտիով սահմանագծված ճակատները ընդունում են վերսլաց ձև։

— Գմբեթային համակարգի թմբուկն ու վեղարը վերսլաց ձև են ստանում։

— Շենքերի քիվերի ելուստները փոքրանալով մոտենում են պատերի հարթություններին։

Այսպիսով ճարտարապետական ձևերը իրենց ընդհանուր արտահայտությամբ բնորոշվում են ծավալների վերսլաց շարժումով (գծ. 17—18)։

Այստեղ շարադրված համաչափությունների արժեքը ճարտարապետական պրակտիկ աշխատանքներում ակնհայտ է, քանի որ էմպիրիկ մոտահղացումներով ստեղծված տվյալ համակարգը, ի վերջո, հանգում է ճարտարապետական կուռ տեսության, որը մեծապես օժանդակում է ավերված հուշարձանների նախնական ձևերի վերարտադրման գործին։ Տվյալ համաչափությունները բացահայտում են հին վարպետների նախագծման կանոնները, որոնցով ստեղծվել են նշված, այժմ վերծանելի, նախնական ճարտարապետական ձևերը։

Հուշարձանների պահպանության վերանորոգման պրակտիկան իր նախնական արտահայտությամբ ամենուր լինելով փորձի անընդմեջ կիրառման ընթացք, ի վերջո հանգում է այնպիսի օրինաչափությունների ստեղծման, որոնք նրա համար դառնում են հաստատուն օրենքներ։ Սկզբնական շրջանում այն մնում էր փորձնական որոնումների սահմանում, ուր հաճախ շրջանցվում էին չհարթված ուղիները։ Վերանորոգման աշխատանքների պրակտիկան անընդմեջ ու կարծես ինքնաբերաբար ուղեկցվում էր փորձարարական հետազոտություններով։ Այդպիսի մի բարդ ուղի անցավ վերանորոգման գործը Հայաստանում, իր մեջ առնելով հուշարձանների թե՛ քանակական աճի և թե՛ որակական արտահայտության բարձր մակարդակի ցուցանիշներ։

Ճարտարապետական հուշարձանների պահպանության գործում առավել նշանակալից են նրանց վերանորոգման, վերականգնման ու բարեկարգման աշխատանքները, որոնց մասին խոսվեց նախորդ բաժնում։ Այդ աշխատանքների նպատակն է ամրացնել հուշարձանները այն անհրաժեշտ սահմաններում, որոնք ապահովում են դրանց երկարատև կայունությունը, զերծ պահում հետագա խարխլումից ու ավերումից։ Այդ աշխատանքները կատարվում են պարբերաբար, ամեն տարի և անցած 50 տարիների ընթացքում հիմնովին ու մասնակի կերպով վերանորոգված է շուրջ 300 համալիր և առանձին կոթողներ։ Հուշարձանների վերանորոգումը վաղուց արդեն համարվում է նրանց պահպանման լավագույն ու փորձված միջոցը։

Հուշարձանների վերանորոգումը կատարվում է վարչության հատուկ գիտավերանորոգման արտադրական արվեստանոցի միջոցով, գիտական բոլոր պահանջների համաձայն, և այդ կապակցությամբ վարչությանը կից գործում է գիտական խորհուրդ՝ կազմված հանրապետությանականավոր հնագետներից, պատմաբաններից, հնագետ-ճարտարապետներից, արվեստագետներից ու կոնստրուկտորներից։ Հուշարձանների վերանորոգումը կատարվում է ըստ համապատասխան նախագծերի, որոնք նախապես քննարկվում են գիտական խորհրդում, հաճախ տեղերում, հուշարձանների մոտ։ Հարկ է նշել, որ վերանորոգվող հուշարձանների համար կատարվող որևիցե նախագիծ չի կարող վերջնական համարվել։ Վերանորոգման ընթացքը, երբ բացվում են հուշարձանի կոնստրուկտիվ տարրերը, անակնկալից զերծ չէ և այդ դեպքում պահանջվում են լրացուցիչ հետազոտություններ, նախագծի առանձին հատվածների նոր լուծումներ, ընդհուպ մինչև նախագծի նոր լուսաբանում։ Այս առումով, գոյություն ունեցող կարգի համաձայն, վերանորոգվող հուշարձանի նախագծի ստեղծումը հաճախ տևում է մինչև վերանորոգման ընթացքի ավարտը։

Հուշարձանների վերանորոգման և բարեկարգման գործը Հայաստանում բուռն թափով սկսեց զարգանալ հատկապես վերջին տասնամյակում և այդ առումով այն չունեցավ իրեն հավասար և ոչ մի ժամանակաշրջան։ Խոսքը վերաբերում է ոչ միայն քանակական ցուցանիշներին, այն է՝ գործի ֆինանսավորման չափին ու դրա հետևանքով վերանորոգվող հուշարձանների թվին, այլև նորանոր մեթոդական սկզբունքներին, որոնք լայնորեն մուտք գործեցին տվյալ բնագավառը, ինչպես Հայաստանում, այնպես էլ ամբողջ Սովետական Միությունում։ Թեև պետք է նշենք, որ հուշարձանների վերանորոգման հետ կապված ստեղծագործական մյուս բոլոր պրոբլեմների հետ մեկտեղ և նրանց կողքին, էկոնոմիկան հիմնական հարցերից մեկն է։ Այն որոշակիորեն օժան-

դակում է վերանորոգման գործը դնելու ժամանակակից շինարարական և տեխնիկական մակարդակի վրա։

Ճարտարապետական հուշարձանների պահպանության և վերականգնման վարչությունը տարիներ շարունակ ուշադրությունը և հատկապես միջոցները հիմնականում կենտրոնացնում էր այն հրատապ կոնսերվացման աշխատանքների վրա, որոնք պետք է կանխեին վթարային վիճակում գտնվող հուշարձանների մոտակա փլուզումը։ Սա էր պատճառը, որ վարչությունը ըստիպված էր միտումնավոր ձևով առժամանակ հրաժարվել հուշարձանների համար անհրաժեշտ նրանց շրջապատի նույնիսկ բարեկարգման աշխատանքներից, թեև շատ հաճախ դա համապատասխան տարակուսանք և քննադատության առիթ է տալիս։

Չնայած դրան, այդ տարիներին ուշադրությունը սևեռվեց ոչ միայն կոնսերվացման աշխատանքների վրա, այլև նույնիսկ առաջ քաշվեց էլ ավելի մանր ու մասնակի վերանորոգումների անհրաժեշտության հարցը։ Այս կապակցությամբ ստեղծվեցին շինարարական աշխատանքների շտապ օգնության հատուկ բրիգադներ, իրենց հատուկ մեքենաներով, որոնց նպատակն էր կանխել խիստ վթարային ու տագնապալի վիճակի մեջ գտնվող հուշարձանների փլուզման վտանգը, մինչև հիմնական վերանորոգումն սկսելը։ Այդ միջոցառումների դրական արդյունքը ի վերջո իրեն զգալ տվեց։ Վթարային պայմանների մեջ գտնվող բազմաթիվ հուշարձանների վրա ծառացած վտանգը կանխվեց։

Ներկայումս, երբ աղետալի վիճակի մեջ գտնվող հուշարձանների քանակը զգալիորեն պակասել է, լայն հնարավորություններ են ստեղծվել նրանց վերանորոգման ու բարեկարգման աշխատանքների կոմպլեքսային եղանակի համար։ Դա ընդգրկում է՝ պեղումներ, վերանորոգումներ, բարեկարգումներ առանձին հուշարձաններում, թանգարանային ցուցադրումներ, ինչպես նաև համապատասխան ուղեցույցների հրատարակություն։ Աշխատանքների նման ձևին հատկապես զարկ տրվեց 1968 թվականից, երբ Երևանի հիմնադրման 2750-ամյակի առթիվ կոմպլեքսային ձևով բարեկարգվեցին ու վերակառուցվեցին քաղաքի սահմաններում գտնվող հուշարձանախմբերըն ու առանձին կոթողները։

Ճարտարապետական հուշարձանների վերականգնման գործը վերջին տարիների ընթացքում հատկապես նոր թափ ստացավ աշխատանքների մեքենայացման շնորհիվ։ Դա գլխավորապես վերաբերում է քարի մշակմանը, որն ինքնին շատ աշխատատար և դժվարին պրոցես է։ Քարի մշակման այս ձևը արդեն զգալի արդյունքներ է տալիս, թեև հուշարձանների ոչ բոլոր բեկորներն են, որ ենթակա են նման մշակման։

Հուշարձանների վերանորոգման շինարարական հրապարակները լայնորեն մուտք են գործել նաև վերամբարձ մեքենաները։ Եթե նկատի ունենանք, օրինակ, որ Գառնիի հեթանոսական տաճարի ծածկի առանձին բեկորների քաշը հասնում է 6 տոննայի, պարզ կլինի տվյալ միջոցառման արդյունավետությունը (Նկ. 36)։

Փորձ կատարվեց լուծել մի այլ կարևոր խնդիր ևս։ Հանրահայտ է Հայաստանում պատմական հուշարձանների տեղադրությունը՝ հաճախ բարդ ու դժվարին հատվածներում, իսկ երբեմն էլ ժամանակակից տրանսպորտի համար միանգամայն անանցանելի վայրերում։ Նման հուշարձանների վերանորոգումը հետաձգվել է տարիներով։ Որոշ հուշարձաններ նույն վիճակում են նաև այսօր։ Այս կապակցությամբ ձեռնարկվեց շինանյութի փոխադրումը օդային ճանապարհով՝ ուղղաթիռի միջոցով։ Հավանաբար այս միջոցը հետագայում էլ կարող է օգտագործվել, սակայն միայն եզակի հուշարձանների վերանորոգման գործում և հատկապես այնտեղ, ուր բացակայում է ճանապարհով երթևեկելու ուրևէ հնարավորություն (Նկ. 34, 35)։

Եվ այսպես, ճարտարապետական հուշարձանների վերանորոգման կեսդարյա անընդմեջ աշխատանքների հետևանքով, առ այսօր վերանորոգված հուշարձանների թվում կարող ենք տեսնել պատմական հայ ճարտարապետության բազմաթիվ նշանակալից կոթողներ։ Նրանցում վերանորոգված են պատերը, որմնամույթերը, կամարները, թաղերը, գմբեթակիր ծածկերը և կոնստրուկտիվ այլևայլ տարրեր, ինչպես նաև բարեկարգված է հուշարձանների շրջապատը։

Սակայն պատմական հուշարձանների ուսումնասիրությունները չեն սահմանափակվել միայն

կանգուն ու վերերկրյա կառույցներով ու արդեն լայնորեն հայտնի նրանց ճարտարապետական ձևերով։ Գիտահետազոտական մտքի որոնումները միշտ էլ ընկղմվում են երկրի ընդերքը, որտեղից դուրս են բերվում հնամենի, բրոնզափառով ծածկըված հուշարձաններ կամ նրանց առանձին բեկորներ, որոնք իրենց նորովի հայտնագործությունով լրացնում են հինավուրց ճարտարապետության անընդմեջ զարգացման պատկերը։ Բանն այն է, որ պատմական տարածքի պեղման աշխատանքները միշտ էլ օժանդակել են, մասնավորապես, տվյալ տարածքների պատմաճարտարապետական համալիրների նախնական կառուցապատումները կազմող շենքերի լրիվ հայտնաբերմանը, որոնք միշտ էլ զգալիորեն փոխում են մեր սկզբնական պատկերացումը այդ համալիրների նախնական պատմական տեսքի մասին և կանխորոշում են ընդարձակ պեղումների հրամայական անհրաժեշտությունը։

Բացի հուշարձանների սիստեմատիկ ու զուտ հնագիտական նպատակներով կատարված պեղումներից, նրանցում կատարվել են նաև ընդհանուր բարեկարգման և մաքրման աշխատանքներ։ Վերջիններիս նպատակն է եղել ազատել հուշարձանները դարերի ընթացքում կուտակված բերածո հողից, հավաքել հուշարձանների քայքայման հետևանքով թափված բեկորները։ Մաքրման աշխատանքները օժանդակում են հուշարձանների տեսողական բարենպաստ ընկալմանը, ապահովում հետագա քայքայումից, նպաստում վերանորոգման ու բարեկարգման գործին։ Շատ հաճախ մաքրման աշխատանքները ուղեկցվում են անակնկալներով՝ երբ հուշարձաններում ի հայտ են բերվում անհայտ ճարտարապետական հորինվածքներ, բեկորներ, զարդաքանդակներ և խաչքարեր, ինչպես նաև մինչ այդ անհայտ հուշարձանների մնացորդներ։

Վերջին տասնամյակի ընթացքում բազմաթիվ են մաքրված հուշարձանները, որոնցից կարող ենք նշել՝ Աշտարակի Ծիրանավորը, Ավանի հուշարձանները, Զվարթնոցի առանձին հատվածներ, Բարձրաքաշը, Գառնիի բազիլիկ եկեղեցին, ինչպես նաև նույն գյուղի հինավուրց միջնաբերդի պարիսպները, Աղցը, Կլոր-Դաղը և շատ այլ կոթողներ։

Ինչպես արդեն նշել ենք, պեղման ու մաքրման անհրաժեշտությունը առաջ է քաշվել դեռ Կոմիտեի հիմնադրման առաջին տարիներին, երբ պեղումները նրա աշխատանքային ծրագրի մշտական կետերից էին։ Այդ ծրագրի համաձայն Կոմիտեն իր գործունեության սկզբնական շրջանում ձեռնամուխ է եղել անցյալի մշակութային օջախների մի շարք պեղումների։

## ա) ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՏԱՐԱԾՔՆԵՐԻ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ

Հին Վաղարշապատի պեղումները։ Հնությունների պահպանության Կոմիտեի ձեռնարկած պեղման առաջին խոշոր աշխատանքները, հին Վաղարշապատի մնացորդների հայտնաբերման նպատակով, ձեռնարկվեցին 1931 թվականին, Զվարթնոցից արևմուտք ընկած տարածքում[1]։ Պեղման համար կազմված էր հատուկ հանձնաժողով, որի մեջ որպես աշխատանքների ղեկավար հրավիրված էր Ն. Մառը։ Սակայն, հակառակ իր համաձայնության, նա հնարավորություն չունեցավ մասնակցելու այդ գործին, և Կոմիտեն այդ աշխատանքները սկսեց իր ուժերով։ Պեղման ենթակա ամբողջ տարածքը նախապես բաժանված էր հնագիտական երեք տեղամասի, որոնց համապատասխանաբար ղեկավարում էին Թ. Թորամանյանը, Ս. Տեր-Հակոբյանը և Ս. Տեր-Ավետիսյանը[1]։ 4-րդը, որը ղեկավարում էր Ա. Քալանթարը, կատարում էր հնագիտական ամբողջ տերիտորիայի ընդհանուր հետազոտությունը և նրա արդյունքների ամփոփումը։

[1] Պրոֆ. Աշխարհբեկ Քալանթար. Հին Վաղարշապատի պեղումները; Հրատ. Մելքոնյան Ֆոնդի, Երևան, 1935 թ.։

Մանրամասն կատարած պեղումները պարզեցին, որ հին Վաղարշապատի մնացորդները,

[1] Հանձնաժողովի մյուս անդամներն էին՝ Ա. Թամանյանը, Ի. Մեշչանինովը, Գ. Ասատուրը, Ս. Բարխուդարյանը, Կ. Ղաֆադարյանը, Ս. Երեմյանը, Ա. Ղորղանյանը, Ա. Հովհաննիսյանը, Ե. Բայբուրդյանը։

որոնք փնտրվում էին հետազոտվող տարածքի վրա, չկային և, ամենայն հավանականությամբ, այսպիսի եզրակացության հանգեցին արշավախմբի ղեկավարները. հինավուրց քաղաքը գտնըվում է ժամանակակից Վաղարշապատի տերիտորիայի սահմաններում։ Ընդ որում, այդ նույնը, ժամանակին, դեռ պեղումներից էլ առաջ, պընդում էին Թ. Թորամանյանը ու Մեսրոպ Մագիստրոսը, որոնք հիմնվում էին նախապես այդ տարածքում կատարած իրենց հետախուզական աշխատանքների արդյունքների վրա[1]։ Թվում է, թե այդ ենթադրությունը ժամանակին ամենահավաստի եզրակացությունն էր։ Այսօր, թեև որոշ վերապահումներով, մենք կարող ենք միանալ այդ կարծիքին, հենվելով էջմիածնի Մայր տաճարի ներսում 1955 թվականին կատարված պեղումների արդյունքների վրա։ Այստեղ, տաճարի բեմահարթակի տակ, հայտնաբերված հնագիտական նյութը ու հատկապես կրակարանը և ուրարտական կոթողը (Նկ. 110) համապատասխանորեն բնորոշում են ոչ միայն հուշարձանի տեղամասը, այլև քաղաքն ամբողջությամբ վերցրած։ Նույն տարում, Հռիփսիմեի տաճարի ներսի պատերի հիմքերում հայտնաբերված անտիկ կառույցի բեկորները, որոնք իրենց զարդաքանդակների հորինվածքներով հար և նման են Գառնիի համանման բեկորներին, հաստատեցին հելլենիստական տիպի շենքի գոյությունը հին Վաղարշապատի սահմաններում։ Այսպիսով թվում է, թե հաստատվեց հին Վաղարշապատի գոյությունը տըվյալ տարածքում, ինչպես նաև հաստատվեց շինարարական անընդմեջ կառուցապատումը Ուրարտուից հետո, հիմա, արդեն, նաև հելլենիստական դարաշրջանում։ Ի դեպ, 1931 թվականի պեղումների ժամանակ դամբարաններից մեկում, հնագիտական այլ նյութերի հետ մեկտեղ, գտնվեց նաև հռոմեական Վեսպասիանոս կայսեր (առաջին դար) արծաթյա դրամը[2]։

Այսպիսով, թեև հին Վաղարշապատի տեղը չգտնվեց և այն վերջնականապես չի ճշտված առ այսօր, սակայն այդ տարածքի վրա հայտնաբերված տարբեր դարաշրջաններին վերաբերող հնագիտական բազմապիսի նյութերը, որոնք այն ժամանակ տվյալ հնագիտական արշավախմբի անդամները բնութագրեցին որպես «գիտական խոշոր արժեք ու նշանակություն ունեցող», նշանակալից դարձան Հայաստանի հնագիտական ուսումնասիրության առումով ընդհանրապես։

Սակայն, մենք հակված չենք եղած պատմահնագիտական արդի նյութի հիման վրա կամ մանավանդ հնագիտական այլ աղբյուրների համադրությամբ ստացված պատկերացումներից անել այնպիսի լայնատարած եզրակացություններ անտիկ Վաղարշապատի քաղաքաշինարարական ստրուկտուրայի մասին, ինչպես այդ կարելի է տեսնել հրապարակված որոշ աշխատություններում։

Այստեղ կարող ենք ամենայն իրավամբ ավելացնել նաև, որ պատմական Վաղարշապատի հնագիտական ուսումնասիրության արդյունքները զգալիորեն ետ են մնում նրա մասին ունեցած մատենագրական տեղեկություններից։

**Գեղարդավանքի պեղումները:** Հետևյալ տարիներին հնագիտական պեղումները շարունակվում էին նույնպես փոքր մասշտաբներով և նույնպես մասնակի հարցերի լուծման սահմաններում միայն։ Այս անգամ 1932 թվականին ձեռնարկվեց Գեղարդի վանքի տարածքի վրա ժայռերի խորության մեջ ընկղմված ու առաջներում կիսավեր վիճակի մեջ հայտնաբերված բավականին զգալի մեծությամբ (շուրջ 9×15 մետր հատակագծում ու 5 մետր բարձրությամբ) դահլիճի պեղումները։ Այդ աշխատանքների ընթացքում հայտնաբերվեց մի արձանագրության պահպանված մասը, որից պարզվեց, որ կառույցը հիմնված է XIII դարում, Պռոշ իշխանի օրոք։

Տվյալ դահլիճը թեև ժայռերի փլման հետևանքով բավականին ավերված էր, և նրանում պահպանված մասերը կազմում էին պատերի միայն առանձին հատվածները, սակայն, իրենց ճարտարապետական հորինվածքով՝ ներկված ստալակտիտներով, որմնասյուների առանձին ընկած խոյակներով, ինչպես նաև խորշերի ձևերի ու պատերի մշակումներով հաստատում էին, որ այն եղել է վանքի աշխարհիկ կյանքի հիմնական հուշարձաններից մեկը։

Ամփոփելով իր պեղումների արդյունքները,

1 Կ. Ղաֆադարյան. Հնագիտական աշխատանքը Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո։ Առանձնատիպ Պետական պատմական թանգարանի «Աշխատություններ», հատոր I, Երևան, 1948 թ., էջ 56։

2 Նույն տեղում, էջ 56։



Նկ. 40. Երերույք. պեղված ջրամբարտակի հենապատը։

Թ. Թորամանյանը նշում է, որ թեև դասական հայ ճարտարապետության մեջ քիչ չեն աշխարհիկ կարիքների համար կառուցված վերերկրյա դահլիճները, սակայն վիմափոր կառույցի ձևով Գեղարդաձորի տվյալ դահլիճը առաջին օրինակն է իր տեսակի մեջ, և դրանով Գեղարդավանքը ավելի է լայնացնում իր վիմափոր կառույցների ցանկը։

Կոմեանի այդ տարիների հնագիտական աշխատանքները փոքր էին իրենց ծավալներով, կարճատև ու հիմնականում հետազոտական բնույթի էին, սոսկ իրենց լոկալ նշանակությամբ ու հետևապես առանց որևիցե գիտական լայնատարած ընդհանրացումներ կատարելու հնարավորության։ Բայց, այսուհանդերձ, կարելի է որոշակիորեն հաստատել, որ Անիի պեղումներից հետո այդ աշխատանքները գործի կազմավորման հաջորդ աստիճանն էին, որով հիմնավորվում էր նրա առաջընթացը, հարստացված հնագիտական մշակույթի բազմաթիվ նորույթներով[1]։

**Արուճի պալատի պեղումները։** Հետագա տարիներին հնագիտական պեղումները զգալիորեն ընդարձակվեցին։ Այսպես, ետպատերազմյան առաջին իսկ տարիներին, նման աշխատանքներ ձեռնարկվեցին Արուճի հինավուրց հուշարձանների շրջապատում, որտեղ ձեռնարկվեց բերածո հողի շերտով ծածկված պալատական շենքի մնացորդների բացում։ Տվյալ պեղումները նպատակ ունեին ընդլայնելու աշխարհիկ կառույցների ու հատկապես պալատական շենքերի խիստ սահմանափակ քանակը, քանի որ եղածները հեռու էին ճարտարապետական լայն ընդհանրացումների հնարավորություն տալուց։ Եթե դրան ավելացնենք նաև այն, որ մինչև այդ հայտնի երկու կառույց՝ Զվարթնոցի և Դվինի պալատները, պահպանվել էին քայքայված վիճակում, պարզ կդառնար արդի այդ կարգի շենքերի պեղումների անհրաժեշտությունը պատմաճարտարապետական բնագավառում։

Մինչև պեղումները, Արուճի հնագիտական տարածքում արդեն հայտնի էին վերերկրյա կառույցներից VII դարի հռչակավոր տաճարը, եռանավ բազիլիկ եկեղեցին, ինչպես նաև բազմաթիվ խաչքարեր ու կոթողային հուշարձաններ, մենհիր, իսկ գյուղի արվարձանում նաև իջևանատան մնացորդներ։ Դրանց շարքում պալատական շենքը, որը թեև ծածկված էր բերածո հողի հաստ շերտով, սակայն նրա առկայությունը ևս հայտնի էր միջնադարյան պատմիչների տարեգրությունից, իսկ նրա պեղումների անհրաժեշտության մասին ժամանակին արդեն խոսել էին Ն. Մառը[2] և Թ. Թորամանյանը[3]։ Պատմական տարեգրությունից հայտնի էր նաև, որ պալատը V դարում կառուցել է Գրիգոր Մամիկոնյանը։

Պեղումները ցույց տվեցին, որ պալատական շենքը պահպանվել էր խիստ քայքայված վիճակում, քանի որ պատերից մնացել էին միայն առաջին երկու շարքերը, այն էլ բավականին

[1] Հնագիտական արշավախմբի պետ Թ. Թորամանյան, անդամներ Ս. Բարխուդարյան, Տարագրոս։ Պեղումների հաշվետվությունը տես՝ Գեղարդաձորի մեջ կատարած պեղումների տեղեկագիրը։ Նյութեր հին Հայաստանի պատմության ՀՍԽՀ Կուլտուրայի պատմության ինստիտուտի աշխատությունները։ Պետհրատ, 1935 թ., Երևան, էջ 134—141։

[2] **Н. Я. Марр**. Армянская церковь в Аруче. Известия Импер. археологической комиссии. Вып. 12, 1904. С. Петербург, стр. 61.

[3] Թ. Թորամանյան, Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, հ. 1, Երևան 1942, էջ 121։

*խարխլված վիճակում։ Հնագիտական ուսումնասիրություններից պարզվեց, որ պալատի կենտրոնական մասը պաշտոնական ընդունելություններ֊ի համար ծառայող բավականին շքեղ սյունազարդ դահլիճ էր։ Վերջինի երկայնքով երկու կողմերում տեղավորված էին համեմատաբար փոքր սենյակներ[1]։*

*Առանձնապես ուշագրավ են դահլիճի սյուների մեծածավալ ու վեհաշուք խոյակները։*

*Տվյալ պալատը, ինչպես նաև նրան հար և նման Դվինի պալատական շենքը, որտեղ տեսնում ենք նույնատիպ խոյակներ ու այլ բեկորներ, հաստատում են, որ Հայաստանի VII դարի աշխարհիկ շենքերը ունեցել են կատարյալ ճարտարապետական ձևեր ու մոնումենտալ լուծումներ[2]։ Հավանաբար այս տիպի շենքերի լուծումները ժամանակին արտահայտել են ունիվերսալ հորինվածքներ, եթե ի նկատի ունենանք Զվարթնոցի, ինչպես նաև Դվինի պալատական շենքերը, հատակագծային լուծումների համանման մտահղացումները[3]։ Թերևս այստեղ ավելորդ չէ նշել հատակագծային լուծումների այն նմանությունը, որն առկա է տվյալ պալատական շենքերի և Էրեբունիի Արգիշտիի պալատի հատակագծի միջև, մի փաստ, որը ավելորդ անգամ հաստատում է ճարտարապետության զարգացման գենետիկ այն կապը, որը գոյություն ունի ուրարտական ու պալատական հայ ճարտարապետության միջև։*

*Արուճի, ինչպես նաև համանման մյուս հուշարձանների (Թալին, Մարմաշեն, Մակարավանք, Երերույք և մյուսներ) շուրջը կատարված պեղումները հաստատում են, որ նման կառույցները ոչ թե առանձին կանգնած հուշարձաններ են եղել միայն, այլև ժամանակին եղել են աշխարհիկ ու պաշտամունքային հուշարձանախմբերի մեծ ու ուշագրավ համալիրներ։*

*Այս առումով նշանակալից է, օրինակ, Մարմաշենի ճարտարապետական համալիրը[4]։ Այնտեղ հայտնաբերվեցին կլոր հատակագծով մի մեծ եկեղեցու մնացորդները, ներքին խաչաձև կոմպոզիցիայով քարի մեծ, մոտ 1 մ 70 սմ բարձրությամբ շարվածքով։ Իր ներքին տարածական հորինվածքի լուծումով ու արտաքին ճարտարապետական պահպանված մասերի ձևերով հուշարձանը հիշեցնում է Խծկոնքի համալիրի կլոր եկեղեցին ու հատկապես հար և նման է նրա գետնախարսխային մասերի ջլատված հորիզոնական գոտիներին։ Կլոր եկեղեցու ճարտարապետական ձևերի առկայությունը այս համալիրի միջավայրում պետք է որ նրա ճարտարապետական տարածական հորինվածքին տար բոլորովին այլ հնչողություն և ընկալում։ 1974 թվականին այս հուշարձանախմբի տարածքի պեղումների ժամանակ հայտնաբերվեցին մի այլ կառույցի մնացորդներ, որոնք հավանաբար պատկանում են համալիրում երբեմնի գոյություն ունեցող զանգակատանը[5]։ Թեև պեղումները դեռ շարունակելի են, սակայն պարզ է, որ տվյալ տեղում գոյություն ունեն նաև այլ կոթողների մնացորդներ, որոնք սպասում են իրենց հերթին։*

*Հետաքրքրական հուշարձան է բացվել նաև Լենինականի բուսաբանական այգում, որն ի դեպ էնեոլիթյան բնակատեղի է. դա հաստատվեց նրա առանձին հատվածների պեղումների ընթացքում հայտնաբերված հնագիտական նյութով։ Ուղղանկյուն հատակագծով այդ եկեղեցին[6] հավանաբար VI—VII դարերի գործ է ու հետևապես խոսում է տվյալ հնագիտական տեղամասի հարատև պատմական կյանքի մասին։ Շատ հավանական է, որ տվյալ բնակատեղին պատմական Կումայրիի հինավուրց ճարտարապետական այն միջուկն է, որից թերևս իր պատմական զարգացումն է սկսել ժամանակակից քաղաքը։ Անշուշտ հնագիտական այս տարածքը չի սահմանափակվում տվյալ հուշարձանի ու պեղված տարածքի սահմաններով, նրա սիստեմատիկ պեղումները կարող են ի հայտ բերել նորանոր հուշարձաններ և բացել նրա պատմական կյանքի շատ գաղտնիքներ, կապված տվյալ վայրի ժամանակագրության ու նյութական մշակույթի հետ։*

---

*1 Պեղումների ղեկավար՝ Վ. Հարությունյան։*

*2 Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները։ Հայկ. ՍՍՀ Գ.Ա. հրատարակչություն, Երևան, 1952 թ., Վ. Հարությունյան. Դվինի 5—7-րդ դարերի ճարտարապետական հուշարձանները։ Երևան, 1950 թ.։*

*3 Վ. Հարությունյան, VII դարի աշխարհիկ ճարտարապետության մի նոր հուշարձան, Տեղեկագիր, 1953 № 8։*

*4 Պեղումների ղեկավար՝ Հ. Եղիազարյան։*

*5 Պեղումների ղեկավար՝ Ս. Հարությունյան։*

*6 Պեղումների ղեկավար՝ Ս. Հարությունյան, Ա. Ենգոյան։*

**Արագածի պեղումներ**[1].— *1954—55 թթ. կատարվեցին էջմիածնի շրջանի Արագած գյուղի (նախկինում Խզնավուզ) հնագիտական տարածքի պեղումները։ Այդ ընթացքում հայտնաբերված հնագիտական նյութերը հաստատեցին այնտեղ գոյություն ունեցող հինավուրց կառույցների պատկանելիությունը ուրարտական մշակույթին։ Անցյալում, շուրջ 300 տարի առաջ, 1647 թվին, այս հուշարձանների մնացորդները արժանացան ֆրանսիացի ճանապարհորդ Պոլե-Լեկուգի ուշադրությանը, որը և կազմեց նրա պալատական կառույցի գլխավոր ճակատի վերականգնման ճեպանկարը։ Այս ճեպանկարով է, որ տվյալ կառույցի մնացորդները որպես հուշարձան գրանցվեցին պատմության մատյաններում։ Սակայն միայն պեղումները հաստատեցին, որ այն ուրարտական դարաշրջանին պատկանող նշանակալից բնակատեղիներից է։*

*Արագածի հուշարձանի մնացորդները, որ փռված են 10 հեկտար տարածության վրա, ունեցել են ժայռոտ բարձունքի վրա վեր խոյացող երկհարկանի միջնաբերդ։ Բնակատեղին գտնվում է Արարատյան դաշտի այն կարևոր ուրարտական մայրուղու վրա, որը գալով Մենուախինլիից (Տաշբուրուն), անցնելով Արգիշտիխինլին (Արմավիր—Դավթի սար), Արագածի մոտ ճյուղավորվելով շարունակվում էր դեպի հյուսիս, Արագած լեռան կողմը, մյուսը Թեյշեբայինի (Կարմիր բլուր) և ավելի հեռու, մինչև Սևանի ավազանի ուրարտական հայտնի քաղաքները։*

*Ժամանակին հնարավոր չեղավ կատարել Արագածի հնագիտական տարածքի լայնատարած պեղումները, որովհետև այն ամբողջովին ծածկված էր այգիներով, սակայն նրա առանձին հատվածներում, որտեղ հնարավոր էր պեղումներ կատարել, բացվեցին մի քանի կառույցների մնացորդներ, որոնցից մեկը բնակելի տանն էր պատկանում։ Վերջինիս հատակագծային հորինվածքը նման էր Կարմիր բլուրի քաղաքային բնակելի շենքերի հատակագծային լուծումներին։ Այսպես, հայտնաբերված երեք սենյակներից բնակելի այս տունը ունի բակ իր ծածկված մասով։ Սենյակներից երկուսը հնարավոր եղավ դասել բնակելի կացարանների շարքը, իսկ երրորդը ծառայում էր տնտեսական պահեստային կարիքների համար և դրանք հավանաբար լուսավորվում էին երդիկից։ Բնակելի կենտրոնական սենյակը ուներ օջախ, իր ձևերով Թեյշեբայինի քաղաքի բնակելի շենքերում գտնված օրինակներին համապատասխան։*

*Արագածի միջնաբերդի մոնումենտալ կառույցը երկհարկանի է, հատակագծում ուղղանկյուն է, իսկ անկյուններում վեր են խոյանում աշտարակներ, որոնց միջև կան որմնահեցեր։*

*Ինչպես ցույց են տվել միջնաբերդի մեր ուսումնասիրությունները, նրա առաջին հարկը, հավանաբար, ծառայել է տնտեսական կարիքների համար, իսկ երկրորդ հարկում տեղավորված են եղել բնակելի սենյակները։*

*Կառույցի արտաքին ծավալները լուծված են, ինչպես դա առկա է մեր վերակազմության նախագծում, բավականին զուսպ և պարզ ճարտարապետական ձևերով, ուրարտական նման կառույցների համար բնորոշ լակոնիկ ու մոնումենտալ տեսքով։*

*Հուշարձանի ժամանակագրությունը, բացի հնագիտական նյութից, պարզում են նրա հում աղյուսները՝ ադոբները, որոնցով կառուցված է եղել միջնաբերդը։ Նրանց չափերը հար ու նման են Թեյշեբայինի աղյուսներին։*

*Այսպիսով, Արագած գյուղի հնագիտական պեղումները հայտնաբերեցին մի ուշագրավ ուրարտական քաղաքատեղի։*

*Հնագիտական հուշարձանների տարածքում, նրանց երբեմնի կանգուն համալիրներին պատկանող ու ժամանակին նրանց ընդերքում անհետացած կոթողներ հայտնաբերելու մղումով, պեղման ու մաքրման համանման աշխատանքները շարունակվեցին նաև հետագայում։*

*Այսպես, հետաքրքրական արդյունքներով ավարտվեցին էջմիածնի Մայր տաճարի հատակի մակարդակից ցած հնագույն մշակութային շերտերի պեղումները, որտեղ հայտնաբերվեցին տաճարի հիմնադրման ժամանակին պատկանող նախնական կառույցի մնացորդներ*[2]*։ Այս աշխատանքները կատարվեցին տաճարի վերա-*

---

*[1] Հնագիտական արշավախմբի պետ Կ. Լ. Հովհաննիսյան։ Տես՝* «Урартское поселение в селе Арагац» *Հայկական ՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, «Հասարակական գիտություններ» № 4 1958, էջ 77—92։*

*[2] Ա. Ա. Սահինյան, էջմիածնի Մայր տաճարի սկզբնական տեսքը, Պատմաբանասիրական հանդես, 1966, № 8, (№ 24), էջ 71—932։*

նորոգման ժամանակ, երբ այդ կապակցությամբ բացվել էին նրա մույթերի հիմքերը և պեղումների համար ստեղծվել էին բարեհաջող պայմաններ։ Տաճարի բեմահարթակի տակ կատարված պեղումները հայտնաբերեցին կառույցի առավել հինավուրց պատմական կյանքին պատկանող բեկորներ, որոնք հասցրին այն մինչև ուրարտական դարաշրջանը։ Վերջինիս է մասնավորապես պատկանում մոխրակալված ատրուշանը ու նրա մոտ գտնված, ինչպես ամենուրեք ուրարտական նման պաշտամունքային վայրերում, բազալտե կոթողը, սակայն առանց որևիցե սեպագիր արձանագրության, ինչպես հաճախ հայտնաբերվել են ուրարտական սրբատեղիներում։ Հայտնագործության գիտական արժեքը նշանակալից է նաև նրանով, որ տաճարի տեղամասը դառնում է երկու պաշտամունքային՝ ուրարտական և քրիստոնեական դարաշրջանների հանդիպման կետը, որով էջմիածինը էլ ավելի է ընկղմվում պատմական անցյալի խորքը։ Մասնավորապես հաստատվեց, որ տաճարի գմբեթակիր մույթերը իրենց խարիսխներով կանգնած են էլ ավելի հնագույն խարիսխների վրա, որոնք պատկանել են տաճարի սկզբնական ձևերին, այսինքն տաճարի կառուցման ժամանակին, այն է՝ IV դարի սկզբին, երբ քրիստոնեությունը, Հայաստանում հաստատվելով որպես պետական կրոն, հիմնում էր իր առաջին պաշտամունքային շենքերը։ Սկզբնական կառուցվածքը պետք է որ ունենար, համաձայն մի շարք հետազոտողների եզրակացության, և նրանց թվում Թ. Թորամանյանի, բազիլիկ հորինվածք, այսինքն նման՝ Քասախի, Տեկորի, Աշտարակի և համանման հուշարձանների ճարտարապետական ծավալատարածական ձևերին։ Հենվելով վերն արդեն նշված մոդուլային համակարգի վրա, Ա. Սահինյանը վերարտադրում է հուշարձանի ճարտարապետական կերպը նշված ձևով ու բոլոր մանրամասնություններով հանդերձ։ Արտաքուստ այն ունի երկթեք ծածկ, ներքուստ՝ եռանավ տարածություն։

Մյուս պեղումները, որոնք կատարվել են Երերույքի տարածքի վրա, նույնպես նշանակալից էին իրենց արդյունքներով, քանի որ այստեղ բացվեցին հզոր հենապատերի մնացորդներ, որոնցով անցյալում պատնեշվել էր այժմ արդեն գոյություն չունեցող գետակը՝ ջրամբար կամ արհեստական լճակ ստեղծելու նպատակով։ Տարածական հորինվածքի առումով լճակի ստեղծումը այստեղ հայտնագործություն էր պատմական հայ ճարտարապետության համար։ Դա նոր խոսք էր նրա գեղարվեստական մակարդակի մասին, որն աննախադեպ է պատմական հայ ճարտարապետության բնագավառում։ Թե որքանով այն գեղատեսիլ պետք է լիներ, դա կարող են հաստատել բազմաթիվ նման հորինվածքներ և ի թիվս դրանց Հնդկաստանի հանրահայտ Թաջ-Մահալ հուշարձանի ճարտարապետական նրբագեղ ձևերի արտացոլումը նրա առջևում ստեղծված ջրային մակերեսի վրա։ Այսպիսով, թեև Երերույքի ամբարտակի մասին տեղեկությունները հայտնի էին դեռ Ն. Մառին, սակայն նրա տեսանելի մնացորդները բացվեցին միայն 1960 թվականի պեղումներով[1] (Նկ. 40)։

Պեղման, ինչպես նաև հուշարձանների տարածքների մաքրման աշխատանքները միշտ էլ նախորդել են վերանորոգման ու հատկապես բարեկարգման ձեռնարկումներին, մի կողմից պարզելու համար դեռևս անհայտ հուշարձանների առկայությունը, մյուս կողմից քայքայված հուշարձաններից ընկած բեկորները հայտնաբերելու նպատակով։ Սակայն, հետագա տարիներին, սկսած 1957 թվականից, պեղումները կատարվում էին Հայկական ՍՍՀ ԳԱ Հնագիտության ու ազգագրության ինստիտուտի հետ համատեղ, քանի որ խոսքն արդեն վերաբերում էր ոչ թե հուշարձանախմբերի մաքրմանը, նրանց բարեկարգման կամ վերականգնման նպատակների հետ կապված գործին, այլ որ իրենց բուն իմաստով դրանք պարբերաբար կատարվող հնագիտական բնույթի պեղումներ էին։ Դրանց շնորհիվ հուշարձանների պահպանության բնագավառը լրացնում ու հարստացվում էր նորանոր կոթողներով ու ճարտարապետական ձևերով, որոնք հաճախ զգալիորեն օժանդակում են ինչպես հետազոտական, այնպես էլ վերանորոգման գործի ընթացքում բազմաթիվ գիտական պրոբլեմների իսկությունը պարզելուն։

Այսպես, 1957 թվականին գիտությունների ակադեմիայի հետ սկսվեցին առաջին համատեղ պեղումները, սկզբում պատմության ինստի-

[1] Պեղումները Ա. Սահինյանի։

տուտի, իսկ 1958 թվականին նորաստեղծ Հնագիտության ու ազգագրության ինստիտուտի հետ։ Հնագիտական այս արշավախմբի արդյունքները ժամանակին հրապարակվեցին երկու պրակով[1]։

Պեղումների համար, որպես հնագիտական տարածք, ընտրվեց Ջրվեժ գյուղի շրջակայքը, որն, ինչպես պարզեցին վերերկրյա նախնական հետազոտական ստուգումները, պետք է, որ, այդ առումով, բավականին խոստումնալից լիներ, ինչը և հաստատեցին այստեղ կատարված հնագիտական աշխատանքները։

Պեղումները սկսվեցին Քոսաղբյուրի մոտ, որտեղ սփռված էին բազմաթիվ ճարտարապետական բեկորներ, որոնց պաշտամունքային շենքերին պատկանելիությունը կասկած չէին առաջացնում։ Եվ իրոք, հետագա աշխատանքները շուտով պարզեցին, որ այստեղ գտնվում են միմյանց կից եկեղեցու ու երեք փոքր մատուռների մնացորդներ։

Այս հուշարձանների շարքում նշանակալիցը եկեղեցին էր, որն իր հատակագծում ունի պատմական հայ ճարտարապետության կառույցներում բավական տարածված եռաբսիդ հորինվածք։ Պեղումները հայտնաբերեցին նրա կոնստրուկտիվ հանգույցներին պատկանող առանձին բեկորներ, որոնցով միանգամայն հնարավոր դարձավ պատկերել շենքի ոչ միայն առանձին հատվածները, այլև նրա ընդհանուր կերպը, ինչպես այն վերարտադրել է Ն. Մ. Տոկարսկին եկեղեցու համար իր ներկայացրած համապատասխան վերականգնման նախագծում։ Նրանում տեսնում ենք ութանիստ թմբուկով կառույց, կղմինդրյա ծածկ ունեցող գմբեթ, որը բնորոշ է իր ժամանակի, այն է՝ VI—VII դարերի համանման բոլոր եկեղեցիների համար։ Նույն դարերի համար բնորոշ է նաև սյուներով շքամուտքների ձևը, որն ի դեպ այստեղ պատկերացված է ոչ թե սոսկ որպես դարաշրջանի համար բնորոշ մի ձևի վերարտադրություն, այլ ստեղծված իրական բեկորների թելադրանքով։ Հեղինակը հուշարձանի վերակազմությանը կցում է նաև շքամուտքի առջևի մասում կատարված վերակառուցումները,ինչպես նաև տալիս երեք պեղված մատուռներից մեկի՝ արևմտյան ճակատի, նախնական տեսքի գծագիրը։ Հուշարձանի մեկ բեկորի վրա գտնված Յոհ (ան) բառում Ն. Մ. Տոկարսկին տեսնում է 608—609 թվականներին մահացած եկեղեցու կառուցող կաթողիկոսի անվան հիշատակությունը, և դրանով էլ որոշվում է Ջրվեժի եկեղեցու կառուցման դարաշրջանը։ Ուշագրավ է այն խիստ եզակի երևույթը, երբ պաշտամունքային շենքը օգտագործվում էր հետագայում արտադրական կարիքների, ներկա դեպքում ձիթհանի համար։ Սակայն, հավանաբար, դա տեղի է ունեցել այն ժամանակ, երբ եկեղեցին հիմնովին ավերված է եղել, ծածկված բերածո հողի շերտով, իսկ կառուցվող ձիթհանը հետագայում նրա երկրորդ մշակութային շերտն է։ Տվյալ իրավիճակի բուն պատճառը սա միայն կարող էր լինել։

Քոսաղբյուրի հնագիտական տարածքի մնացած մասի պեղումները շարունակվեցին 1958 թվականին, երբ հայտնաբերվեցին միջին չափերի, հավանաբար XIII դարին վերաբերող գմբեթակիր եկեղեցու մնացորդները։ Չնայած հուշարձանի խիստ քայքայված վիճակին, այնուհանդերձ Ն. Մ. Տոկարսկուն հաջողվեց վերակազմել այդ կառույցի, հավանաբար, իրականին բավականին մոտ նախնական հատակագիծը։

Քոսաղբյուրից հետո պեղումները տեղափոխվեցին գյուղի հնագիտական կոթողներով հարուստ պատմական գերեզմանոցի տարածքը, որտեղ նույնպես հայտնաբերվեցին եկեղեցու մնացորդներ, ընդ որում ավելի հնագույն շրջանին պատկանող, հավանաբար V դարին, ինչպես այն թվագրում է Ն. Տոկարսկին։ Այս մնացորդները, որոնք ավելի լավ են պահպանվել, քան նախորդ հուշարձաններինը, պատկանում են միանավ դահլիճին, արևելյան ճակատում դուրս եկող աբսիդի հնգանիստ ծավալով։ Հուշարձանի հյուսիսարևելյան անկյունում նշմարվում էր կոթողի մնացորդներ, իսկ շրջապատում մի շարք տապանաքարեր։ Ի մի բերելով պեղումներով հայտնաբերված բոլոր նյութերը, Ն. Տոկարսկին կազմեց

---

[1] Արշավախմբի ղեկավար Ն. Մ. Տոկարսկի, տես՝ Академия наук Арм. ССР Институт истории. Джрвеж, Н. М. Токарский. Ереван, 1958.
Академия Наук Арм. ССР Институт археологии и этнографии. Археологинеские раскопки в Армении № 11 Джервеж, II Вохджаберд Н. М. Токарский, Ереван, 1964.



6—2959

հուշարձանի, ինչպես նաև նրան կից կոթողի վերակազմության նախագծերը։

Տվյալ հնագիտական տարածքում առավել նշանակալից հայտնագործությունը կատարվեց 1960 թվականին, Ջրվեժից 6 կմ հեռավորության վրա գտնվող Ողջաբերդ գյուղի շրջակայքում։ Այստեղ պեղված հուշարձանը, իր ուրույն հատակագծային լուծումով, իրոք մի նոր օրինակ է պատմական հայ ճարտարապետության համար և այդ կապակցությամբ մեծ հետաքրքրություն է ներկայացնում։ Հուշարձանի հատակագիծը ներքուստ շատ փոքր չափերի քառակուսի է (4,08,4,10 մ), որին կից է արևելյան աբսիդը իր ցածր բեմահարթակով (0,20 մ) և արտաքուստ եռանիստ եզրագծով, մի բան, որը իսկապես նորություն էր։ Հենվելով այստեղ հայտնաբերված երկու միակտոր քարերի մեջ փորված փոքր տրոմպների վրա, Ն. Մ. Տոկարսկին գրում է, որ հուշարձանը եղել է մի գմբեթակիր խորանարդ։ Ընդ որում, գմբեթը նա վերակազմում է վեղարային մասով միայն, առանց թմբուկի, քանի որ նրանց միասնական առկայությունը խորանարդի վրա, ինչպես գրում է հեղինակը, կստեղծեին տձև ու անհավանական հորինվածք։ Ի դեպ այստեղ տեղին է նկատել, որ Ն. Տոկարսկին կարծես հետևում է XIX դ. ճարտ. Բուալոյի այն խոսքին, թե իսկությունը ոչ միշտ է ճշմարտանման։ Սակայն, առանց թմբուկի էլ, տաճարի արտաքին ծավալները բավականին ձգված են ստացվել։ Չկրկնելով նրա մանրակրկիտ ուսումնասիրությունները քառակուսուց գմբեթին անցման ձևերի մասին, անդրադառնանք նրա հարցադրմանը տվյալ ճարտարապետական ձևի ակունքների մասին։ Մերժելով Յ. Ստրժիգովսկու այն տեսակետը, թե հայկական հուշարձանում խորանարդի վրա դրված գմբեթի հորինվածքը ունի իրանական ծագում, Տոկարսկին եզրակացնում է, որ խորանարդի վրա գմբեթ դրված հորինվածքը պետք է որ տեղական ծագում ունենար։ Գտնում ենք, որ Ն. Տոկարսկու հարցադրումը համոզիչ է, սակայն նա կանգնած է կես ճանապարհին միայն։ Մեր կարծիքով ճարտարապետական տվյալ ձևի ակունքները հասնում են դարերի խորքը՝ մինչև ուրարտական տաճարաշինությանը։ Այստեղ ըստ իրենց հատակագծային լուծումների, մեր դասակարգման համաձայն, առկա է երեք տիպի տաճար, որոնցից մեկը քառակուսի հատակագծով է (Ալթին—Թեփե, Ակնավուր—Թեփե, Թոփրախ կալե) և նույնպես ունի դեպի վեր զարգացող աշտարակաձև ծավալ։ Հետևապես այս տիպի ու Ողջաբերդի եկեղեցիների մեջ գենետիկ կապը համատեղելի է ու ակնհայտ։ Եթե չկան ավանդական շփման կետեր Ողջաբերդի ճարտարապետական ձևի ու իրանական կառույցների միջև (նկատի ունենք կրակի տաճարները), ինչպիսիք չգտավ Ն. Տոկարսկին, ապա զարգացումը տեղի է ունեցել միայն ուրարտական տաճարաշինության ավանդույթների հիման վրա։ Ինչ վերաբերում է Ողջաբերդի եկեղեցուն կցված աբսիդին, այն օրինաչափ երևույթ է քրիստոնեական եկեղեցիների ձևերի համար։ Այս է ահա մեր կարծիքով Ողջաբերդի հնագիտական պեղումների առավել կարևոր պատմաճարտարապետական արժեքը։

**Արին-բերդի պեղումները.**— Պետշինի հուշարձանների պահպանության և վերականգնման վարչությունը տարիներ շարունակ իր մասնակցությունն է բերել նաև Արին-բերդի, պատմական Էրեբունիի միջնաբերդի պեղումներին, Հայկական ՍՍՀ Գիտությունների Ակադեմիայի հնագիտության ու ազգագրության ինստիտուտի, ինչպես նաև Մոսկվայի Ա. Ս. Պուշկինի անվան կերպարվեստի թանգարանի հետ համատեղ[1]։

27 տարուց ի վեր կատարվող այս պեղումները գրեթե լրիվ բացեցին Էրեբունիի միջնաբերդը, որը մի հսկայական եռանկյունաձև հատակագիծ ունեցող հնագիտական համալիր է։ Այստեղ ընդարձակ հրապարակը կառուցապատված է Խալդի աստծո մոնումենտալ տաճարով, Արգիշտի I-ի պալատական կառույցով, Սուսի կոչվող տաճարով, ինչպես նաև միջնաբերդի տնտեսական շենքերի շարքով։ Միջնաբերդը ամրացված է հզոր բերդապարիսպներով, որոնց մնացորդները հարավարևելյան մասում կանգնած են երեք իրար զուգահեռ շարքով և որոնց երբեմնի 12 մետր բարձրությունից ներկայումս պահպանվել է միայն 5—6 մետր։ Պատերը մինչև այդ բարձրությունը եղել են քարից, իսկ դրանցից վեր՝ հում աղյուսից։ Միջնաբերդի շենքերի պահպանված մնացորդները այնքան պարզ են արտահայտում նր-

---

1 Պեղումների ղեկավար Կ. Լ. Հովհաննիսյան

К. Л. Оганесян. Архитектура Эребуни. Арин-берд I АН Арм. ССР, Ереван, 1961.



Նկ. 41. Էրեբունիի հիմնադրման մասին Արգիշտի I-ինի սեպագիր արձանագրությունը։

րանց երբեմնի ճարտարապետական ձևերը, որ առանձին շենքերի վերակազմությունը միանգամայն հնարավոր դարձավ, հաճախ իրենց բոլոր մանրամասնություններով, և նույնիսկ որմնանկարների վերարտադրություններով։ Միջնաբերդում հայտնաբերված այդ որմնանկարները թեև բացված են առանձին պատառիկների ձևով, սակայն որոշակի գաղափար են տալիս երբեմնի հորինվածքների մասին։ Այստեղ տեսնում ենք զանազան երկրաչափական մոտիվներ, մարդկանց ու կենդանիների պատկերներ, աստվածների թափոր, սրբազան կենդանիներ, կենաց ծառ, իսկ աշխարհիկ թեմաներում՝ որսի, անասնապահության ու երկրագործության տեսարաններ և այլն[1]։

Այս որմնանկարների հիմնական մասը մեզ է հասել այսպես՝ Էրեբունիի պատմական կյանքի արդեն ուշ շրջանում, մեզ անհայտ նպատակներով, որմնանկարների ու կավածեփ բեկորների մնացորդները հավաքել են միմյանց վրա, մեծ դահլիճի հյուսիսարևմտյան մասում և ստեղծել մի հարթակ, որը նույնությամբ հասել է մինչև մեր օրերը։

Ուրարտուի անկումից հետո Էրեբունիի շենքերը հիմնականում կանգուն էին ու այնքան լավ պահպանված, որ աքեմենյանների օրոք դրանց մի մասը վերակառուցվել է նոր կարիքների համար։ Այսպես ստեղծվեցին ապադանան, 36 սյունանոց մոնումենտալ դահլիճը, պաշտոնական հանդիսավոր ու շքեղ ընդունելությունների համար, ինչպես նաև կրակի երկու տաճարները։ Սրանցից մեկում հայտնաբերվել են երկկենտրոն կամարներ, որոնք այդ կոնստրուկտիվ ձևի ամենահնագույն օրինակներն են Հայաստանում։ Հավանաբար դրանք ունեն ուրարտական ծագում, քանի որ թաղակապ ծածկը և կամարակապ մուտքերը լավ հայտնի էին ուրարտական վիմափոր կառույցներում։

Պեղումները միջնաբերդի տարածքում հայտնաբերեցին 23 սեպագիր արձանագրություն, այդ թվում Արգիշտի I-ի երկու նույնատիպ բովանդակությամբ արձանագրությունները, որոնք պատմում են Էրեբունու հիմնադրման մասին։

Թեև Էրեբունի քաղաքի կառուցման մասին

[1] Կոնստանդին Հովհաննիսյան։ Էրեբունիի որմնանկարները, ՀՍՍՀ ԳԱ հրատ. Երևան, 1973։

հայտնի էր առաջ, դեռևս Վանի տարեգրությունից, որը պատմում է քաղաքի հիմնադիր Արգիշտի I-ի գահակալության 5-րդ տարվա իրադարձությունների մասին, սակայն Արին-բերդի շրջակայքում քաղաքի տեղադրության հանգամանքները պարզվել են միայն այժմ, հիշյալ արձանագրության կապակցությամբ։ Այնտեղ ասվում է՝

«Խալդի աստծո մեծությամբ Արգիշտին, Մենուայի որդին, այս հզոր բերդը կառուցեց քաղաք էրեբունի անվամբ, Բիայնիլի երկրի հզորության համար ի սարսափ թշնամի երկրների։ Արգիշտին ասում է, երկիրը ամայի էր այնտեղ ձեռնարկեցի ես գործեր հզոր։ Խալդի աստծո մեծությամբ Արգիշտին, Մենուայի որդին, թագավոր հզոր, թագավոր Բիայնիլի երկրի, տերը Տուշպա քաղաքի»[1] (Նկ. 41)։

Քաղաքի հիմնադրումը այնքան կարևոր էր երկրի համար, որ Արգիշտին այդ կապակցությամբ պատրաստում է հատուկ խորհրդանիշ, զինվոր պատկերող արձանիկ, որի կլոր պատվանդանի վրա գրված էր՝ «Խալդի աստծուն՝ իմ տիրոջը այս շաէ իրը Արգիշտին Մենուայի որդին փայտից պատրաստեց, երբ կառուցվել էր էրեբունի քաղաքը»։ Այդ արձանիկը գտնվեց Կարմիր բլուրի միջնաբերդի պեղումների ժամանակ։

Այս արձանագրությունը, ինչպես նաև պեղումներով հայտնաբերված միջնաբերդի հնագիտական նյութը ամբողջությամբ վերցված, հիմք ծառայեցին 1968 թվի հոկտեմբերի 19—22-ը մեծագույն շքեղությամբ տոնելու Երևանի հիմնադրման, հիմա արդեն լայնորեն հայտնի, 2750 տարեթիվը։ Համաժողովրդական տոնի վերածված Երևանի հոբելյանը, այդ օրերին էրեբունիի հինավուրց միջնաբերդը բերեց, ընդհանուր խանդավառության մթնոլորտում, շուրջ 300 000 այցելու[1]։ Այդ օրը՝ հոկտեմբերի 19-ին, իր դռները բացեց էրեբունիի հիմնադրմանը նվիրված նորաստեղծ թանգարանը, հնագիտական հինավուրց տարածքի վրա։ Թանգարանում ցուցադրված են էրեբունիի պատմական անցյալին վերաբերող հնագիտական նյութեր, սեպագիր արձանագրություններ և դրանց թվում էրեբունիի հիմնադիր Արգիշտի առաջինին պատկանող որոշ անձնական իրեր։

Իր կառույցների պատմական մեծ նշանակությամբ հանդերձ, հինավուրց էրեբունիի համալիրը այսօր էլ անընդմեջ շարունակում է ներգործել մարդկանց վրա էմոցիոնալ մեծ ուժով[2]։

## Բ) ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄ

### ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ԿՈՆՍԵՐՎԱՑԻԱ

**Արին-բերդ կամ պատմական էրեբունի.**— *Բանաստեղծական գեղեցիկ խոսքով է նկարագրել հնագիտական տարածքների մնացորդների պատմական վախճանը նիգերիացի բանաստեղծ Մորու Իոսուֆու Գիվան, իր «Բենինն» ոտանավորում.*

«...Ու ամեն ինչ անցավ,
Այնտեղ ուր երեկ դեպ երկինք էր խոյանում
Մայրաքաղաքը գոռոզ արքաների,
Այսօր վաղնջական քաոսն,
Որ դարն ապրած կավից ու քարից
Ձուլվեց լռության անհուն գրկում»[2]։

Այլ էր, սակայն, կյանքը այստեղ էրեբունիում, այն չէր մարում դանդաղորեն, ինչը սովորական էր անցյալի գիրկը գլորվող հինավուրց հնագիտական կոթողներին։ Այն մարմնավորվեց նորաստեղծ ձևերում ու շարունակեց պատմական երթը մինչև մեր օրերը։ Այսպիսով, ամենայն իրավամբ կարելի է ասել, որ ուրարտական

1 Թարգմանությունը Ն. Հարությունյանի։

2 Թարգմանությունը ռուսերենից մերն է։

1 Ա. Վ. Խաչիկյան։ Երևանի Հոբելյանը— քաղաքի 2750-ամյակի Հոբելյանական տարեգրության։ «Հայաստան» հրատարակչության, Երևան, 1972 թ.։

2 Դիտելով հուշարձանի մնացորդները, նրա հնագիտական նյութը, վերանորոգված կառույցները, ինչպես նաև ծանոթանալով սեպագիր արձանագրությունների բովանդակությանը և էրեբունիի պատմական անցյալին, ամբողջությամբ վերցրած, տիեզերագնաց Ա. Ա. Լեոնովը պատվո գրքում գրում է. «Փառք ու շնորհակալություն Ձեզ՝ մեծ պատմության արժանավորներին և փառք՝ Ձեզ արժանի այդ մեծ պատմությանը»։



Նկ. 42. Էրեբունի— Խալդիի տաճարը վերանորոգման ընթացքում։



Նկ. 43. Էրեբունի— Արտաքին սյունասրահը վերանորոգված վիճակում։

հինավուրց Էրեբունի քաղաքի փառքի ու բուռն կյանքի տարիները ոչ թե անցյալում են, այլ գալիքում՝ Երևանի ծաղկման ու բարգավաճման մեջ։

Էրեբունիում հարկ եղավ ոչ միայն կոնսերվացնել, այլև վերականգնել նրա առանձին մասերի ճարտարապետական ձևերը։ Ու թեև այդ բացառություն էր ընդհանուր կանոնից, սակայն ինչպես արդեն ասվեց, պայմանավորված էր հուշարձանի առանձին հատվածների խիստ յուրովի և ինքնատիպ ձևերի ու հորինվածքների պահպանության անհրաժեշտությամբ։ Ընդհանուր ձևերի վաղնջական կերպի պահպանման ձգտումով վերականգնումները կատարված են իրենց իսկ համապատասխան շինանյութով ու կառույցների նախնական կոնստրուկտիվ միջոցներով։ Նման ձևով հինավուրց Էրեբունիի կառույցներից վերականգնվել են շքամուտքը, մասնավորապես Խալդիի տաճարը, պերիստիլ բակը, փոքր դահլիճի ձևերը ու արտաքին պարիսպների առանձին հատվածները[1]:

Պեղումների ընթացքում բացված արտաքին սյունասրահի (շքամուտքի) ընկած բեկորները իրենց դասավորությամբ արդեն իսկ թելադրեցին նախնական ձևերը, որպես մի սրահ, արտաքին ճակատային մասում, 6 սյունով, որոնցից տեղում պահպանված էին բոլոր վեց բազալտե խարիսխները, փայտյա սյուների տրամագծերի հետքերը վրան։ Սա արդեն բավական կարևոր կռվան էր ընդհանուր ձևի վերանորոգման համար, իսկ նրա առջև գծագրվող լայնատարած աստիճանի մնացորդները լրացրեցին կառույցի ընդհանուր տեսքը։ Ինչպես աստիճանները, այնպես էլ պատերը վերաշարվեցին կոպիտ մշակված տուֆ քարով, համաձայն տեղում պահպանված մնացորդների։ Սակայն այդ շարքերի հետագա ամրությունը ապահովելու

[1] Աշխատանքների ընդհանուր ղեկավար և վերականգնման նախագծերի հեղինակ Կ. Հովհաննիսյան։ Շինարարության ղեկավար Լ. Բարսեղյան։

նպատակով, կավի փոխարեն օգտագործվեց բետոնի շաղախ, որն ի դեպ, իր արտաքին տեսքով լիովին մերվեց կավի գույնին։

Պեղումների ընթացքում հայտնաբերվեցին նաև որմնանկարների առանձին պատառիկներ, որոնց միջոցով հնարավոր դարձավ վերարտադրել նրանց ընդհանուր նախնական հորինվածքը, մանավանդ որ այդ բեկորները հար ու նման դուրս եկան Խալդիի տաճարի և պալատական փոքր դահլիճի վաղուց արդեն հայտնի որմնանկարներին։

Ինչպես այստեղ, սյունասրահում, այնպես էլ Արին-բերդի միջնաբերդի մյուս դահլիճներում ու սենյակներում հայտնաբերված ծածկերի առանձին մասերը հնարավորություն տվեցին վերականգնել ծածկի կոնստրուկտիվ համակարգը։ Այն բաղկացած է եղել փայտյա հեծաններից, որոնց վրա փռել են եղեգ ու կավահող։ Սա ուրարտական հարթ ծածկի այն տարածված եղանակն է, որը լայնորեն կիրառվել է և իր տարբերակներն ունի Կարմիր բլուրում։ Բացի ծածկի վաղնջական ձևի վերարտադրությունից, Էրեբունիի սյունասրահը խոնավությունից ապահովելու համար լրացուցիչ ծածկվեց բետոնի շերտով, ինչպես նաև թիթեղապատվեց։

Սակայն այս միջոցառումը ևս բավարար չեղավ և երբ 1974 թվականին խոնավությունից զգալիորեն վնասվեցին կառույցի պատերն ու հատկապես որմնանկարները, նոր միջոցառումներ ձեռնարկվեցին կառույցի ապահովության համար[1]: Ստորգետնյա, ինչպես նաև վերգետնյա ջրերի հոսքը կանխելու նպատակով վերականգընվեց նրան պատնեշող, սյունասրահի հյուսիսային կողմում ժամանակին գոյություն ունեցող, իսկ հետագայում գրեթե լրիվ քայքայված պատը, և վերացվեցին բերածո հողի այն զանգվածները, որոնց վրայից անձրևաջրերը ներծծվում էին կառույցի մեջ։ Այդ միջոցառումը վերջինիս հուսալիորեն ապահովեց հետագա քայքայումից։

Միջնաբերդում կատարված մյուս աշխատանքները մասնակի վերանորոգումների բնույթ ունեին, ինչպես օրինակ սյունազարդ բակի և նրան կից պալատական փոքր դահլիճի, այնպես էլ նրանց միջև գտնվող նախադահլիճային սենյակների վերանորոգումները։ Այստեղ առանձին հատվածների ձևով վերականգնված են բակի սյունաշարքը, որից տեղում պահպանվել են փայտյա սյուների քարե խարիսխները, վրան պարզ դրոշմված 0,19 մ տրամագծով սյուների հետքերը։ Սյունաշարքի հետ միասին վերանորոգվեցին նաև բակի պատերը, իսկ ամբողջ այդ համակարգը պսակվեց ծածկով, որի կառուցվածքը իր նախնական լրիվ ձևով հայտնաբերվեց պեղումների ընթացքում ընկած ու ամենևին չվնասված մի բեկորի մեջ։ Բակի պատերը, որոնք մինչև 2,40 մ բարձրությամբ քարից շարվածք են ունեցել, իսկ նրանից վեր՝ հում աղյուսից, ներկված մուգ կարմիր գույնով։ Հակառակ դրան, պալատական Սուսի տաճարի պատերը կապույտ գույնի էին, ինչը և ստեղծում էր այդ հակադիր գույների ներդաշնակ միասնություն, և դրանով ամբողջ տարածքին հաղորդում գունեղ արտահայտչականություն։ Դրան համապատասխան սյունազարդ բակի վերականգնված մասերը ստացան իրենց հինավուրց կարմիր գույնը, իսկ պատերի վերնամասում վերարտադրվեց զարդագոտին։ Վերջինիս առանձին բեկորները հայտնաբերվել էին պեղումների ընթացքում[1]:

Նույն սկզբունքով մասնակիորեն վերականգընվեց նաև փոքր դահլիճի արևմտյան պատը, որի որմնանկարները առավելապես ուշագրավ են։ Թեև պատերի վերնամասերի եզրազարդերը կրկնում էին բակի զարդագոտիները, սակայն, պատի միջին մասում, հատակից 0,42 մետր բարձրությունից սկսվող և ամբողջ պատերը 1,28 մետր լայնությամբ շրջանցող որմնանկարները ունեին միանգամայն այլ հորինվածք։ Այս շերտի կենտրոնական, առավել լայն մասում պատկերված էին ծնկաչոք ցուլեր, առյուծներ ու ներս ընկած կողմերով քառակուսիներ, որոնք համապատասխանորեն խորհրդանշում էին՝ Թեյշեբա, Խալդի և Արևի աստվածությունները։ Այս շերտի վերևի մասում վերականգնված է արմավենիների, աստիճանաձև աշտարակների, ինչպես նաև սրբազան ծառերի ու նրանց կողքերին կանգնած աստվածների շարքը։ Սրբազան ծառերի, ինչպես և կախված պտուղների շարքերը առկա են որմնանկարների նաև ներքևի մասում։

---

[1] Վերանորոգող ճարտարապետ Շ. Մակյան։

[1] Կ. Հովհաննիսյան. Էրեբունիի որմնանկարները. ՀՍՍՀ ԳԱ հրատ. Երևան, 1973 թ.

Միջնաբերդի, նույնպես մասնակի վերականգնված, մյուս կառույցը Խալդի աստծու տաճարն է, որն այնտեղ հայտնաբերված սեպագիր արձանագրության համաձայն կառուցել է Արգիշտի 1-ինը։ Տաճարը բաղկացած է ընդլայնական մեծ դահլիճից, օժանդակ սենյակից, սյունասրահից և աշտարակավոր կառույցից։ Հին Արևելքում աշտարակներ ունեցել են միայն այն տաճարները, որոնք նվիրաբերված էին երկրի գլխավոր աստծուն։ Քանի որ, տվյալ դեպքում, Էրեբունիի տաճարը նվիրված է Խալդիին՝ երկրի գլխավոր աստծուն, ապա այստեղ էլ այդ ավանդության համաձայն վեր էր խոյանում աշտարակը, որն ուրարտերեն կոչվում էր burgana։ Ն. Մառն ասում էր, որ burgana-ի ձևով այս բառը հանդիպում է ուրարտական սեպագիր արձանագրություններում, պաշտամունքային տերմինի նշանակությամբ, այն է՝ որպես «աշտարակ տաճարի առջևում»[1]։ Ի դեպ burgana բառը շատ մոտ է հայերեն «բուրգ» բառին, որը աշտարակ հասկացողության հոմանիշն է։

Խալդիի տաճարի պատերի առանձին մասերը պահպանվել էին 2,0—5,5 մետր բարձրությամբ, և ինչպես միջնաբերդի մյուս կառույցներում, որմածքի ներքևի շարքերը քարի ցեն, իսկ վերևի մասերը, ամբողջ burgana-ն, հում աղյուսից։ Կառույցի բոլոր ծածկերը հարթ էին, սրահի սյուները փայտից էին՝ 0,43 մետր տրամագծով։ Այդ չափը դրոշմված էր ինչպես այստեղ, այնպես էլ միջնաբերդի մյուս կառույցներում, խարիսխներից մեկի վրա։

Տաճարը, ինչպես արդեն ասվեց, ապրել է պատմական երկու կյանքով՝ ուրարտական ու աքեմենյան դարաշրջաններում, որը և արտահայտվել է կոնստրուկտիվ տարբեր լուծումներում։ Այս կապակցությամբ անհրաժեշտ էր շենքի վերանորոգման ու մասնակի վերականգնման մեջ դրսևորել նշված երկու դարաշրջանները, իրենց այդ տարբեր արտահայտություններով։ Ուրարտական տաճարը, այս առումով, արտահայտվեց սյունասրահի ճարտարապետական ձևերի լրիվ վերականգնումով. հուշարձանի բարձրությունը ընդունվեց շուրջ 6,5 մետր չափի, որին համապատասխանում են բոլոր մյուս տվյալները (Նկ. 42.)։ Տաճարի հարավ-արևմտյան մասնակի վերականգնված ճակատը, որը միևնույն ժամանակ միջնաբերդի արտաքին եզրագծային պատն է, հիմնված է տեղանքի լանջին և իր նախնական մոնումենտալ տեսքով պետք է որ իշխեր միջնաբերդի շրջակա տարածքի վրա։

Տաճարը ներքուստ, ինչպես նաև սյունասրահի արտաքին պատերը հարդարված են եղել ճոխ որմնանկարներով։ Այստեղ առավել նշանակալիցը առյուծի վրա կանգնած Խալդի աստծու պատկերն է, որի մնացորդները հայտնաբերվել են պեղումների ընթացքում, նույն տեղում, 1951 թվականին։

Տաճարին հետագայում կցված մասը, որը աքեմենյան դարաշրջանի ապադանան է, վերանորոգման ընդհանուր պրոցեսում մնաց գրեթե իր նախնական տեսքով։ Դրանով, ուրարտական և աքեմենյան կառույցների խիստ հակադիր մնացորդները ակնառու են դարձնում տվյալ հնավայրի տարածքում տարբեր դարերի ճարտարապետական տարբեր ոճեր արտահայտող սահմանագիծը։

Միջնաբերդի մյուս հատվածներում մասնակիորեն վերականգնված են արտաքին պարիսպների առանձին հատվածները։ Սա պայմանավորված էր նրանց տեխնիկական վթարային վիճակով, ինչպես նաև հուշարձանի պահպանության անհրաժեշտությամբ՝ պետք էր տեղ-տեղ հենապատերով ամրապնդել (նույնիսկ 5 մետր բարձրությամբ) պալատական տեղանքի հողաշերտերը։

Սակայն առավել մեծ աշխատանքներ են կատարվել միջնաբերդի տարածքի բարեկարգման ուղղությամբ և հատկապես, հետիոտնի ու տրանսպորտի համար ճանապարհ բացելիս։ Այդ թվում նշենք անցումների սալահատակումները, բլրի լանջերի ծառատնկումները ու կանաչապատումը, ջրատարի անցկացումը, էլեկտրիֆիկացիան և այլն։

Մեծ նշանակություն ունեցավ թանգարանի ստեղծումը, որտեղ հավաքված են Էրեբունիին վերաբերող ինչպես պեղումներով հայտնաբերված նյութերը, այնպես էլ մակետներ, քարտեզներ, լուսանկարներ, գծագրեր և այլ նյութեր, որոնք ամփոփում են հինավուրց քաղաքի պատմական կյանքի տարբեր փուլերը։

Հնագիտական մյուս հուշարձաններում՝ Կար-

[1] Н. Я. Марр. Ереруйская базилка, Армянский храм V—VI вв. в окрестностях Ани. Изд. АН Армянской ССР. Ереван, 1968 г., стр. 32.

*միր բլուրում, Դվինում, Շենգավիթում, ինչպես նաև Գառնիում հիմնականում կատարվել են միայն կոնսերվացման աշխատանքներ, այն անհրաժեշտ սահմաններում, որոնք ապահովում են նրանց կայունությունը արտաքին միջավայրի բնական քայքայիչ ուժերի ներգործությունից։*

*Այդ հուշարձաններում ամրացված են պատերը, անաստիլոզի սկզբունքով[1], ընդ որում նախնական շաղախի փոխարեն օգտագործված է բետոն, որը մատնանշում է տվյալ հատվածներին վերաբերելը։ Մի քանի դեպքում էլ պատերը հասցված են որոշ բարձրության, որից հետո դրանք ծածկվել են բետոնե կամ երկաթբետոնե սալերով, որմածքը հետագա քայքայումից ապահովելու համար։ Նման ձևով ամրացված են հնագիտական տարածքներում հինավուրց կառույցների պատերը։ Պահպանման այս ձևը վերջիններիս համար ընդունելի և արդյունավետ է միայն այն դեպքում, երբ շարվածքը քարից է։ Հում աղյուսի դեպքում (Արին-բերդ, Կարմիր բլուր) պատը շարունակում է քայքայվել, սալերը որոշ ժամանակից հետո կախված վիճակում են մնում, մի բան, որն անշուշտ հաջող լուծում չէ։*

*Դվինի հնագիտական տարածքում մասնակի վերականգնվեց ավերված տաճարի մի փոքր հատվածը։ Դա հնարավորություն տվեց պահպանել իր ժամանակի այդ խոշոր կառույցի արտաքին ճակատները, եզրագիծը և ներքին պատերի կառուցողական առանձնահատկությունները։*

*Նշենք նաև, որ բարեկարգված այս հնագիտական տեղամասերում կան գործող թանգարաններ, որտեղ գծագրերը, մակետները լրացնում են հնագիտական տեղամասերի տարածական ընդհանուր պատկերը։*

*Հետևաբար այս առանձին հուշարձանների մասնակի վերականգնումներից ստացված տպավորությունների հանրագումարը վեր է հանում հնագիտական ընդհանուր տարածքի, որպես մեկ ընդհանուր օրգանիզմի պատմաճարտարապետական կերպը, մյուս կողմից օժանդակում է նրանց հետագա նորոգումներին։*

## ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ՇԵՆՔԵՐԻ ԿՈՆՍԵՐՎԱՑԻԱ

**Գեղարդավանք.—** *30-ական թվականների ըսկզբում կոնսերվացված առաջին հուշարձաններից է Գեղարդավանքը կամ Այրիվանքը։ Հուշարձանախումբը գտնվում է Կոտայքի շրջանի Գողթ գյուղից 4 կմ հեռավորության վրա, այնտեղ ուր իրար վրա կուտակված ժայռերը վեր խոյանալով ստեղծում են վեհատեսիլ բնապատկեր, բարձրում թողնելով երկնակամարի կապույտ պատառիկ։ Գեղարդավանքը Հայաստանի պատմական ճարտարապետության եզակի վիմափոր կառույցներից է։ Այստեղ ամենուրեք մարդուն ուղեկցում է այն զգացումը, որ ուր էլ ուղղես հայացքդ, ընկղմվում ես պատմության խորքերի զարմանահրաշ անցյալը։ Նրա շինարարական ավանդույթները գալիս են խոր անցյալից, դեռ ուրարտական ժամանակներից և որոնց հայտնի օրինակները պահպանվել են Ջրմ-Ջրմ-Դաղի, Թոփրախ-Կալեի, Վան քաղաքի արվարձաններում։ Վիմափոր կառույցներ ենք տեսնում նաև միջնադարյան ստորգետնյա Անիում, Ազիզբեկովի շրջանի Մարտիրոս գյուղի շրջակայքում, Գորիսի շրջանում և այլուր։ Թվարկած հուշարձանների շարքում Գեղարդավանքը ճարտարապետական ձևերի կատարելությամբ և շինարարական արվեստով առանձնահատուկ տեղ է գրավում։ Պատմագրությունից հայտնի է, որ Գեղարդավանքը հիմնադրվել է IV դարում, սակայն այդ հեռավոր ժամանակների կառույցներից և ոչ մեկը չի պահպանվել, իսկ կանգուն շենքերը պատկանում են հետագա, ավելի ուշ դարերին։ Դրանց մի մասը վերերկրյա շինություններ են, իսկ մյուսները, որոնցով Գեղարդը առավելապես հայտնի է ու բնորոշ, վիմափոր կառույցներ են։*

*Վերերկրյա շինություններից են Զաքարյաննե-*

---

[1] *Նման դեպքերի համար օրինակելի է անաստիլոզային սկզբունքը։ Սակայն երկմտանք է առաջացնում, անաստիլոզային այն ձևը, որը կիրառվեց Հունգարիայում ու հատկապես Վիշեգրադի Դոնժոնում։ Այստեղ թաղից ընկած քարերը բարձրացվել ու ամրացվել են պողպատե ցանցավոր կաղապարին, որը կրկնում է անհետացած թաղի նախնական ձևը։ Սա իհարկե, բեկորների պահպանության թանգարանային ձև է և ոչ թե հուշարձանի վերանորոգում։*



*Նկ. 44. Գեղարդավանքի չափագրությունները։*

րի օրոք հիմնված եկեղեցին (1212 թ.), և նրա գավիթը 1225—30 թթ.)։ Գեղարդը երբ անցնում է Պռոշ իշխաններին, նրանք այստեղ հիմնում են հանրահայտ վիմափոր կառույցները՝ երկու եկեղեցին, գավիթը, ինչպես նաև իրենց տոհմական դամբարանը ու մի շարք խուցեր, վանքի տարածքի ժայռերի մեջ փորված, որոնց հարթեցված մակերեսների վրա քանդակված են ավանդական խաչեր։

Համալիրի շրջապարիսպներից դուրս գտնվում է XII դար թվագրվող մի մատուռ, որն այդ երկու շինարարական սկզբունքների միացյալ արտահայտությունն է։ Շենքի մի մասը, որը վիմափոր է, ավարտվում է անմիջապես ժայռերի վրա նըստող սրբատաշ կամարով, ստեղծելով բնության և ապառաժների հետ ձուլված մի ինքնատիպ ճարտարապետական ձև։

Արևմտյան վիմափոր եկեղեցու գմբեթի տակ, ավանդական սովորությանը հակառակ, որպես հազվադեպ բացառություն, պահպանվել է շինարար ճարտարապետի՝ Գալձակի անունը կրող արձանագրությունը։ Հավանական է, որ այդ շարքի բոլոր մյուս կառույցները ևս Գալձակի գործերն են, քանի որ դրանք միևնույն շինարարական ժամանակաշրջանի արդյունք են։

30-ական թվականների սկզբին, թեև հուշարձանախմբի ընդհանուր տեխնիկական դրության մեջ չկար վթարային լուրջ վիճակ, սակայն նրա առանձին հատվածներում, այնուամենայնիվ, երևացին քայքայված մասեր ու վտանգավոր պրոցեսներ։ Համեմատաբար վատթար վիճակում էին գտնվում գավթի հարավարևելյան անկյունը և նրան կից տաճարի համապատասխան հատվածը։ Մեր հետազոտությունները տվյալ քայքայումների հետ կապված պատճառների հայտնաբերման ուղղությամբ պարզեցին, որ դա պայմանավորված է անձրևային ջրերի հոսքով, որոնք պատերի որմածքից դուրս են մղել շաղախը և ճակատային շարքերի քարերը փքվելով վտանգել են կառույցների կայունությունը։ Նման վիճակի մեջ էին գավթի ու տաճարի մյուս ճակատների առանձին հատվածները, ինչպես նաև պատուհանների շրջակալների ու քիվերի առանձին հատվածները։ Առավել վտանգավոր վիճակ էր ստեղծվել գավթի ներսում։ Վիմափոր եկեղեցու ժայռի ճեղքերից դուրս ելնող աղբյուրի ջրերը ստորգետնյա



Նկ. 45. Գեղարդավանք. ընդհանուր տեսքը մուտքից։

ուղու փակվելու պատճառով հավաքվում էին գավթում և ներծծվելով քայքայում ինչպես հատակի սալերը, այնպես էլ, հատկապես, հուշարձանի հիմքերը։

Այս կապակցությամբ 1934 թվականի հոկտեմբերին սկսվեցին հուշարձանախմբի կոնսերվացման աշխատանքները[1]։ Պատերի ամրացման համար հարկ եղավ կատարել մասնակի վերաշար, ինչպես նաև, պատերի ներարկում, խառը շաղախով։ Ներարկումները կատարվեցին որմածքների այն հատվածներում, որտեղ չկար ճակատների վերաշարի անհրաժեշտությունը։ Վերաշարի եղանակով ուղղվեցին նաև գավթի հարավային ճակատի տեղաշարժված քիվերը, ինչպես նաև զարդաքանդակ քարերը (Նկ. 46—47)։ Աշխատանքային այդ պրոցեսը չպահանջեց նոր տաշված քարեր, քանի որ հները, որոնք ամուր բազալտից էին, անվնաս պահպանվել էին իրենց տեղերում։ Դրանց շնորհիվ, կոնսերվացումից հետո, հուշարձանները նույնությամբ պահպանեցին իրենց վաղնջական տեսքը։ Մյուս կարգի նորոգումները կապված էին ջրերի հեռացման հետ։ Ինչպես պարզվել էր, գավթի սալահատակի տակ գտնվող ջրահեռացման համար ժամանակին ստեղծված համակարգը, ամբողջովին քայքայվել էր ու այնքան ավերվել, որ չէր նշմարվում նույնիսկ նրա ուղղությունը։ Հարկ եղավ հանել հատակի սալե-

[1] Տվյալ աշխատանքները ՀՍՍՀ կենտգործկոմի միջոցառումն էր, որի կատարումը հանձնվեց տողերիս գրողին։ Քարագործ-որմնադիրների բրիգադիր Խ. Հակոբյան։



Նկ. 46. Գեղարդավանք. վերանորոգված ճակատները։



Նկ. 47. Գեղարդավանք. գավթի հարավային ճակատի վերանորոգված հատվածը։



Նկ. 48. Գեղարդավանք. վիմափոր խորաններ տանող վերանորոգված աստիճանները։

րի մի զգալի մասը, որից հետո, հիմնականում նորից վերստեղծվեցին ջրատար ուղիների քարային կառույցները, իրենց ամբողջ երկարությամբ, ինչպես հուշարձաններում, այնպես էլ նրանից դուրս։

Այդ նույն վերանորոգումների հետ մեկտեղ, հուշարձանների տարածքում կատարվեցին նաև մասնակի բարեկարգման աշխատանքներ՝ մուտքի մասում, ինչպես նաև արտաքին պարիսպների առանձին հատվածներում որմածքի վերաշար և լրացումներ նոր քարերով։ Տեղանքի տարբեր մասերում անցումների համար կառուցվեցին քարե աստիճաններ, ինչպես նաև բարեկարգման հետ կապված մի շարք այլ աշխատանքներ։

Հարկ է նշել մի կարևոր հանգամանք ևս։ Ժամանակին վթարվել էին հուշարձանախմբի վերերկրյա մեծ եկեղեցու ու գավթի տանիքները, որոնք ծածկված էին հարթ տաշված սալաքարերով, առանց ելունների։ Ծածկի նման ձևը, մյուս բոլոր հայտնի ձևերի համեմատությամբ, շատ ավելի խոցելի է, ու հավանաբար, դա է եղել պատճառը, որ անձրևաջրերը ներծծվել են շենքերի մեջ։ Այս կապակցությամբ 20-ական թվականների միակ հնարավոր միջոցառումը համարվեց նման ծածկերի թիթեղապատումը և ինչպես հաստատեց անցած կեսդարյա ժամանակաշրջանը, այն ապահով վիճակում պահպանեց շենքերի ներքին տարածությունները։ Միաժամանակ նրշենք, որ նույն թիթեղյա ծածկը խորթ է նրա արտաքին կերպին և մեծապես վնասում է հոյակերտ համալիրի գեղարվեստական արտահայտչականությանը։ Բանն այն է, որ դրանով ևս չի ավարտվում անձրևաջրերի հոսքը դեպի հուշարձանախմբի առանձին կառույցների ներքին տարածությունները ու հատկապես վիմափոր կառույցները։ Բազմաթիվ հետազոտությունները պարզել են, որ այդ ջրերի ակունքները գոյանում են շրջապատի լեռնալանջերի ընդերքում և այնտեղից էլ ստորգետնյա անտեսանելի ուղիներով հոսելով դուրս են գալիս վիմափոր կառույցների պատերի մանր ճեղքերից, մշտապես խոնավության մեջ պահելով դրանք։

Գեղարդավանքում կատարվելիք առաջնահերթ խնդիրներից է ժայռերի խոր դրենաժը, որը պետք է վերջնականապես ապահովի համալիրը ստորգետնյա ջրերից։

Հետագա տարիներին էջմիածնի կաթողիկոսության կողմից Գեղարդավանքում կատարվեցին բարեկարգման նոր աշխատանքներ։ Այստեղ մասնավորապես վերացվեցին բնակելի խարխլված









Նկ. 49. Էջմիածնի տաճար—չափագրություններ և նախագիծ։



Նկ. 50. Էջմիածնի տաճար. մույթը վերանորոգումից առաջ։



Նկ. 50 ա. Էջմիածնի տաճար. մույթը երկաթե պատյանների մեջ։

շենքերի այն հատվածները, որոնք չունեին քիչ թե շատ պատմական նշանակություն և դրա հետ միասին նորոգվեցին վանքի պատմության հետ առնչվող մի քանի այլ կառույցներ։ Մալահատակվեց հուշարձանախմբի բակը, այնտեղ աղբյուր կանգնեցվեց, ինչպես նաև կառուցվեց հարմարավետ շենք[1]։

**Էջմիածնի Մայր տաճար.—** Էջմիածնի Մայր տաճարը պատմական Հայաստանի վաղ քրիստոնեական ժամանակաշրջանի պաշտամունքային հնագույն շենքերից է։ Հիմնադրվելով IV դարի սկզբում և այդ ժամանակից ի վեր համարյա անընդմեջ լինելով գործող շենք, պարբերաբար վերակառուցվել է, հետագա դարերի ընթացքում մի շարք ձևափոփոխություններ կրելուց հետո, ի վերջո, ստացել է ճարտարապետական իր արդի տեսքը, որում տարբեր դարաշրջանների ձևերը միաձուլվել են մի միասնական հորինվածքում։ 1956 թվականին շենքի ներսում կատարված պեղումներով հայտնաբերված սրբատեղիի մնացորդները վկայում են[2], որ քրիստոնեական առաջին տաճարը Հայաստանում ստեղծվել է հեթանոսական կառույցի հիմքերի վրա, թերևս դրանով խորհրդանշելով նոր կրոնի հաղթանակը պատմության գիրկը գլորվող հին կրոնի նկատմամբ։ Հետևաբար կարող ենք տեսնել, որ Մայր տաճարի ճարտարապետությունը դուրս է գալիս սովորական տաճարի շրջանակներից, քանի որ նրա ծագումնաբանության հարցերը ավելի բարդ են, ընդգրկում են ինչպես պատմական հայ ճարտարապետության, այնպես էլ նրա շինարարական

---

[1] Աշխատանքների ղեկավար ճարտարապետ Ա. Գալիկյան

[2] Պեղումները կատարել Լ. Ա. Սահինյանը



Նկ. 50բ. Էջմիածնի տաճար. բետոնապատված մույթը։

մշակույթի զարգացման շղթայի վաղնջական շատ կարևոր օղակները։

Տվյալ հանգամանքի բերումով, դարերի ընթացքում անընդմեջ կառուցապատվելով ու վերակառուցվելով, իր արդի վիճակով վանքը մի ընդարձակ համալիր է, որտեղ տաճարից բացի այժմ կանգուն են վանքապատկան մի շարք աշխարհիկ կառույցներ՝ վեհարանի հին ու նոր շենքերը, հոգևոր դպրոցը, թանգարանը, տպարանը, բնակելի ու վարչական շենքերը, սեղանատունը, վանքի տնտեսական պահեստները, աղբյուրը, ինչպես նաև «Տրդատի դուռ» կոչվող հաղթակամարը և այլ կառույցներ։

50-ական թվականներին համալիրի գրեթե բոլոր կոթողները, այդ թվում Մայր տաճարը, գտնվում էին տեխնիկական անմխիթար ու տագնապալի վիճակում։ Այդ կապակցությամբ հարկ եղավ դրանց անհետաձգելի ու հիմնովին վերանորոգումը, որին ձեռնամուխ եղավ Հայկ. ՍՍՀ մինիստրների խորհրդի ճարտարապետության և հուշարձանների պահպանության վարչությունը[1]։

Վերանորոգումների հիմնական ուշադրությունը կենտրոնացավ Մայր տաճարի վրա։ Բայց, քանի որ վանական համալիրը դարերի ընթացքում կառուցապատվել էր տարերայնորեն, նրա ընդհանուր հատակագծի ու տարածական ձևերի առանձին հատվածներն էին միրճվել ճարտարապետական տձև կառույցներ. իրենց տարբեր, հաճախ անհարիր ձևերով մեծապես վնասում էին համալիրի ընկալմանը։ Հարկ եղավ անդրադառնալ նաև դրանց։ Ինչպես պարզվեց, այդ շենքերի մի մասը վաղուց արդեն իրենց դարն ապրած հնամաշ կառույցներ էին, զուրկ ճարտարապետական և պատմական որևիցե արժեքից։ Քանդման ենթակա այս կառույցները, որոնք մեկ հարկանի աղյուսակերտ բնակելի տներ էին, պահվում էին բազմաթիվ, դրսից անտեսանելի, փայտյա հենակների օժանդակությամբ, անընդմեջ գտնվելով վթարային վիճակում։ Տվյալ շենքերի վերացումից հետո բացվեց վանական համալիրի ընդհանուր տարածքը, անհրաժեշտ եղավ հիմնո-

1 Աշխատանքները կատարվել են Հայկ. ՍՍՀ Մինիստրների խորհրդի ճարտարապետության և հուշարձանների պահպանության վարչության միջոցով՝ Վարչության պետ Ռ. Ազիզբեկյանի և վարչության պետի տեղակալ Կ. Հովհաննիսյանի ընդհանուր ղեկավարությամբ։ Համալիրի վերանորոգման բոլոր շին-մոնտաժային աշխատանքները կատարվել են Հայսանտեխմոնտաժ տրեստի կողմից՝ նրա պետ ինժեներ Ա. Զորաբյանի անմիջական ղեկավարությամբ։



Նկ. 51. Էջմիածնի տաճար. գմբեթային համակարգի ամրացումը երկաթբետոնի կամարով։



Նկ. 52. Էջմիածնի տաճար. Ներքին տարածությունը վերանորոգումից հետո։

վին վերահատակագծել և տալ նրան տարածական նոր լուծումներ։

Այսպես, տարբեր նիշերի վրա գտնվող բակի երկու հարթակները իրար կապվեցին աստիճանաձև փոխանցումներով, որոնք էլ ավելի ընդհանրացրին վանական համալիրի տարածքի կազմավորման պատկերը։ Այն առանձնապես բարելավվեց կանաչապատման աշխատանքներից հետո, որոնք ընդգրկեցին վանական տարածքի գրեթե բոլոր ազատ տարածությունները, ինչը զգալիորեն բարեփոխեց նաև միկրոկլիման։

Այս աշխատանքներով վերականգնվեց ու շեշտվեց, գլխավոր մուտքից սկսած՝ Մայր տաճար— «Տրդատի դուռ»— նոր վեհարան, առաջներում նախատեսված երկայնական առանցքը, որին ենթարկվեցին բոլոր մյուս կառույցների ծավալները։ Ընդարձակվելով, տվյալ համալիրը ստացավ կուռ լուծում և ռացիոնալ ձևով օգտագործվող տարածություններ։ Նրանում զգալիորեն ընդարձակվեցին կանաչապատման մակերեսները, վերակառուցվեցին ներքուստ, ինչպես նաև արտաքուստ կանգուն շենքերը, իսկ ճարտարապետական առումով՝ նրանց ձևերն ու համաչափությունները ընդհանրացման ներդաշնակ միասնությամբ։ Այս բոլորից բացի համալիրը հարստացվեց նաև ճարտարապետական փոքր ձևերով, որոնք լրացրին ընդհանուր համալիրի համայնապատկերը, իրենց նրբագեղ զարդաքանդակների գծագրություններով։ Խոսքը հատկապես վերաբերում է խաչքարերի շարքին, որոնք հաջողությամբ ձևավորում են հյուսիսային եզրապատը և տարածքի առանձին մասերը։

Այստեղ իր նոր պատվանդանի վրա վեր է խոյանում նաև Էջմիածնի վանքապատկան տարածքի վաղնջականությունը հաստատող ուրարտական կոթողը, իրար հետ կապելով դարերը։ Հետագայում այստեղ վեր խոյացավ նաև, մեծ եղեռնին նվիրված խաչքարերից միահյուսված ձևերով, խիստ ինքնատիպ կոթող-հուշարձանը[1]։

Այսպիսով, տվյալ կոթողներով, Էջմիածնի համալիրը որպես հուշարձանախումբ, լրացվեց համապատասխան նոր արտահայտչականությամբ[2]։

Բարեկարգման աշխատանքներին զուգահեռ, նույն տարում հիմնովին կոնսերվացվեց Մայր տաճարի հինավուրց շենքը, պատմական հայ ճարտարապետության այդ նշանավոր կոթողը, շուրջ 1600 տարի վեր խոյացող հայկական քրիստոնեական կառույցների նահապետը։ Հուշարձանի վերջին ու հավանաբար հիմնովին վերանորոգումը կատարվեց 19-րդ դարի վերջին քառորդում։ Դա մասնավորապես վերաբերում է ծածկերին, գետնախարիսխներին և հուշարձանի շրջապատի սալահատակին։

Շենքի հիմնական վերականգնման, ինչպես նաև վանքի տարածքի բարեկարգման համար 1956 թվականին հիշյալ վարչությունը կազմեց հատուկ հանձնաժողով։ Աշխատանքները ընթացան շենքի տեխնիկական վիճակի վերհանման ու համապատասխան նախագծի կազմման, ինչ-

---

[1] Նախագիծը Ռ. Իսրայելյանի։

[2] Համալիրների բարեկարգման աշխատանքների նախագիծը կազմել է Ս. Սաֆարյանի ղեկավարած ճարտարապետական խումբը։

պես նաև տեղում նրա իրացման ուղղությամբ։

Շենքի տեխնիկական մանրազնին ստուգումները պարզեցին, որ ծածկերի քայքայված դրության հետևանքով անձրևաջրերը, անընդմեջ ներծծվելով պատերի մեջ, քայքայում էին որմածքը, վտանգելով շենքի կայունությունը։ Այս հանգամանքը անցյալում էլ միշտ եղել է շենքի պահպանության առումով նրա մտահոգության հարցերից առաջնահերթը։

Այս առումով, ըստ շենքի առանձին մասերի, դրությունը հետևյալն էր։

Պատերի շաղախի զգալի տոկոսը ողողված էր, հետևապես պահանջվում էր պատերի անհապաղ վերականգնում։

Մույթերը՝ տարբեր դարերի վերանորոգումների ընթացքում վերաշարվել էին ոչ միայն քարով, այլև տեղ-տեղ աղյուսով, խիստ քայքայված վիճակում էին։ Բազմաթիվ ճաքեր ունեին որմածքի քարերը։

Կամարները՝ գմբեթակիր կամարները, ինչպես նաև մույթերը, շարվածքում ունեին բազմաթիվ ճաքեր։

Թաղերը առանձնապես քայքայված էին հյուսիս-արևմտյան հատվածում և թանգարանային մասում։

Տաճարի որմածքի առանձին հատվածների հետազոտությունները ցույց են տվել, որ երևանյան տուֆը, որից կառուցված է տաճարը, եթե այն ապահովված է մթնոլորտային տեղումների ազդեցությունից, կարող է պահպանվել բարվոք վիճակում շուրջ 16 դար, հակառակ դեպքում նա հողմնահարվում է մեկ դարից էլ պակաս ժամանակամիջոցում[1]:

Խիստ քայքայված վիճակում էին նաև հուշարձանի որմնանկարները, որոնց առավել պահպանված մասը գտնվում էր գմբեթային մասում։ Մնացածը կարիք ուներ վերականգնման, ինչպես նաև վերանորոգման։

Մանրազնին հետազոտությունից հետո կազմվեց վերանորոգման մեկ ընդհանուր նախագիծ, որի հիման վրա էլ սկսվեց նրա կոնսերվացումը[2]:

Աշխատանքների հիմնական մասը ընթանում էր հուշարձանի միջին հատվածում, ուր անհրաժեշտ էր նախապես ամրացնել կենտրոնագմբեթ համակարգը իր չորս մույթերով։ Վերջիններս, ինչպես ասվեց, բազմաթիվ վերանորոգումների ժամանակ մի հատվածում, քարի շարքից բացի, ունեին նաև աղյուսի շարքեր։ Ուստի անհրաժեշտ էր հուշարձանի կայունությունը ապահովելու համար սկսել նրա չորս մույթերի ամրացումից, որոնք փաստորեն պահում էին ողջ կենտրոնագմբեթ համակարգը։ Այս գործում հարկ եղավ լայնորեն օգտագործել երկաթե և երկաթբետոնե կոնստրուկցիաները, որոնցով միայն հնարավոր դարձավ պահպանել այդ համակարգի նախնական ձևերն ու չափերը (Նկ. 50—51)։

Հետևաբար տաճարի ամրացման աշխատանքները սկսվեցին մույթերից, որոնք պարփակվեցին երկաթբետոնե հզոր պատյանների մեջ, որտեղ օգտագործվեց անկյունավոր երկաթ։ Լրացուցիչ ամրություն հաղորդելու նկատառումով բարձրության միջին մասը գոտևորվեց երկաթյա լայնաշերտ ժապավենով։ Նման ձևով ամրացնելուց հետո մույթերն իրար միացվեցին երկաթբետոնե հիմքերով, իսկ վերին մասում՝ երկաթբետոնե կամարներով, որի նպատակն էր ապահովել ողջ կենտրոնագմբեթ համակարգը։ Այսպիսով ստեղծվեց հուսալի կոնստրուկտիվ մի կուռ հորինվածք, որը և ապահովեց հուշարձանի գմբեթային համակարգի կայունությունը։

Մեծ չափերով երկաթբետոն օգտագործվեց նաև Մայր տաճարի մնացած հատվածներում։ Հատկապես հիմնովին ամրապնդվեց շենքի հյուսիս-արևմտյան մասի առաստաղի քայքայված թաղը։ Նույն ձևով ամբողջովին վերափոխվեցին տաճարի արևելյան մասին կցված թանգարանային շենքի քարե ծածկերը, որոնք գրեթե չէին ծառայում իրենց բուն նպատակին, իսկ վերանորոգումից հետո լիովին ստացան իրենց նախնական ձևը։

Բեմի հատվածի հնագիտական շերտում հայտնաբերված ու հողից ազատված ուրարտական սրբատեղիի տարածությունը նույնպես ծածկվեց երկաթբետոնով։ Հետագա ուսումնասիրությունների ու տուրիստական ցուցադրումների համար այն ունի համապատասխան մուտք և որը ներկայումս հենց այդ նպատակով էլ լայնորեն օգ-

---

1 З. А. Ацагорцян. Долговечность вулканических туфов Армении, стр. 56.

2 Հուշարձանի կոնստրուկտորական նախագծի հեղինակ ինժեներներ՝ Կ. Կ. Ալթունյան, Բ. Դանոյան (հուշարձանի ծածկի նախագիծ)։



Նկ. 53. Էջմիածնի տաճար. հարավային ճակատը առանց գմբեթի։



Նկ. 54. Էջմիածնի տաճար. գմբեթի կառուցման ընթացքը։

տագործվում է։ Ի դեպ, նույն նպատակով, ապակե ծածկի տակ են վերցված շենքի մույթերի հինավուրց խարիսխները, որոնք կառույցի հետագա դարերի վերափոխությունների հետևանքով այժմ մնացել են շենքի քարե հատակից շատ ավելի ցածր-ընկղմված հողի շերտերի մեջ։

Այսպիսով, դարավոր հուշարձանը, որպես ճարտարապետական մի հինավուրց օրգանիզմ ի ցույց է հանում իր պատմական անցյալի վաղնջական փուլերի հնամաշ ու դարն ապրած առանձին բաղադրիչներ։

Վերանորոգումների ընթացքում ամբողջ տաճարը սալհատակվեց բազալտ քարով։ Սակայն հետագայում վանքի տնօրինությունը այն մարմարապատեց։

Վերանորոգման աշխատանքները ամբողջացնելու և անձրևաջրերի ներթափանցումից տաճարը ապահովելու համար 1956 թվականին վերանորոգվեց նաև քարե տանիքը։ Ամբողջ տանիքը ինչպես նաև կենտրոնական մեծ գմբեթի առանձին սալաքարերը վերաշարելուց ու կարերը ներարկելուց հետո, բացառությամբ գմբեթի, մակերեսը թիթեղապատվեց։ Ներկայիս ծածկը հետագայում արել է վանքի տնօրինությունը։

Հուշարձանը խոնավությունից վերջնականապես փրկելու համար հարկ եղավ կատարել նաև դրենաժ, որից հետո միայն փակվեց խոնավություն առաջացնող ստորգետնյա ջրերի հոսքը դեպի հուշարձան։ Հուշարձանի պարագծի լայն շերտով արտաքուստ արված սալահատակումը հարմարավետ անցումներ և բարեկարգ տեսք ստեղծելուց բացի կառույցի հիմքերը ապահովում է



Նկ. 55. Էջմիածնի տաճար. գմբեթի կառուցման ընթացքը։

անձրևաջրերի ներծծումից։ Անցյալում, XIX դարի վերջին քառորդում, հավանաբար, այս նույն նըպատակով, կառուցվել են հաստաբեստ և շենքի ճարտարապետական ոճին չհամապատասխանող գետնախարիսխներ։ Պարզ է, ինչպես որ դա ցույց տվեց հուշարձանի իրավիճակը, նման միջոցառումը կոնստրուկտիվ տեսակետից չէր կարող և չկարողացավ պատնեշել անձրևաջրերի ներծծումը։

Վերոհիշյալ աշխատանքներից հետո միայն հնարավոր եղավ վերականգնել և ամրացնել որմնանկարները, ընդ որում ինչպես տաճարի ներսում, այնպես էլ զանգակատան ներքին մակերեսում։ Ծածկի անբարեկարգության պատճառով որմնանկարները այնքան էին քայքայվել, որ պահպանվել էին առանձին պատառիկներ միայն, բացառությամբ գմբեթային մասից, որը համեմատաբար ամբողջական էր, պահպանված իր նախնական տեսքով։ Որմնանկարները ունեին բացառապես բուսական թեմատիկա, ոսկեզօծ ֆոնի վրա գույների իրենց հարուստ երանգավորումներով հիմնականում պատկերելով ծաղիկներ։ Հիմք ընդունելով պահպանված հորինվածքները, լրացվեց տաճարի մնացած մասը, որտեղ բոլորովին որմնանկարներ չէին մնացել։ Այդ նույն ժամանակ մաքրվեցին և ամրացվեցին նաև Հին վեհարանի որմնանկարները, որ նույնպես Հովնաթանյանների գործն է[1]:

Այս աշխատանքներով ավարտվեցին Մայր տաճարի և նրա համալիրի վերականգնման ու բարեկարգման աշխատանքները։

1958 թվականին ձեռնարկվեց դեռևս 1924 թվականին երկրաշարժի հետևանքով ավերված տաճարի հարավային աբսիդի փոքր գմբեթի վերականգնման գործը։ Ավերման պատճառները և վերականգնման հնարավորությունները ժամանակին հետազոտեցին Ա. Թամանյանը և Թ. Թորամանյանը[2]։ Սակայն գմբեթի վերականգնման հարցը մնաց նույն վիճակում մինչև հիշյալ 1958 թվականը (Նկ. 53—56)։

Վերականգնման համար կային բարենպաստ նախադրյալներ։ Հյուսիսային աբսիդի վրա առկա էր համանման զանգակատուն, ինչպես նաև պահպանվում էին ավերված գմբեթի առանձին բեկորներ։ Գմբեթի ծածկում օգտագործվեց երկաթբետոնե թաղանթ, իսկ սյուների առանցքով անցկացվեցին երկաթյա ձողեր։ Վերականգնվող գմբեթը հուսալիորեն ամրացվեց (Նկ. 55)։ Հարավային գմբեթի կառուցումով հուշարձանը վերականգնվեց և կոնսերվացվեց իր լիակատար տեսքով։

Մայր տաճարի վերանորոգման ընթացքում, նորից, ինչպես նախկինում, առաջ քաշվեց թանգարանային շենքի արտաքին ճարտարապետության ոճի և նրա փոփոխելիության հնարավորության հարցը։ Բանն այն է, որ հուշարձանի արևելյան ճակատի երկայնքով, 1869 թվականին Գևորգ

---

1 Հուշարձանի որմնանկարների վերանորոգումը կատարել է Լ. Դուրնովոյի ղեկավարված նկարիչների խումբը։

2 Թ. Թորամանյան, Նյութեր Հայկական ճարտարապետության պատմության, I հատոր, Երևան, 1942.



Նկ. 56. Էջմիածնի տաճար. Հարավային ճակատի գմբեթը կառուցվելուց հետո:



Նկ. 57. Էջմիածնի վանք. Հետագա կառուցապատումներից ազատված Տրդատի դուռը։

4-րդ կաթողիկոսի[1] կցած շենքի ճարտարապետությունը, տուրք տալով ժամանակի կլասիցիստական ոճին, կտրականապես հեռանում է տաճարի ավանդական ճարտարապետությունից։ Սակայն տաճարի խիստ հրատապ վերանորոգման աշխատանքները նորից այդ պրոբլեմը թողեցին հետագային։

Էջմիածնում կոնսերվացված են նրա համալիրի մեջ մտնող նաև մյուս երկու հուշարձանները՝ Հռիփսիմեի և Գայանեի տաճարները։ Սրանցում ծածկերի կոնսերվացման, շրջապատի սալահատակման հետ մեկտեղ պատերը հիմնականում մաքրվեցին հետագա դարերի սվաղից։ Այս վերջին միջոցառումը առանձնապես մեծ արդյունք տվեց Հռիփսիմեի տաճարում։ Այստեղ առաջին անգամ մեր վերականգնման պրակտիկայում պատերի մաքրումը, որոնք երևանյան տուֆահասակից են, կատարվեց ավազաշիթով[1]։ Ինչպես Հռիփսիմեի, այնպես էլ Գայանեի ինտերյերները զգալիորեն բարելավվեցին, և որ գլխավորն է՝ իրենց նախնական տեսքով բացվեցին պատերի որմածքը և այլ մանրամասներ։ Աշխատանքի պրոցեսում պարզվեց, որ Հռիփսիմեի պատերի վրա, ներքևից մինչև գմբեթի կիսագունդը ներառյալ, դրոշմված են վարպետների շինարարական միևնույն նշանները։ Ճարտարապետ-ռեստավրատոր Հ. Հակոբյանի գիտական ուսումնասիրությունների շնորհիվ համոզիչ կերպով հերքվեց այն տեսակետը, թե տաճարի գմբեթը իբր հետագա դարերի գործ է, այլ ոչ ի սկզբանե



Նկ. 58. Էջմիածի տաճար. շրջապատի սալահատակումը։



Նկ. 59. Էջմիածին վանք. արտաքին նոր եզրապատը։

[1] Այդ մասին շենքի արևելյան պատի վրա թողնված է համապատասխան արձանագրություն։

[1] Ճարտ. Վ. Հարությունյանի առաջարկով։





Նկ. 60. Հռիփսիմեի տաճար. Ներքին տեսքը ծեփած
պատերով և ծեփը հանելուց հետո։





Նկ. 61. Գայանեի տաճար. Ներքին տեսքը ծեփած
պատերով և ծեփը հանելուց հետո։

կերտված։ Վերջնականապես հաստատվեց, որ տաճարի գմբեթը կառուցված է ամբողջ շենքի հետ մեկտեղ՝ 618 թվականին, Կոմիտաս կաթողիկոսի օրոք[1]։

Ծեփը մաքրելուց հետո պարզվեց նաև, որ տաճարը ունի տրոմպային մասում հովհարաձև ուրույն սեգմենտ, որի հար և նման օրինակը, վերջերս հայտնաբերեցին իտալական ճարտարապետները պատմական Վասպուրականի նահանգում, էջմիածին կոչվող Ձորադիր տաճարում։ Տրոմպներից արևելյան երկուսը ժամանակի ընթացքում բոլորովին անհետացել էին, արևմըտյանները՝ կիսով չափ հողմահարվել։ Վերջիններիս հիման վրա հնարավոր եղավ վերականգնել մյուս երկուսը։

Ուշագրավ են նաև Հռիփսիմեի վերանորոգված որմնախարիսխների շարքերի աստիճանաձև փոխանցումները, որոնց շնորհիվ նկատելիորեն փոփոխված են նրանց նախնական ձևերն ու համաչափությունները։ Որմնախարիսխները առհասարակ արտաքուստ ավելի բարձր են լինում, քան հուշարձանների հատակները։ Դա հատկապես նկատելի է Հռիփսիմեում, որտեղ որմնախարիսխների շարքերը միշտ էլ շատ ավելի բարձր են եղել, քան նրա հաճախ փոփոխվող հատակի մակարդակը (Նկ. 60, 61)։

**Հաղբատի ճարտարապետական համալիրը.**— Թումանյանի շրջանի Հաղբատ գյուղում գտնվող համալիրը հայ ճարտարապետության նշանակալից կոթողներից է։ X—XIII դարերում Գուգարքի լեռնաշխարհում կազմավորվեց Բագրատունիներին ենթակա Տաշիր-Ձորագետի կամ Կյուրիկյան թագավորությունը, որն այսպես էր կոչվում նրա հիմնադիր՝ Բագրատունի Աշոտ Ողորմած թագավորի (953—977 թթ.) որդի Գուրգենի (Կյուրիկեի) անունով (Նկ. 62)։

Ներկայիս Թումանյանի շրջանում պահպանվել ու մեզ են հասել անցած դարերի բազմաթիվ հուշարձաններ։ Դրանք ճարտարապետական բարձրարվեստ մշակույթի ակնառու վկաներ են, իսկ մի քանի հուշարձաններ իրավամբ համարվում են դասական նշանավոր ստեղծագործություններ։ Այդ թվում առանձնապես աչքի է ընկնում Հաղբատի հուշարձանախումբը, որը Սանահնի վանքի հետ իր որոշակի տեղն ունի հայ ժողովրդի պատմության մեջ, և դրանց հետ են կապված հայկական մշակույթի բազմաթիվ ականավոր գործիչների անուններ։

Հուշարձանախումբը գտնվում է բարձր սարահարթի վրա, որը մի կողմից երիզված է Լոռվա հզոր լեռնապարի Սուրբ Լույս և Տերունական գագաթներով, մյուս կողմից՝ Կայան բերդ և Սաղխձոր կիրճերով, որոնցով հոսում են Սաղիկ և Կայան լեռնային աղմկոտ ու սրընթաց գետակները։

Հաղբատի ճարտարապետական հուշարձանների խումբը հիմնադրվել է 976 թվականին, աստիճանաբար կառուցապատվելով ներկայումս ընդգրկում է համալիրի գլխավոր կառույցը՝ ս. Նշան եկեղեցին (976—991 թթ.), որը հիմնադրել է Բագրատունի Աշոտ թագավորի կինը՝ Խոսրովանույշ թագուհին, գավիթը եկեղեցուն կցված է 1185 թվականին, վերակառուցված՝ 1208—1210 թթ., վանքի վանահայր Հովհաննես Խաչենացու կողմից, և այլ կառույցներ։

Ս. Նշան եկեղեցին հյուսիսից և արևելքից շրջանցում է թաղածածկ սրահը, որը Կյուրիկյանների և բարձրաստիճան հոգևորականների տապանատունն է։ Նրան կից է գրատան շենքը։ Հետևյալը Համազասպի շենքն է, որն այսպես է կոչվում նրա կառուցողի, վանքի վանահայր եպիսկոպոս Համազասպի անունով (1257 թ.)։ Համալիրի ամենանշանավոր կառույցը, իր վեհաշուք և զարմանահրաշ ճարտարապետական ձևերի առումով, զանգակատունն է, կառուցված 1245 թվականին, եպիսկոպոսներ Հովհաննես և Համազասպ եղբայրների կողմից։ Ի դեպ ասենք, որ քարի որպես շինանյութի տեկտոնիկ հատկությունների նրբին ու խորիմաստ ընկալումով միայն հնարավոր է եղել հասնել ձևերի պլաստիկ արտահայտչականության այն բարձունքներին, որը տեսնում ենք այս հոյակերտ կոթողում։ Նշանակալից կառույց է նաև սեղանատունը (13-րդ դար), ինչպես նաև ս. Գրիգոր (1025 թ.), Աստվածածին ու Ջգրաշեն (1195թ.) եկեղեցիները։ Պարսպից դուրս գտնվում է Հովհաննես արքեպիսկոպոսի կառուցած աղբյուրը (1258 թ.)։ Հուշարձանախմբի տարածքի վրա պահպանվել են մի շարք նրբին պլաստիկայի ձևով հորինված խաչքարեր, ինչպես նաև վանքապատկան տեղամասի

[1] Հրանտ Հակոբյան. Նորահայտ նյութեր Հռիփսիմեի տաճարի մասին, Հայկական արվեստի ժողովածու, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, էջ 48—53։

պարիսպը և ժողովրդական բնակելի մի տուն։ Ճարտարապետական ներդաշնակ միասնության առումով Հաղբատի հուշարձանախումբը իր այդ կառուցվածքներով մի համապարփակ համալիր է, միասնական մի ամբողջություն։ Սրանումն է Հաղբատի, ի դեպ նաև Սանահնի, ճարտարապետության ամենաբնորոշ արժանիքը։

Հուշարձանախմբի կառույցները երկարատև գոյության ընթացքում. պարբերաբար քայքայվել ու վերանորոգվել են, երբեմն էլ ենթարկվել հիմնական վերակառուցումների, որոնց հետքերը պարզ երևում են հատկապես գավթի, ս. Նշան եկեղեցու գմբեթի և մյուս ճարտարապետական ձևերի մեջ։

40-ական թվականներին հուշարձանախմբի տեխնիկական վիճակի ստուգումները պարզեցին, որ անհրաժեշտ է կատարել նոր ու անհետաձգելի վերանորոգումներ։

Այդ կապակցությամբ նորոգման աշխատանքները սկսվեցին նախ և առաջ առավել քայքայված կառույցից՝ աղբյուրի շենքից։

**Աղբյուրի վերանորոգման աշխատանքները.—** Տվյալ կոթողը հուշարձանախմբի աշխարհիկ ճարտարապետության գողտրիկ կառույցներից է և գտնվում է վանքապատկան սերիտորիան սահմանազատող արևելյան պարիսպներից դուրս։ Կամարների վրա եղած արձանագրության համաձայն այն կառուցել է Հովհաննես արքեպիսկոպոսը՝ 1258 թվականին։

Աղբյուրը հատակագծում լայնական կառույց է, ճակատային մասը եռաթռիչք կամարաշար է, կենտրոնական լայն բացվածքով ճակտոնային վերջավորությամբ։ Հուշարձանը կառուցված է կապտավուն բազալտից։ Հավանաբար նրա վերջին հիմնական վերանորոգումը կատարվել էր 1827 թվականին, Անտոն արքեպիսկոպոսի կողմից։ Քառասնական թվականների վերջում, երբ հուշարձանը նորից անհրաժեշտ եղավ վերանորոգել, կազմվեց համապատասխան նախագիծ[1]։ Ամենից առաջ նախատեսվում էր վերաշարել աղբյուրի պատերի խարխլված որմնաշարքերը, ինչպես նաև լրացնել ընկած ու ժամանակին անհետացած սրբատաշ քարերը։

Նույն ձևով նախատեսվում էր վերաշարել քիվերը։ Սակայն, առավել հիմնովին աշխատանքներ կատարվեցին աղբյուրի ծածկի վրա։ Բացի այն, որ անհետացել էին բոլոր ծածկասալերը, թաղը իր հերթին խեղվել էր։ Ծածկասալերը տաշվեցին բազալտից, ուղղանկյուն նկուններով։ Վերականգնվեցին աղբյուրի հատակը, պատերի ու ծածկի առանձին մասերը և կառույցն այդպիսով ընդունեց իր նախնական տեսքը (1950—1951)։

Աղբյուրի վերանորոգմամբ սկիզբ դրվեց Հաղբատի համալիրի կոնսերվացիայի ընդհանուր աշխատանքներին, որոնք որոշ ընդմիջումներով շարունակվում են առ այսօր (Նկ. 63—64)։

Սակայն շատ ավելի մեծածավալ աշխատանքներ ձեռնարկվեցին հետագա տարիներին, ընդ որում ուշադրության կենտրոնում էր առավել վթարային վիճակում գտնվող Համազասպ կոչվող շենքը (1257), որից էլ 1959 թվականին սկսվեց գործը։ Հուշարձանը քառակուսի հատակագծով, լակոնիկ ճակտոններով, շեշտված մուտքով ու հատած գմբեթով մի կառույց է, որի ծածկը ներքուստ պահում են գավիթների համար ասես սովորական դարձած չորս սյուն։ Ամենայն հավանականությամբ դա աշխարհիկ կարիքների համար է։ Ենթադրվում է, որ այն կարող էր վանքին կից հոգևոր դպրոցի շենքը լինել։

Այստեղ առավել քայքայված մասը տանիքն էր, մնացած մասերը՝ որմնախարիսխները, պատերը, քիվերը, ինչպես նաև շենքի ներքին տարածությունը պարփակող ճարտարապետական ձևերը իրենց դրվագներով դիմադրելով ժամանակի քայքայիչ ուժերին, մնացել էին պատշաճ վիճակում։

Տանիքը սկսել էր քայքայվել վաղուց, և որպես ժամանակավոր միջոցառում, դեռևս 1952 թվականին թիթեղապատվեց։ Սակայն վերջինս յոթ տարի անց լիովին քայքայվեց և անձրևաջրերը սկսեցին թափանցել ներս, քայքայելով թաղերը, վտանգելով պատերի կայունությունը։ 1964 թվականին հուշարձանի պատերի վրա, ներսից, երևացին խոնավության հետքեր, որոնք աղակալումներ առաջացրին։ Հարկ եղավ նույն տարում պատրաստել անհրաժեշտ նախագծային-նախահաշվային փաստաթղթեր, այն հաշվով, որ 1965 թվականին անհապաղ սկսվեր հուշարձանի վերանորոգումը։

[1] Նախագծի հեղինակ Ա. Բալասանյան, աշխղեկ՝ Մ. Մանուկյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։











Նկ. 62. Հաղբատ. չափագրություններ։



*Նկ. 63. Հաղբատի համալիր. աղբյուրի գլխավոր ճակատը վերանորոգելուց հետո։*





*Նկ. 64. Հաղբատի համալիր. աղբյուրի կողքի ճակատը վերանորոկելուց առաջ և վերանորոգելուց հետո։*

Թիթեղյա ծածկը վերցնելուց հետո թարմացրած շաղախի վրա տեղադրվեցին քարե ծածկասալերը, որ պատրաստված էին տեղում հայտնաբերված նախնական սալաքարերի ձևերին համապատասխան՝ կիսակլոր եզրերով։ Նոր ծածկը պատրաստվեց տեղական գորշ տուֆից։ Նույն կերպ վերանորոգվեցին նաև լանջերն ու գմբեթը, ինչպես նաև շենքին կից փոքրածավալ եկեղեցու երկթեք տանիքը։ Համազասպի շենքը վերականգնվեց իր նախնական տեսքով[1]։

Համազասպի շենքի եկեղեցու արևելյան պատին, մեծ երաժիշտ ու բանաստեղծ Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակի առթիվ փակցվեց մի մարմարե հուշատախտակ։ Այն հիշեցնում է, որ մեծ բանաստեղծը, Տեր-Ստեփանոս անունով, իր կյանքի վերջին շրջանում ապրել է այստեղ, կատարելով վանքի լուսարարի պարտականությունները (1775—1795 թթ.)։ Մյուս տախտակը նույն օրերին փակցվեց Սանահնի գրատան արևմտյան պատին, ուր ասվում է, որ այստեղ է անցկացրել իր մանկության օրերը մեծ Սայաթ-Նովան (1712—1719 թթ.)։ Լոռվա հզոր ու վեհաշուք լեռների ու նրանց անդնդախոր կիրճերում հոսող մերթ մեղմ մերթ աղմկոտ գետերի հիասքանչ ափերին է, որ ծնվում էին մեծ երգչի, ոչ պակաս հիասքանչ ու դարեր ապրող մեղեդիները։

Համազասպի շենքի վերանորոգումից անմիջապես հետո ձեռնարկվեց համալիրի մնացած կառույցների ծածկերի նորոգումը, քանի որ նրանք նույն դրության մեջ էին։ Հարկ է նշել, սակայն, մնացած ծածկերի կատարման յուրահատուկ բարդությունները։ Խնդիրը շենքերի խիտ կառուցապատումն է, ինչպես նաև ծածկերի տարբեր մակարդակը, մի բան, որը զգալի դժվարություն է ստեղծում անձրևաջրերի հոսքի համար։ Այս կապակցությամբ, ծածկերի ու պատերի հըպման որոշ տեղերում լրացուցիչ դրվեցին քարե առվակներ, որոնք կանխեցին ջրերի հոսքը դեպի ներս։ Բոլոր կառույցների տանիքների հիմնական մասը շարվեց նոր տաշված տուֆասալերով, իսկ մնացած տեղերում կատարվեց վերաշար, քանի որ բավականաչափ սալեր դեռևս պահպանել էին իրենց նախնական ձևը և ամրությունը։

[1] Ջափագրությունը Հ. Հակոբյանի, նախագծի հեղինակ և վերականգնող ճարտարապետ Վ. Խաչատրյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։

Առանձին տեղերում վերանորոգվեցին նաև քիվերը, որոնք բացի իրենց անմիջական նպատակից, անհրաժեշտ էին նաև ծածկասալերի ներքնամասերի ամրացման համար։

Նույն տարում վերանորոգվեցին Հաղբատի տարածքը շրջափակող պարիսպների առանձին հատվածները, ինչպես նաև իրենց տեղերում ամրացվեցին մի քանի տեղահանված խաչքարեր։

Նույն վերանորոգումների ժամանակ անհրաժեշտ եղավ զգալի աշխատանք կատարել ս. Նշան եկեղեցու արևելյան պատին կից սրահում։ Այստեղ իր բեռի ծանրության տակ 26 սմ դեպի արևմուտք էր թեքվել միայնակ սյունը, որի վրա հյուսիսից և հարավից իջնում էին թաղակիր կամարներ։ Սյունը ուղղելու համար, իհարկե, հնարավոր էր վերաշար կատարել, սակայն այդ բավականին բարդ պրոցեսը պահանջում էր ծավալուն աշխատանքներ։ Մյուս կողմից հնագիտական առումով անցանկալի էր խախտել նախնական որմածքը։ Հուշարձանը վերանորոգող ճարտարապետ Հ. Հակոբյանը գտավ խնդրի շատ սրամիտ լուծում։ Կամարները, ինչպես և ամբողջ կոնստրուկտիվ համակարգը նախապես ամրացնելով փայտյա հենարաններով, ուժեղ լծակների օգնությամբ սյունը ինչպես նաև, նրա հետ մեկտեղ, նրա վրա նստող կամարները վերաշարվեցին իրենց նախկին տեղը։ Որոշ ժամանակից հետո, երբ համակարգը ամրապնդվեց իր նախնական դիրքով, հեռացվեցին փայտյա հենակները և դիտողի առաջ բացվեց իր վաղնջական տեսքով այս ամբողջ ճարտարապետական համակարգը։ Դեֆորմացիայի ենթարկված հուշարձանների նման ձևով նախնական վիճակի բերելը հայտնի էր վաղուց, դեռ մեր դարի սկզբում, այն կիրառվեց Ռուսաստանում (Պ. Պոկրիշկին), 1959 թվականին Վրաստանում (Ցիրկոլի և Ցրոմի հուշարձաններում), 1965 թվականին նույն ձևով ուղղվեց Սամարղանդի Ուլուգբեկի Մեդրեսեի հյուսիսարևելյան մինարեթը և այլն։ Հայաստանում, Հաղբատի նըշված օրինակից հետո, այն դարձավ կիրառելի մեթոդ (Նկ. 30)։

1975 թվականին ձեռնարկվեց Հաղբատի եզակի կառույցներից մեկի սեղանատան վերանորոգումը։ Այն ուղղանկյուն հատակագծով ներքին տարածությամբ երկու հատվածի բաժանված շենքն է, որտեղ հատվող կամարները կազմում են



Նկ. 65. Հաղբատի զանգակատունը վերանորոգումից հետո։





Նկ. 66. Հաղբատի սրահի ծածկը վերանորոգումից առաջ և վերանորոգումից հետո։

ծածկի հետաքրքիր համակարգ։ Շենքի այս երկու հատվածները միմյանցից անջատված են երկու ցածր սյուներով, որոնք կրում են թե լայնական և թե երկայնական ուղղություններով ձգվող կամարները։

Հաղբատի սեղանատունը, ինչպես պարզեցին նրա տեխնիկական ստուգումները, գտնվում էր արտակարգ վթարային վիճակում։ Նրա թաղակապ ծածկը, որը կրում էր տարբեր ժամանակներում այստեղ կուտակված հողի հաստ շերտ (որպես ծածկը նորոգող յուրահատուկ միջոց) ստեղծում էր իներտ ծանր կանգված և բացի այդ համապատասխան պայմաններ, անձրևաջրերը որմածքի մեջ ներծծելու համար։ Այդ ջրերը, անընդմեջ ողողելով որմածքի միջուկը ի վերջո դուրս բերեցին նրա շաղախը, մի բան, որ մեծապես վնասեց կառույցի կայունությանը։ Դրա հետևանքով էլ խախտվել էր թաղի ամրությունը։ Հուշարձանի ներսում սկսեցին հայտնվել որմածքից ընկնող սրբատաշ քարեր, իսկ նրանց մի մասը մնաց կախված վիճակում։ Սեղանատան պատերը. ինչպես նաև թաղակապ ծածկի բոլոր հատվածները ժամանակի ընթացքում այնքան ձևափոխվեցին, որ այդ եզակի կառույցի ընդհանուր փլուզումը մոտակա ժամանակների հարց էր։ Հուշարձանի տեխնիկական վիճակը այն դեպքերից էր, երբ քայքայման պատճառները նրանում արտահայտված էին պարզ, տեսանելի ու որոշակի ձևով։ Ստեղծված վիճակը, երբ խախտվել էին հուշարձանի որմածքի շատ հատվածներ, թե դրսից և թե ներսից ձևախեղվել, բացառում էր կոնսերվացման մեթոդի կիրառումը, և միակ միջոցը մնում էր վերաշարը։ Եվ քանի որ վթարի ենթարկված հատվածները հուշարձանի առավել մեծ ու դրեթե

հիմնական մասն էին, կառույցը ենթարկվեց կապիտալ վերանորոգման։

Այսպես, սեղանատան բոլոր փքված պատերը վերաշարվեցին։ Սակայն անհրաժեշտ էր կատարել նաև նոր շարք, անհետացած քարերի փոխարեն, և դա հատկապես ամբողջ հարավային ճակատում։ Ելնելով հակասեյսմիկ միջոցառումների անհրաժեշտությունից, շենքի ամբողջ պարագծով, պատերի երկու տարբեր նիշերի վրա, որմածքի մեջ դրվեցին երկաթբետոնե մանոլիտ գոտիներ (Նկ. 67—67 բ)։



Նկ. 67. Հաղբատի սեղանատունը վերանորոգումից առաջ։

Պատերն ամրացնելուց հետո, հարկ եղավ վերանորոգել թաղակիր ծածկի բոլոր հատվածները, որոնք գտնվում էին հատվող կամարների միջև ընկած տարածություններում։ Այս կապակցությամբ անհրաժեշտ էր, վերաշարի միջոցով նախապես փլուզումից ապահովել սեղանատան հատվող կամարները, որոնք ծածկի հիմնական կոնստրուկտիվ նեցուկն են կազմում։ Այսպես, նախօրոք իրենց նախնական դիրքին բերվեցին հատվող կամարները պահող սյուները, վերևում արդեն նկարագրված սեպերի ու լծակների օգնությամբ։ Մեծ ուշադրություն դարձվեց շենքի քաշը թեթևացնելուն։ Հեռացվեց թաղերից վեր, ծածկերի լանջերի վրա լցված հողը։ Այդ տարածությունն այժմ պարփակվել է երկաթբետոնե թաղանթի մեջ։ Ինչպես թաղերը, այնպես էլ գմբեթները ամրացվեցին երկաթբետոնե կոնստրուկցիաներով։ Կոնստրուկտորական այդ և նախորդ միջոցառումները միանգամայն ապահովում են հուշարձանի կայունությունը նույնիսկ 8 բալ երկրաշարժի դեպքում, մի բան, որն ամենաբարձրն է այս շրջանի համար[1]։



Նկ. 67ա Հաղբատի սեղանատունը վերանորոգման ընթացքում։

Շենքը հետագա հնարավոր քայքայումից լրիվ ապահովելու համար, ծածկվեց բազալտե ելուններ ունեցող սալաքարերով։ Միևնույն ժամանակ սալահատակվեց շենքի ամբողջ ներքին տարածությունը։

Նման հիմնավոր աշխատանքներից հետո, սեղանատան շենքը ապահովվեց հնարավոր քայքայումից։ Հաղբատում ձեռնարկված աշխատանքները միակը չէին։ Նկատի ունենալով հուշարձանախմբի արտակարգ նշանակությունը, այն միշտ էլ մնում է ուշադրության կենտրոնում՝ վերանորոգ-



Նկ. 67բ Հաղբատի սեղանատունը վերանորոգման ընթացքում։

[1] Հ. Դ. Սարգսյան, Հաղբատի մեծ գավիթը, Պատմաբանասիրական հանդես, 1975 թ., № 4, էջ 121—122։

ման ու կոնսերվացման աշխատանքները այստեղ կատարվում են պարբերաբար ու անընդմեջ։

1978 թվին, հուշարձանախմբի տարածքում բացի մասնակի կոնսերվացման աշխատանքներից կատարվում են նաև լայնատարած բարեկարգման աշխատանքները։ Խոսքը վերաբերում է՝ կանաչապատման, լուսավորության, տեղանքի առանձին հատվածների հարթեցման, աստիճանթանգարանային էքսպոզիցիաների վերափոխման, օժանդակ մանր կառույցների շինարարության, թանգարանային եքսպոզիցիաների վերափոխման, նրա ռադիոֆիկացման ու այլ աշխատանքներին։

## ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ՇԵՆՔԵՐԻ ՆՈՐՈԳՈՒՄԸ

Եղվարդի Աստվածածին.— *Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղում, որը պատմական Հայաստանի Արագածոտն գավառի նշանակալից բնակավայրերից էր, պահպանել է իր տարածքի վրա բազմաթիվ հնագիտական կոթողներ, այդ թվում V ու հետագա դարերին պատկանող դասական հայ ճարտարապետության մեծարժեք հուշարձաններ և նրանց զարգացած համալիրներ։ Վերջիններիս շարքում է, իր ձևերի մեջ խիստ եզակի ու վերսլաց մի կառույց, եռահարկ ս. Աստվածածին կոչվող եկեղեցին, որի նորոգման մասին է այստեղ մեր խոսքը (Նկ. 68)։*

*Հուշարձանը կառուցվել է 1301 թվականին միջնադարյան Հայաստանի նշանավոր զորավար Ազիզբեկի և նրա տիկնոջ Վախախի կողմից, ճարտարապետ Շահիկի ձեռքով։ Հուշարձանը մի մոնումենտալ եկեղեցի է առաջին և երկրորդ հարկերում պատարագի խորաններով և որն ավարտվում է սյունազարդ թմբուկի վրա հենվող վեղարային ծածկով։ Դեպի հուշարձանի երկրորդ հարկն են տանում գլխավոր ճակատի վրա սիմետրիկ դասավորություն ունեցող քարե ելունավոր աստիճանները։ Դա մի հորինվածք է, որը հայտնի է նաև Եղեգնաձորի շրջանի Նորավանքի նույնպիսի եռահարկ եկեղեցում։ Եղվարդի կառույցը հայտնի է ճարտարապետական հարթությունները ծածկող եզակի պատկերաքանդակներով և նրբագեղ զարդաձևերով։*

*Մեր դարի սկզբում, երբ Հայաստանում սուղ էին նյութական հնարավորությունները, բայց կար եկեղեցիների ներքին մեծ տարածությունների պահանջը, դա ստեղծվում էր, առավելապես, 7-րդ դարին պատկանող փոքրածավալ կանգուն եկեղեցիների օգտագործումով։ Այդպիսի եկեղեցիներին է, որ կցվում էին աղոթարաններ, որպես կանոն եռանավ ու փայտյա սյուներով։ Այդպիսի դեպքերում որպես բեմահարթակ օգտագործվում էին այդ փոքր եկեղեցիների ներքին տարածությունները։ Նման վերակազմությունների ժամանակին ենթարկվեցին Աշտարակի Կարմրավոր ու Մարինե եկեղեցիները, Երևանի կաթողիկեն, Արթիկի Նոր Կյանք գյուղի եկեղեցին, Անիի շրջանի Բարձրաշենի Աստվածածին եկեղեցին և մյուսները, ինչպես նաև քննարկվող եկեղեցին Եղվարդում։ Վերջինում այս կառուցապատումը հիմնովին փոխում էր շենքի նախնական ուղղաձիգ ձևերի ճարտարապետության իմաստը։ Սակայն, այստեղ ինչպես և Մարինե եկեղեցում, տվյալ վերակառուցումները մնացին անավարտ։ Երբ ծագեց Եղվարդի Աստվածածին հուշարձանի վերանորոգման հարցը և այդ կապակցությամբ կազմվեց բարեկարգման համապատասխան նախագիծ, կցված անավարտ կառույցի մնացորդները հեռացվեցին և կոթողը վեր խոյացավ իր նախնական սլացիկ հորինվածքով և հարթավայրի տարածքում ընկալվեց էլ ավելի շեշտակի ծավալով ու դիրքով։ Սակայն, հուշարձանի համար, վթարային վիճակ էր ստեղծվել դեռ շատ վաղուց, հավանաբար մեր դարից էլ ավելի առաջ, երբ փլուզման վտանգի առաջ էր կանգնել նրա սյունազարդ զանգակատունը։ Այդ վթարը կանխելու միակ միջոցը, որին հնարավոր եղավ դիմել այն ժամանակ, մեկ մետր 30 սմ բարձրությամբ սյունամեջ տարածությունների շարվածքն էր։ Այդ միջոցառումը, որը ստեղծել էր կոնստրուկտիվ կոշտ համակարգ, իրոք որ սյունաշարը ապահովել էր հնարավոր ավերումից, ու տվյալ վիճակով հասել մինչև մեր օրերը։ Ուշագրավ է, որ նույն վիճակին էր հասած Հոռոմոսի (Խոշավանք) հուշարձանախմբի հարևնման զանգակատունը։ Սա ևս ժամանակին ամրացված էր նույնպիսի ձևով։*

*Սյունաշարի 12 սյունից 9-ը խիստ քայքայ-*









Նկ. 68. Ծղվարդի եկեղեցի. չափագրություններ, նախագիծ։



Նկ. 69. Եղվարդի եկեղեցի. վերանորոգումից առաջ։





Նկ. 70. Եղվարդի եկեղեցի. վերանորոգման ընթացքում։

ված էին, իսկ մնացած երեքը ստացել էին վտանգավոր ճեղքեր։ Ավելի վատ վիճակում էին գտնվում նրանց խարիսխները, որոնցից միայն մեկըն էր պահպանվել իր նախնական վիճակում։ Խիստ խախտված էին նաև սյուների վրա իջնող կամարները։ Բացի այս, հուշարձանի գմբեթը, ինչպես նաև սյունաշարի հիմքը կազմող կլոր, պատը հավանաբար, որևիցե մեծ երկրաշարժի ժամանակ, արևելք,— արևմուտք ուղղությամբ ստացել էին լայն ճեղքվածք։ Ավելին, որմածքը, դարերի ընթացքում ողողվելով անձրևաջրերով, մեծ մասամբ զրկվել էր կայունությունը ապահովող շաղախից, ինչը արդեն վտանգավոր էր ողջ հուշարձանի կայունության համար և այն կանգնած էր փլուզման վտանգի առջև (Նկ. 69)։

Հուշարձանի տվյալ վիճակը, ինչպես նաև նրա վերանորոգման նախագիծը բազմակողմանի ու մանրամասն քննարկվեցին։ Վթարային վիճակի մեջ գտնվող շենքի բոլոր հատվածների վերաշարման վճիռ կայացվեց։ Առաջարկվեց առանձին բեկորները, որոնք կորցրել էին իրենց կոնստրուկտիվ ունակությունը, փոխարինել նորերով։ Միևնույն ժամանակ առաջ քաշվեց մի այլ պրոբլեմ՝ թեթևացնել գմբեթի ընդհանուր քաշը, ազատելով այն ծածկի իներտ զանգվածներից, և այնտեղ իրականացնել հակաերկրաշարժային ժամանակակից միջոցառումներ (Նկ. 70—70ա)։

1969 թվականին սկսվեց հուշարձանի վերաշարման աշխատանքը, որին նախորդեց գմբեթային համակարգի լրիվ իջեցումը։ Գմբեթի իջեցումից հետո, երբ կոնստրուկտիվ որոշ տարրեր դրսևորվեցին տեսանելի կողմերով, ստեղծվեց լրացուցիչ պայման հուշարձանի տեխնիկական վիճակի ուսումնասիրության, որը տևեց մինչև 1971 թվականը։

Սյունաշարի խարիսխներից ներքև գտնվող

[1] Նախագծի հեղինակ Ս. Մաթևոսյան, կոնստրուկտորներ՝ Ժ. Զաքարյան, Հ. Փեշտմալջյան, վերանորոգող ճարտարապետ Ա. Ավետիսյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Ի. Գալստյան։



Նկ. 70 ա. Եղվարդի եկեղեցի. վերանորոգման ընթացքում



կլոր պատի խախտված վիճակը նույնպես պարզվեց։ Ուստի կլոր պատի երկու շարքերը վերաշարվեցին, երկաթբետոնե գոտիներ և սյունակներ տեղադրվեցին նրա հաստատության մեջ, ներարկվեց ցեմենտի շաղախ, ինչպես նաև տեղադրվեցին արտաքին երեսպատի զարդաքանդակները։

Սրանով հուսալի ամրացվեց սյունաշարին հենարան ծառայող կլոր պատը։ Սակայն, քանի որ սյուներից 9-ը քայքայված էին և կոնստրուկտիվ առումով այլևս անընդունակ էին կրելու վեղարի ծանրությունը, ապա հարկ եղավ դրանք փոխարինել նոր տաշված սյուներով, տեղերում թողնելով միայն երեքը։ Պարզվեց նաև, որ երկրաշարժերի հետևանքով գմբեթային համակարգում կատարվել էին զգալի տեղաշարժեր, հատկապես սյուների ու կամարների հենման կետերում։ Սյունաշարի վրա ընկնող շուրջ 10 տոննա քաշով վեղարի բեռը բաշխվել էր անհավասար, վտանգելով այդ համակարգի կայունությունը։ Հետազոտությունները պարզեցին, որ սյունաշարի տարրերը՝ սյունը, խարիսխը, խոյակը, ինչպես նաև կամարաշարը իրար հետ կոնստրուկտիվ կապի մեջ չեն։



Նկ. 71. Եղվարդի եկեղեցին վերանորոգումից հետո

Դրանցից յուրաքանչյուրը դրված էր մյուսի վրա իրար հետ հատվող մաքուր տաշված հարթությունով միայն, հետևաբար ամբողջ համակարգը պահվում էր սեփական քաշի ծանրության շնորհիվ։

Այդ էր պատճառը, որ երկրաշարժերի ժամանակ նրանց հենման հարթություններում կատարվել էին տեղաշարժեր, որի հետևանքով էլ վեղարի ամբողջ բեռը բաշխվել էր անհավասար, որը և ստեղծել էր կոնստրուկտիվ համակարգի խարխուլ վիճակ։

Հասկանալի է, որ կոնստրուկտիվ հինավուրց ձևերի կրկնությունը ի վերջո կստեղծեր նույնպիսի վիճակ, ուստի որոշվեց մշակել այդ տարրերի ապահով կապի ավելի հուսալի միջոցառումներ, որոնք կստեղծեին համաձայն միասնություն և բնավ տեսանելի չեն լինի դիտողին։ Դրա համար, խարիսխները, սյուները, խոյակները, կամարաքարերը, ինչպես նաև կլոր թմբուկը կազմող առանձին հատվածները իրար հետ միացվեցին երկաթե զույգ ձողերով, որոնք քարի հետ ամրացվեցին կապարով, ինչպես նաև ցեմենտի շաղախով, որ լցվում էր նախապես պատրաստված փոսիկների մեջ։ Այս միջոցառումը լրիվ արդարացրեց իրեն, քանի որ ճարտարապետական բոլոր տարրերը միահյուսվելով ինչպես ուղղահայաց այնպես էլ հորիզոնական ուղղություններով, կազմեցին մեկ միասնական կոնստրուկտիվ կուռ համակարգ։

Սյունաշարի լրիվ վերաշարից ու նորոգումից հետո, հնարավոր եղավ վերականգնել հուշարձանի վեղարը։ Այս մասում լայնորեն օգտագործվեց երկաթբետոն, որի շնորհիվ հնարավոր դարձավ զգալիորեն թեթևացնել հուշարձանի տվյալ հատվածի քաշը, իսկ կոնստրուկցիաները դարձնել էլ ավելի համաձույլ։ Այսպես, երկաթբետոնով վերարտադրվեց գմբեթի կիսագունդը և վեղարի կոնաձևը, որոնց միջև ստացված դատարկ տարածությունը իր ծավալով մեկ դուրս մղեց հուշարձանից իներտ զանգվածի համապատասխան քաշը։ Ստացված կոնաձև երկաթբետոնե ծածկի վրա իրենց նախնական դասավորությամբ դրվեցին քարե ծածկասալերը։ Այդ պրոցեսում պարզվեց, որ ծածկասալերի դասավորությունը անցյալում կատարվում էր նախապես մշակված ձևով և սալերի դասավորությունը, նրանց տեղերը գմբեթի քիվի հարթության վրա նախօրոք նշվում էին ինչոր սուր գործիքի միջոցով։

Գմբեթի վերաշարը ավարտվեց քարե խնձորակով, որի քաշը ավելի քան 400 կգ է։ Այն տեղադրվեց երկաթե խաչի հետ միասին, որի վրա նրա բարերարը՝ Գևորգ Հովակիմյան Աշտարակեցին և Դարբին Գրիգորը 1764 թվականին փորագրել են իրենց անունները։

Նշված բոլոր աշխատանքները կատարելուց հետո, վերանորոգվեցին հուշարձանի բոլոր լանջերը, ինչպես նոր տաշված, այնպես էլ հին ծածկասալերով։

Այս աշխատանքների ընթացքում պարզվեց, որ ժամանակին այդ լանջերի թեքությունները, ինչպես և բազմաթիվ մյուս հուշարձաններում, եղել են ավելի փոքր, հետևապես ներկայիս լանջերը հետագա դարերի վերանորոգումների արդյունք են (Նկ. 71)։

Վերանորգման աշխատանքներ կատարվեցին նաև հուշարձանի ներքին տարածությունում և հատկապես երկրորդ հարկում, ուր վերաշարվեց քայքայված բեմահարթակը։

Վերանորոգման ընթացքում պարզվեց նաև, որ հուշարձանի թմբուկը պսակող և նրանից ներքև գտնվող քանդակազարդ գոտու հարթ երեսպատի վրա, ամենայն հավանականությամբ դեռ հուշարձանի կառուցման ժամանակ տեղադրված էին թվով 11 նկարազարդ հախճասալիկ պարսկական գրերով։ Սալիկները հակառակ կողմից համարակալվել էին, համապատասխան դասավորությունը պահպանելու համար։ Ինչպես պարզեցին նախնական ուսումնասիրությունները (Վ. Փափազյան) այդ սալիկների վրա երկտողեր կան «Շահնամեից», որն այդ դարում, և մանավանդ հետագայում, մեծ տարածում էր գտել հայ մշակույթի տարբեր բնագավառներում։

Սրանով էլ ավարտվեց հուշարձանի վերանորոգման երկարամյա, բավականին բարդ ու դժվարին աշխատանքը։ Սակայն, աշխատանքի ընթացքում կատարված մի քանի հայտնագործություն ընդլայնեցին մեր պատկերացումները անցյալի վերաբերյալ։ Բնականաբար առաջացավ հուշարձանի տարածքի բարեկարգման հարցը։ Նախ կառույցը պետք է ազատվեր շրջապատի բերածո հողի բավականին հաստ շերտից, որը հասնում էր մոտ 1,90 մետրի։ Կառույցի յուրա-





Նկ. 72. Նորավանք— չափագրություններ





Նկ. 73. Նորավանք. գլխավոր ճակատը նորոգումից առաջ և հետո։

քանշյուր ճակատի մոտ նախնական ստուգումների համար կատարվեց հնագիտական համապատասխան պեղումներ։ Արդյունքները բոլորովին անսպասելի էին։ Բանն այն է, որ ամեն հորում բացվեց մարդկային ոսկորների հաստ շերտ, ծածկված տուֆի խիճարներով։ Դրանով պարզվեց, որ այստեղ բերածո հողի հաստ շերտը ծածկել էր մեր ժողովրդի հեռավոր անցյալի ողբերգական էջերից մեկը։ Այդ մասունքները այդպես էլ անձեռնմխելի թողնվեցին, նույն բերածո հողի տակ ու հանձնվեցին դարերին։

**Նորավանքի ս. Աստվածածին.**— Հուշարձանախումբը գտնվում է Ազիզբեկովի շրջանի Ամաղու գյուղից 2,5 կմ հեռավորության վրա, անդնդախոր կիրճի թեք սարալանջին (Նկ. 72)։

Այստեղ պահպանվել է պատմական հայ ճարտարապետության նշանավոր համալիրներից մեկը, կառուցված Սյունիքի Օրբելյանների տոհմի ներկայացուցիչների կողմից։ Այդ կառույցներն են Ս. Կարապետի եկեղեցին (1221 թ.), նրա արևմտյան ճակատին կից ժամատունը (հիմնված 1232 թ. առաջ և վերակառուցված 1261 թ.), իսկ վերջինիս հյուսիսային պատին կից Օրբելյանների տոհմական դամբարանը՝ կառուցված 1275 թվականին։

Հուշարձանախմբից հարավ-արևելք առանձին կանգնած է երկհարկանի ս. Աստվածածին դամբարան-եկեղեցին, որը կառուցել է 1339 թվականին Բուրթել Օրբելյանը։ Ճարտարապետական հորինվածքով, այն հիշեցնում է Եղվարդի նույնպես ս. Աստվածածին կոչվող դամբարան-եկեղեցին (1301 թ.)։ Երկու դեպքում էլ դամբարանը տեղավորված է առաջին հարկում, երկրորդում եկեղեցին է, երրորդ հարկաբաժինը ռոտոնդաձև կառուցվածք է, որը եթե Նորավանքում լրիվ ավերվել է, ապա Եղվարդում պահպանվել է ժամանակին ձեռնարկված միջոցառումների շնորհիվ։ Չնայած երկու կառույցների ճարտարապետության ներքին բովանդակության ընդհանրության, արտաքուստ Նորավանքը ավելի է ցայտուն գե-





Նկ. 74 Նորավանք. արևելյան ճակատը նորոգումից առաջ և հետո։

ղարվեստական առումով, թե զարդաքանդակների համաչափությունների ներդաշնակ մշակումով, թե բարձրաքանդակների հարստությամբ ու նրբին կատարմամբ։ Այս ամենը ավելի ակնբախ է տեղում, հուշարձանի շրջապատի ապառաժ ու հզոր լեռների միասնական տեսադաշտում։ Առանձնապես ուշադրության է արժանանում հուշարձանի երկրորդ հարկը և դեպի այնտեղ տանող սիմետրիկ դասավորությամբ պահունակային քարե աստիճանները, որոնց համանման հորինվածքը, գրեթե լիովին անհետացել է Եղվարդի կոթողում։ Այս աստիճանները, որոնք իրենց կոնստրուկտիվ նշանակությամբ զուտ կիրառական ֆունկցիա ունեն, ներկա դեպքում մեծ արվեստագետի կողմից վեր են ածվել կառույցի գեղարվեստական արտահայտչականության հիմնական միջոցի, դրսևորելով ճարտարապետական այդ ձևը, յուրօրինակ արտահայտչականությամբ, համապատասխան դինամիկա հաղորդելով կառույցին։

Նորավանքի ս. Աստվածածինը, հավանաբար, ավերվել է երկրաշարժից։ Լիովին կործանված էին նրա սյունազարդ գմբեթը և ճակտոնները։ Փլուզման ժամանակ մասնակի տուժել էին նաև ճակատների առանձին հատվածները (Նկ. 73—74)։

Հուշարձանի արտակարգ նշանակությունը նկատի ունենալով, 1948 թվականին հուշարձանների պահպանության կոմիտեն սկսեց նրա վերանորոգումը։ Քանի որ հուշարձանի ավերումից հետո, նրա բոլոր բեկորները մնացել էին տեղում անձեռնմխելի ու միայն դարերի բերածո հողն էր նրանց ծածկել, ժամանակին ընդունվեց ճիշտ որոշում՝ նախքան վերանորոգման գործին անցնելը տեղում կատարել մանրամասն պեղումներ, պարզելու պահպանված բեկորների քանակը ու նրանց վիճակը։ Հետազոտություններից հայտնի դարձավ, որ հուշարձանի շրջապատում գրեթե անվնաս պահպանվել էր վերևից ընկած բեկորների հիմնական մասը՝ ձևավոր ու հանգուցային քարերը, զարդաքանդակները և այլն[1]։ Պեղումնե-

[1] Աշխատանքները կատարել է Ա. Բալասանյանը։ Տես՝ Ա. Բալասանյան. վերանորոգման աշխատանքները Նորավանքում, «Գիտություն և տեխնիկա», 1975, № 4, էջ 32—34։

րից հետո կազմվեց հուշարձանի վերանորոգման առավել ճշգրիտ նախագիծ, որը հիմնված էր հայտնաբերված բեկորների վրա։ Ընդ որում նպատակահարմար համարվեց վերաշարել երկրորդ հարկի արևելյան և հյուսիսային ճակատները, որմածքը խիստ խարխլված լինելու պատճառով։ Այդ աշխատանքների պրոցեսում ճակատների ընդհանուր հորինվածքները նախապես հավաքվել, շարվել էին գետնի վրա, որտեղ և նրանց առանձին մասերը լրացվել էին պեղումներից հայտնաբերված բեկորների միջոցով։ Նման միջոցառումը զգալիորեն արագացրեց շինարարական պրոցեսը և այդպիսով բացառվեց որևէ անճշտություն։

Հայտնի է, որ Եղվարդի հուշարձանի նման, այստեղ ևս, ժամանակին վեր էր խոյանում սյունազարդ գմբեթը, սակայն վերջինիս բեկորների մեծ մասը անհետացել էին, և այդ պատճառով նրա վերարտադրությունը դարձրել անհնար։ Կառույցը վերականգնվեց միայն իր արդի տեսքի սահմաններում՝ վերանորոգվեցին գմբեթակիր համակարգը կրող կամարները, թաղերը, ինչպես նաև առանձին մանրամասներ։ Իսկ ամբողջությամբ, հուշարձանը ծածկվեց, նման դեպքերի համար ընդունված, թիթեղով, որը պետք է առժամանակ կանխեր կառուցվածքը մթնոլորտային տեղումներից վնասվելուց և այն պահպաներ հետագա ուսումնասիրությունների համար։ Նորոգման ընդունված սկզբունքն է ձևավոր քարերի, ինչպես նաև զարդաքանդակների փոխարեն որմածքի մեջ թողնել նրանց փոխարինող և միայն նրանց ընդհանուր ծավալները հիշեցնող բեկորներ։ Սա վերականգնման տարածված ձևերից է, և այն հետագայում էլ կրկնվեց։

Նորավանքում միաժամանակ մասնակի նորոգվեցին բավականին քայքայված գավթի առանձին կոնստրուկտիվ հանգույցները։ Նույնպես նախատեսված է այս նշանավոր հուշարձանախմբի հիմնովին վերանորոգումը։ Որպես նախապատրաստական միջոցառում, անդրնդախոր կիրճում ավտոտրանսպորտի համար արդեն բացված է համապատասխան ճանապարհ։

**Արուճի տաճարը.—** Պատմական Արուճի ս. Գրիգորի տաճարը, գտնվում է Աշտարակի շրջանի համանուն գյուղում, կառուցված VII դարում Գրիգոր Մամիկոնյանի կողմից[1]։ Հուշարձանի շրջակայքում է մի հնավայր, ուր բացի նշված տաճարից, պահպանվել են մեկ այլ բազիլիկ տաճարի մնացորդները, և ուր, բացի վերերկրյա այս կառույցներից պեղումներով հայտնաբերվել է նաև Գրիգոր Մամիկոնյանի պալատը[2]։ Գյուղի հյուսիս-արևելյան մասում պահպանվել են մեծ չափերի իջևանատան մնացորդներ, որոնք խոսում են այն մասին, թե Արուճը ժամանակին երկրի կարևոր մայրուղու վրա էր գտնվում, իսկ իջևանատան մոտ կանգնած բազալտե մեծածավալ մենհիրը, ազդարարում է պատմական Արուճի խոր հնությունը, որը հասնում է մինչև մեգալիթյան դարաշրջանը։ Հնագիտական այս տարածքում կան բազմաթիվ խաչքարեր ու կոթողային բարձրարվեստ հուշարձաններ, որոնք ամենայն իրավամբ Արուճի տաճարի շրջապատը դարձնում են թանգարանային միջավայր։

Արուճի տաճարը իր արտակարգ չափերով (20,5×38,2 մետր հատակագծում ու թմբուկի 9,7 մետր տրամագծով) մի հոյակապ գմբեթակիր դահլիճ է այդ տիպի ճարտարապետական կառուցվածքներին յուրահատուկ ավանդական պարզությամբ, ընդ որում այն հար և նման է Պտղնիի



Նկ. 75. Արուճի տաճար. արևմտյան ճակատը վերանորոգումից առաջ։

---

[1] **В. Арутюнян.** По повду датировки храма в Аруче.

[2] Վ. Հարությունյան. միջնադարյան Հայաստանի ճարտարապետությունը։ Հայկ. ՍՍՀ ԳԱ. Տեղեկագիր. 1957 թ. № 8, էջ 67—82։









Նկ .76. Արուճի տաճար. չափագրություն, նախագիծ։



Նկ. 77. Արուճի տաճարը վերանորոգումից առաջ:

նույն կարգի հուշարձանի տարածական հորինվածքին (Նկ. 76):

Արդեն 40-ական թվականների սկզբին, Արուճի տաճարը, գտնվելով տեխնիկապես ծայր աստիճան խարխլված ու վտանգավոր վիճակում, անընդմեջ քայքայվում էր: Ավերված պատերով ու ծածկերով հազիվ կանգուն հուշարձանը, ասես վերջին ճիգերով դեռ ուրվագծում էր այս ներքին արտակարգ մեծ տարածության սահմանները, որոնք հենց այդ առումով էլ բնորոշում են տըվյալ եզակի կոթողը: Վթարային վիճակը հատկապես վերաբերում էր նրա արևմտյան հատվածին, ուր թաղակիր ծածկից մնում էին իրար հետ հազիվ կապակցված առաստաղային քարերը, քայքայվում էին հյուսիսային ու հարավային խորշերի պատերը և նրանց լանջերը, որոնք վաղուց արդեն կորցրել էին իրենց ծածկասալերը: Գմբեթային մասը փլվել էր ամբողջությամբ, իսկ տաճարի արևելյան հատվածը քիչ բանով էր տարբերվում արևմտյան մասից:

Ինչպես պարզեցին պեղումները[1], հուշարձանի ստորին մասերը նույնպես քայքայված էին, քանի որ անհետ կորել էին եռաստիճան որմնախարիսխների զգալի մասերը, իսկ մի մասն էլ պիտանի չէր կոնստրուկտիվ առումով: Սակայն առավել վատ վիճակում էին պատերը: Այստեղ բերված լուսանկարներում պարզ երևում է, որ պատերի որոշ հատվածներ քայքայվելով ամբողջությամբ իրենց հետ անհետացրել են նաև քիվերը: Բնականաբար, խիստ տուժել էր նաև ծածկը, նույնիսկ այն մասերում, որտեղ 1946—47 թվականներին կատարված վերանորոգման ժամանակ տանիքների չորս ցածր լանջերը ծածկըվել էին կղմինդրով, փայտյա ճաղածածկի վրա[1]: Վերջիններս, որպիսիք ի դեպ, 40-ական թվականների վերջում կիրառվեցին մի շարք այլ հուշարձաններում, չարդարացրեցին իրենց, ոչ կոնստրուկտիվ և ոչ էլ ճարտարապետական առումով, քանի որ անձրևաջրերը դրանք շրջանցելով, շարունակում էին ներծծվել որմածքի մեջ, իսկ իրենց արտաքին տեսքով էլ բոլորովին խորթ էին հուշարձանի ճարտարապետությանը: Ծածկերի

[1] Պեղումները կատարել է Վ. Հարությունյանը:

[1] Դա պայմանավորված էր ետպատերազմյան շրջանի հնարավորությունների սուղ միջոցներով:



*Նկ. 78. Արուճի տաճարը վերանորոգումից հետո։*

համար լավագույն կոնստրուկտիվ միջոցը համարվեց տուֆասալերով ծածկը, որը և լայնորեն կիրառվեց բոլոր վերանորոգվող հուշարձաններում և որոնցով փոխարինվեցին տանիքների նաև հիշյալ կղմինդրյա ծածկերը։

Քայքայված վիճակում էին նաև հուշարձանի ներքին մասերը, ու հատկապես բեմի ու դահլիճի սալահատակը, ու տեղ-տեղ այն բոլորովին բացակայում էր։ Վտանգավոր ճաքեր էին բացվել կառույցի հարավային պատի վերին մասերում, ինչպես նաև հյուսիս-արևմտյան անկյունում, պատուհանների բարավորներում։ Այսպիսով, հուշարձանը ավերման վտանգի առաջ էր կանգնած և այդ հատկապես վերաբերում էր նրա միջին թաղածածկ մասերին և, պատերի այն հատվածներին, որոնք պահում էին դրանք։ Այս պատճառով էլ վերանորոգման աշխատանքները սկըսվեցին պատերի այդ հատվածների ամրացումով։

Նախորդ, 1946 թվականի աշխատանքների ընթացքում պատերի շարքերի նորոգման համար կիրառվել էին հուշարձանի շարքերի բարձրության կեսով չափ փոքր քարերը։ Հետագա, 1958 թվականի վերանորոգման ժամանակ այս մոտեցումը մերժվել է, հուշարձանների ճակատների միասնական ընկալման տեսակետից և որմածքի շարքերի համար պահպանվեց նախնական չափը։ Թաղածածկի ամրացումը սկսվեց նրա առավել խախուտ արևմտյան հատվածից։ Ընդ որում, բազմաթիվ հնարամիտ ձևերով, շինարարության ընթացքում փայտամածի համար ծախսվեց նվազագույն քանակության անտառանյութ։ Այս հանգամանքը խիստ կարևոր էր, քանի որ հուշարձանի շուրջ 16 մետր բարձրության պայմաններում ծախսվող անտառանյութի պահանջը հասնում էր զգալի չափերի։

Սակայն, հիմնական խնդիրը այստեղ, տվյալ կառույցի կոնստրուկտիվ համակարգի բացահայտումն էր տեխնիկական վիճակի առումով, որից հետո սկսվեց նրա նորոգումը (Նկ. 77)։

Ամրության պահանջներից ելնելով, նախապես

քարե թաղը ծածկվեց երկաթբետոնե 20 սմ թաղանթով, որը համաձույլ իրար ամրացրեց թաղի քարերը։

Վերջիններս խարսխվում էին բետոնի մեջ պողպատե 10 մմ տրամաչափի ձողերով։ Այս միջոցառումը զգալիորեն պակասեցրեց թաղից պատի վրա փոխանցվող ճնշումը։ Սա կարևոր հանգամանք էր կառույցի ընդհանուր համակարգում։ Նույն սկզբունքով ամրացվեց նաև արևելյան թաղը, որը սակայն, իր ավելի կայուն վիճակի շնորհիվ կատարվեց շատ ավելի արագ։ Նորոգման ժամանակ լրացվեցին թաղերից պակասող քարերը, որոնց քանակը առանձնապես շատ էր արևմտյան հատվածում։ Այստեղ կային նաև խարխլված քարեր, որոնք նույնպես փոխարինվեցին նորերով։ Թաղերն ամրացնելուց հետո, հուշարձանը զգալիորեն ամրապնդվեց և այն կոնստրուկտիվ առումով կայուն և ապահով դարձավ հատկապես իր առավել լարված հանգույցներում։ Դրանցից հետո արդեն հնարավոր դարձավ տուֆասալով շարել տանիքների ծածկը, ինչպես արված էր նախկինում։ Ծածկը լրիվ վերականգնելուց հետո, հարկ եղավ մեկ շարքով բարձրացնել նաև գմբեթի թմբուկը, քանզի այնքան էր քայքայվել, որ գտնվում էր ծածկից ներքև և չէր պատնեշում տանիքից հոսող անձրևաջրերի հոսքը դեպի հուշարձանի ներսը (Նկ. 78)։

Այս բոլորից հետո կարգի բերվեց նաև հուշարձանի ներքին տարածությունը, սալահատակվեցին բեմը և նրան կից հատակի արևելյան ու հարավ-արևելյան առավել քայքայված մասերը, հարավ-արևելյան խորանի հատակը, ինչպես նաև, շարվեց բեմի ճակատային մասը։ Կարգի բերվեցին նաև պատուհանների խարխլված մասերը։

Վերանորոգման տվյալ աշխատանքների համար օգտագործվել է Բազմաբերդ գյուղի դաշտից հանված հուշարձանին իր գույնով շատ մոտ տեղական կարմրավուն տուֆ (Նկ. 78)։

Վերանորոգումից հետո մասնակի բարեկարգվեց հուշարձանի շրջապատը։ Հեռացվեց բերածո հողը, տեղադրվեցին մի քանի կոթողային հուշարձաններ։ Կատարվեց ծառատնկում։ Դրվեցին երկաթե նոր դռներ, որոնց ճաղերի միջից, առանց դռների բացման, տեսանելի է հուշարձանի ներքին տարածությունը։ Ինչպես ցույց է տվել փորձը, նման դռների տեղադրումը ունի որոշակի հարմարություն։

Վերանորոգման աշխատանքները, առանձին ընդհատումներով, կատարվել են 1946—1965 թվականների ընթացքում, և ավարտվել են լրիվ նախատեսված ծավալով[1]։

## ՊԱՇՏԱՄՈՒՆՔԱՅԻՆ ՇԵՆՔԵՐԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

Գառնիի տաճարը.— Գառնիի հեթանոսական տաճարը գտնվում է Աբովյանի շրջանի համանուն գյուղի գեղատեսիլ բնության հրվանդանաձև տեղանքի բարձրադիր մասում, որը մխրճված է խոր ձորերի ու գունագեղ լեռնալանջերի տարածքի մեջ։ Գառնին արդեն հայտնի ամրոց էր դեռ ուրարտական տիրապետության օրոք, համաձայն հնագիտական պեղումներով այնտեղ հայտնաբերված Մենուայի որդի Արգիշտի թագավորի սեպագիր արձանագրության, որում ի դեպ, նշված է դարերում պահպանված գյուղի անվանումը՝ Գիառնի ձևով։ Հ. Մանանդյանը նշելով Գառնիի տաճարի ճարտարապետության հելլենիստական գծերը, միաժամանակ սերտ կապեր է տեսնում նաև ուրարտական շինարարական արվեստի հետ[2]։ Թե ուրարտական շինարվեստի որ կողմերը ի նկատի ուներ Հ. Մանանդյանը, մեզ հայտնի չէ, սակայն կարող ենք ամենայն իրավամբ պնդել, որ այդ հուշարձանում առկա են ուրարտական ճարտարապետության համաչափությունների սկզբունքները։

Գառնիի համալիրի արդի պատմահնագիտա-

---

1 Հուշարձանի չափագրությունը՝ Հ. Հակոբյան, Գ. Տոնոյան, Ն. Պապուխյան, Ա. Հարությունյան. Նախագծի հեղինակ Ա. Հարությունյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Մ. Մենեջյան։

2 Զեկուցում կարդացված պետհամալսարանի գիտական սեսիայում։ Տե՛ս «Սովետական Հայաստան», 23-ը ապրիլի, 1946 թ.։



Նկ. 79. Գառնիի տաճարը պեղումներից հետո։



Նկ. 82. Գառնիի տաճարի գլխավոր ճակատի վերակազմությունը ըստ Ն. Գ. Բունիաթյանի։



Նկ. 80. Գառնիի տաճարը 1934 թ. վերանորոգման ընթացքում։



Նկ. 81. Գառնիի տաճար. կողքի ճակատ։



Նկ. 83. Գառնիի տաճար. հատակագիծ։



Նկ. 84. Գառնիի տաճարը վերանորոգման ընթացքում։

կան ճարտարապետական առավել հինավուրց մնացորդները, հավանական է, որ պատկանում են մ.թ.ա. 3-րդ դարում Երվանդյանների ժամանակաշրջանում հիմնված կառույցներին։

Պահպանված ճարտարապետական կառույցներից ամենանշանավորը տաճարն է, որը, հավանաբար, ինչպես ենթադրում են նրա գրեթե բոլոր հետազոտողները, 1-ին դարի գործ է։ Գառնիի տաճարին նվիրված Սիմեոն Ապարանցու մեծ պաթոսով գրված ոտանավորը փառաբանում է դեռևս 17-րդ դարում կանգուն հուշարձանը։ Հետևաբար տաճարի փլուզումը կարող էր տեղի ունենալ հայ ճարտարապետության համար արհավիրքային 1679 թվականի մեծ երկրաշարժի ժամանակ, երբ կործանվեցին բազմաթիվ նշանակալից կառույցներ[1]։ Իսկ մինչ այդ Գառնիի տաճարի համար բնորոշ էր այն, որ իր կառուցվելուց հետո նա չի կրել և ոչ մի վերակառուցում ու նույնիսկ մանր վերանորոգում, թեև ինչպես հայտնի է շենքը կանգուն էր շուրջ 16 դար։ Այդ պահից ի վեր տաճարը սկսեց դանդաղորեն ծածկվել բերածո հողի հաստ շերտով։ Սակայն

[1] Հավանաբար այդ մեծ երկրաշարժի կենտրոնը հենց Գառնին էր։ Տե՛ս, Վ. Ստեփանյան, Երկրաշարժերը հայկական լեռնաշխարհում և նրա մերձակայքում, «Հայաստան» հրատ., Երևան, 1964., էջ 80—81։



Նկ. 85. Գառնիի տաճարը վերանորոգման ընթացքում։

Նկ. 86. Գառնիի տաճարը վերանորոգված վիճակում։

այն լրիվ չընկղմվեց հողի շերտերի մեջ և բազմաթիվ օտարերկրյա հետազոտողների համար նրա ճարտարապետական ձևերը դեռ ինչ-որ չափով տեսանելի էին ու վերարտադրելի։ Դա հատկապես նշում է Դյուբուա Դը Մոնպերեն, որը տեղում ծանոթացել էր մնացորդներին և դրանց հիման վրա կատարել հուշարձանի վերակազմության նախագիծը։ Այնուհանդերձ 1909—1911 թթ. ընթացքում Ն. Մառը ձեռնարկեց հուշարձանի պեղումները։ Պարզվեց, որ կառույցը հելլենիստական շրջանի տաճար է, բարձր պոդիումի վրա, պերիպետրի ձևով, հոնիական օրդերի սյունաշարով, հզոր ճակտոնային վերջավորությամբ, նրբաքանդակներով, և իրականացված է ամուր բազալտ քարով։ Այդպես էր պատկերացնում տաճարը արշավախմբի ճարտարապետ Կ. Կ. Ռոմանովը, որն արեց վերակազմության իր նախագիծը։

Սակայն, դրանով չէին ավարտվում հուշարձանի գիտական ուսումնասիրությունները։

30-ական թվականներին տաճարի ուսումնասիրությամբ զբաղվեց Նիկողայոս Բունիաթյանը։ Նա բեկոր առ բեկոր չափագրեց տաճարը, նրա շուրջը փռված բոլոր մանրամասները, արեց վերակազմության մանրամասն նախագիծ, լրացրեց տեղանքի ջրաներկ պատկերներով և այդ ամենը հրատարակեց առանձին գրքով։ Այդ վերակազմության հիման վրա պատրաստված մոդելը մինչև այսօր էլ պահվում է Հայաստանի պետական պատմական թանգարանում, և Ն. Բունիաթյանի վերակազմության հիման վրա է, որ գիտական գրականության մեջ հայտնի դարձավ Գառնիի հեթանոսական տաճարի կերպարը (Նկ. 81—82)։

Այդ մանրամասն չափագրությունների հիման վրա կատարված վերակազմության նախագծի համաձայն 1933—34 թվականներին Ն. Գ. Բունիաթյանը տեղում սկսեց հուշարձանի վերականգնումը[1] (Նկ. 80)։

Ամրացվեցին կառուցվածքի հիմքերը և ստիլոբատը, որոնք բավականին խարխլված վիճակում էին։ Վերաշարվեցին պոդիումի շարքերը մեծածավալ քարերով, որոնք ընկած էին տեղում և հետևապես տաճարի այդ մասի համար նոր քարերի կարիք չէր զգացվում։ Վերաշարվեցին պոդիումի և ցելայի հարավ-արևմտյան, ինչպես նաև նրանց հարավ-արևելյան հիմնովին քայքայված անկյունները։ Պոդիումի, այն է հարթակի վերանորոգմանը զուգահեռ կատարվեց տաճարի ցելայի պատերի վերաշար, սկսած գլխավոր ճակատից։ Սակայն, մի քանի շարք դրվելուց հետո, երբ գործը հասավ մուտքի շրջակալի մեծածավալ բեկորների վերին շարքերին, աշխատանքները դադարեցվեցին, քանզի պարզվեց, որ գոյություն ունեցող պարզունակ մեխանիզմներով անկարելի էր բարձրացնել այդ բազմատոնն քաշ ունեցող բեկորները, և այդ ու այլ պատճառով էլ հուշարձանի վերանորոգումը ընդհատվեց ընդհանրապես։

Գառնիի տաճարի վերականգնման Ն. Գ. Բունիաթյանի սկզբունքը հիմնված է անաստիլոզի մեթոդի վրա, ընդ որում կոնստրուկտիվ անհրաժեշտությունից ելնելով, լրացվող քարերը մշակվում են զանգվածային եղանակով, առանց մանրամասների հետագա մշակման։

30-ական թվականների սկզբին, երբ նոր էին սաղմնավորվում հարցերի մեկնակետերը, Գառնիի հուշարձանի չափագրությունները, վերականգնման նախագծի կազմումը և տեղում նրա մասնակի իրացումը, դրսևորվեցին ուսանելի շատ կողմերով։ Փաստորեն, դա այն ժամանակաշրջանն էր, երբ ճարտարապետական հուշարձանների վերանորոգման գաղափարները, նոր էին սկսվում գիտականորեն համակարգվել, եթե չասենք, որ Հայաստանի համար տվյալ հելլենիստական կոթողը մի եզակի նմուշ էր և որպես այդպիսին զուրկ վերանորոգման համար ավանդական փորձից։

Սակայն, Գառնիի հելլենիստական տաճարի վերականգնման պրոբլեմը միշտ էլ ուշադրության կենտրոնում էր, երբեք դուրս չընկնելով հուշարձանների վերականգնման հրատապ խնդիրների շրջանակից։

Վերջապես, այդ հարցի լուծումը հիմնովին սկսվեց իրականացվել 1969 թվականին։ Դրան նախորդեցին նախապատրաստական մեծ աշխատանքներ՝ նյութական բոլոր կարգի միջոցների ու

---

[1] Ճարտ. Ն. Բունիաթյան. Հեթանոսական տաճար Տրդատի պալատին կից Գառնի ամրոցում։ Հրատ. Մելքոնյան Ֆոնդի, հայերեն, ռուսերեն, ֆրանսերեն ամփոփումով, Երևան 1933։

Աշխատանքների ղեկավարն էր պրոֆ. Ն. Գ. Բունիաթյանը, ճարտարապետ-վերանորոգողը՝ Կ. Լ. Հովհաննիսյանը, քարագործ վարպետները՝ բրիգադավարը՝ Խ. Հակոբյանը։



Նկ. 87. Գառնիի տաճարի վերանորոգված ճակտոնը։

ժամանակակից մեխանիզմների ու մեքենաների հայթայթում, նախագծի ու նախահաշվի կազմում ու կազմակերպչական հարցերի լուծում։ Այս բոլորը հնարավոր դարձրին հուշարձանի վերականգնումը կատարել համաչափ, գիտական բարձր մակարդակով։

Գառնիի տաճարի լրիվ վերականգնման նոր նախագիծը ամենայն մանրամասնությամբ կազմել է ճարտարապետության թեկնածու Ա. Ա. Սահինյանը։ Նախագիծը, նախքան նրա իրացումը, բազմիցս քննարկվել է տարբեր գիտական հաստատություններում և ի վերջո հաստատվել է Հայկական ՍՍՀ Պետշինում և նույնությամբ իրացվել[1]։

Անդրադառնալով Գառնիի տաճարի ճարտարապետական կերպին, որը ստեղծվել է Ա. Սահինյանի նախագծում, կարող ենք համոզվել, որ այն գտնվում է հունա-հռոմեական ճարտարապետության ավանդական ձևերի սահմաններում և բոլոր կարգի անակնկալ տարբերակները նրանում բացառվում են։ Անշուշտ այդ է պատճառը, որ արտաքնապես, Ն. Գ. Բունիաթյանը և Ա. Սահինյանի կազմած նախագծերում չկա ակնառու տարբերություն։ Սակայն, միայն արտաքնապես, քանի որ Ա. Սահինյանի առաջարկած նախագծում կա սկզբունքային տարբերություն՝ դա վերաբերում է հուշարձանի ծածկին։ Ն. Գ. Բունիաթյանը հուշարձանը ծածկում է հելլենիստական տաճարներին ավելի բնորոշ փայտե ծածկով։ Դրան հակառակ Ա. Սահինյանը տաճարի ավերակների մեջ գտել է թաղածածկի համոզիչ հետքեր, որոնք ապացուցում են թաղի առկայությունը նրանում։ Այսպես, նա գրում է՝ «Տաճարի ավերակների մեջ գտնվեցին աղոթասրահի թաղակապ քարաշեն ծածկի գրեթե անաղարտ պահպանված մի շարք բեկորներ, որոնք թե քարի տեսակով (որձաքար) թե հողմահարվածության աստիճանով, թե քարի մշակման ֆակտուրայով, թե մետաղական կապերի համար ունեցած հնագույն խոռոչներով, թե տաճարի բոլոր բեկորների ծանրության ուղիղ կենտրոնում գոյություն ունեցող՝ քարերի բարձրացման համար փորձված (վերևում նեղ, ներքևում լայն չափի) խոռոչի առկայությամբ, պատկանում են տաճարի սկզբնական կառուցվածքին[1]։ Այդպես էլ թաղածածկով վերանորոգվեց տաճարի ներքին տարածությունը։ Մյուս տարբերությունը, նույնպես վերաբերում է ներքին տարածությանը։ Ըստ Ա. Սահինյանի նախագծի տաճարի ներսում գոյություն է ունեցել խորշ և ինչպես հեղինակը ենթադրում է այնտեղ կանգնած է եղել Միհրի արձանը։

Այսպիսով, արտաքնապես սյունահեծային համակարգ ունեցող այս տաճարը, ներքուստ ավարտվում էր թաղային համակարգով։

Նախագիծը հաստատվելուց հետո 1969 թվականին սկսվեց Գառնիի տաճարի վերականգնումը, որը հաջողությամբ ավարտվեց 1974 թվականին (Նկ. 84—88)։

Նկատի ունենալով աշխատանքների ծավալը, որպես շինանյութ օգտագործվող բազալտ քարը և բեկորների արտակարգ քաշը, շինարարական բոլոր պրոցեսները մեքենայացվեցին (Նկ. 36)։ Քարը տաշվում էր հատուկ դազգահների միջոցով, մանրամասները կատարվում էին ձեռքով ու տեղադրվում վերամբարձ կռունկով։ Կոնստրուկցիաների ծածկված մասերում լայնորեն օգտագործվեց երկաթբետոնը, որով լրիվ ապահովվեց կառույցի հակասեյսմիկ դիմադրությունը։ Ինչ վերաբերում է առանձին բեկորների միացումներին, ապա դրանք ամրացվել են կապարով։ Վերջապես ևս մի նորույթ, որը սկսվեց կիրառվել հուշարձանների վերանորոգման մեր պրակտիկայում, դա հիպօքսիդային խեժի օգտագործումն է հուշարձանների բեկորները իրար ամրացնելու գործում։ Պարզվեց, որ այդ սոսինձը, որն առաջարկել էր հանրապետության Քարի ու սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտը (Գ. Դալյան) հաջողությամբ ամրացնում է այնպիսի քար, ինչպիսին է բազալտը, միմյանց հետ միացվող բեկորները դարձնելով մեկ միասնական ամրակուռ զանգված։ Այդ բոլոր աշխատանքներից հետո Գառնիի տաճարը, Հայաստանի հելլենիստական դարաշրջանի ճարտարապետական մշակույ-

---

[1] Աշխատանքների ղեկավար Ա. Սահինյան, օգնականներ ճարտարապետ-վերանորոգողներ Հ. Գասպարյան (1971)՝ Վ. Խաչատրյան (1972), Ա. Աբրահամյան (1973)։ Ա. Դադիյան (1974—75), քարգործ վարպետների բրիգադիրներ Յ. Սարգսյան, Պ. Մարաբյան, Բ. Հակոբյան, Վ. Մակարյան։ Նախագծի բոլոր գծագրերը Ա. Սահինյանի։

[1] Ա. Ա. Սահինյան. Անտիկ դարաշրջանի քարակերտ թաղ Գառնիում, Պատմաբանասիրական հանդես, № 1, 1976 թ., էջ 174։



Նկ. 88. Գառնիի տաճարը. վերանորոգված,
ըստ Ա. Սահինյանի։

թի վկաներից ամենակատարյալն ու վեհաշուքը, վեր խոյացավ գեղատեսիլ բնության գրկում, իր վաղնջական տեսքով, այնպես ինչպես այն հայտնի էր անտիկ շրջանի Հայաստանին։

Այսպիսով, Գառնիի տաճարը հուշարձանների լրիվ վերականգնման ցայտուն ու բնորոշ օրինակներից է։ Հաճախ ասում են, թե ավերակների ձևով փռված հուշարձանները ավելի «ռոմանտիկ» տեսք ունեն, քան վերականգնված վիճակում։ Ակնհայտ է, որ ավերակները մարդու տեսադաշտում միշտ ընկալվում են տվյալ կառույցի նախնական կերպի մտովի ու սուբյեկտիվ վերարտադրումով, ինչը ինքնին արդեն ստեղծագործական մի ակտիվ վիճակ է ենթադրում և առաջացնում է ռոմանտիկայի այդ տպավորությունը։

Ներկայումս, համաձայն Ա. Սահինյանի նախագծի, տեղում սկսվել են համալիրի բարեկարգման աշխատանքները։ Դրանք ընդգրկում են տարբեր կառույցների պահպանված մնացորդների պալատի, բաղնիքի, բնակելի շենքերի, միջ-

նադարյան կլոր եկեղեցու, ինչպես նաև արտաքին պարիսպների կոնսերվացումը, տարածքի ընդհանուր բարեկարգումը—կանաչապատումը, անցուղիների բացումը, սալահատակումը։ Նախատեսվում է նաև հուշարձանախմբի պատմությանը վերաբերող համապատասխան թանգարանի հիմնումը, որտեղ պետք է ցուցադրվեն համալիրի ճարտարապետության ու պատմության հետ կապված համապատասխան նմուշներ։

Բարձր գնահատելով Գառնիի տաճարի վերականգնման աշխատանքները՝ նրա վերանորոգող ճարտ. Ա. Սահինյանը պարգևատրվեց Հայաստանի պետական մրցանակով։

Գառնիի հուշարձանախմբի պատմության ու ուսումնասիրության մեջ նշանակալից աշխուժություն մտցրեց 1945 թ. ամառը, երբ Մ. Սարյանը և Պ. Դավթյանը, գյուղի գերեզմանոցում հունարեն արձանագրություն հայտնաբերեցին։ Ժամանակին այդ արձանագրությունը իր վրա բևեռեց գիտական աշխարհի ուշադրությունը։ Դրա մասին մամուլում արտահայտվեցին՝ Ս. Լիսիցյանը[1], Հ. Մանանդյանը[2], Կ. Տրևերը[3], իսկ հետագայում նաև Բ. Առաքելյանը, որոնք կատարեցին նրա մանրամասն լուսաբանումը, դրսևորելով ընթերցման իրենց տարբերակները։ Կարծիքները, ինչպես կարելի էր սպասել, տարբեր էին։ Խոսքը վերաբերում էր նաև արձանագրության նախնական տեղին, ինչը մեզ համար կարևոր է հուշարձանների արտաքին տեսքի առումով։ Տարաձայնություններ եղան նաև արձանագրության ժամանակագրությունը որոշելիս։ Սա ևս կարևոր հանգամանք է, հուշարձաններին վերաբերող հարցերի ընդհանուր շղթայի մեջ։ Այսպես Ս. Լիսիցյանը և Կ. Տրևերը այն վերագրեցին Տրդատ Առաջինին, այն է առաջին դարին։ Համոզում է նաև Կ. Տրևերի այն կարծիքը, թե Գառնիի հայտնի տաճարը Մովսես Խորենացու տարեգրության մեջ հիշատակված այն տուն-հովանոցը չէ, որ կառուցել էր Տրդատ Երրորդը իր քրոջ՝ Խոսրովադուխտի համար, և որ Մովսես Խորենացու նշած այդ կառույցը պետք է փնտրել այլ տեղ։

1 «Սովետական Հայաստան», 23-ը սեպտեմբերի, 1945 թ.։

2 Հ. Մանանդյանի զեկուցման մասին տես «Սովետական Հայաստան» 23-ը ապրիլի, 1946 թ.։

3 **К. В. Тревер.** Надпись о построении армянской крепости Гарни. Ленинград 1949 г.

**Գնդևանք.**— Գտնվում է Ազիզբեկովի շրջանի Գնդևազ գյուղից 1 կմ հեռավորության վրա, Վայոց ձորի գեղատեսիլ հովտով հոսող Արփա գետի ափին, բարձր սարալանջի վրա։ Հեքիաթային է այս բնապատկերը, գույների իր տարբեր երանգավորումներով, իրար հաջորդող բլուրներով, իրենց լանջերով ու ծալքերով, ինչպես նաև բազալտակուռ հզոր ժայռերով։

Այս հովտի բարձրադիր տեղանքում կանգնած է բնության հետ անխզելի Գնդևանք հուշարձանախումբը, իր Աստվածածին եկեղեցով և նրան կից գավթով, աշխարհիկ կառույցների շրջապատում։ Համալիրի եկեղեցին կառուցել է Սյունյաց իշխան Սմբատի կինը՝ Սոփիան, 936 թվականին։ Նրա թողած հիշատակարանում կարդում ենք՝

«Մատանի էր անակն Վայոց ձոր։ Շինեցի զսա եւ եդի ակն վերայ», որը մի տուրք է բնության ու ճարտարապետության հրաշալիքների։

Հուշարձանի արևմտյան պատին կից Քրիստափոր վանահայրը՝ 999 թվականին կառուցել է գավիթը, որն այդ տիպի շենքերի հնագույններից է (Նկ. 89)։

Ըստ իր հատակագծային հորինվածքի, Գնդեվանքի Աստվածածին եկեղեցին քառաբսիդ մի կառույց է, որտեղ արևելյան երկու ավանդատները հուշարձանի դրսի խաչաձև եզրագծին տվել են նրա արդի տեսքը։ Հուշարձանի ներսում պահպանվել են որմնանկարների առանձին պատառիկներ։ Կոմպոզիցիոն լուծումով և թե կատարողական վարպետությամբ մի անզուգական օրինակ է Աստվածամոր կերպարը, որը պատկերված է հյուսիսային ավանդական արևմտյան պատին։

Մյուս կառույցը գավիթն է, հատակագծում արտաքուստ քառակուսուն մոտ մի շենք, որը հյուսիսային հատվածում ներքուստ ունի ավանդատուն, իսկ նրանց կից կամարակապ տարածություն։ Գավիթը եղել է թաղածածկ, արևելք-արևմուտք շեշտված առանցքով։ Հուշարձանները կառուցված են սրբատաշ կապույտ բազալտից։ Թեև իրենց գոյության ընթացքում հուշարձանները պարբերաբար վերանորոգվել են, որոնց հետքերը պարզ երևում են և այդ մասին կան նաև մի քանի մատենագրական տեղեկություններ, սակայն այսուհանդերձ կառույցը մեզ է հասել խիստ







Նկ. 89. Գնդևանքի տաճար. չափագրություններ, նախագիծ։



Նկ. 90. Գնդևանքը վերանորոգումից առաջ։

ավերված վիճակում։ Ընդ որում քայքայման պրոցեսն անընդմեջ շարունակվում էր, մինչև որ ձեռնարկվեց վերականգնումը։ 1959 թվականին, երբ սկսվեց Հուշարձանախմբի վերականգնումը, այն հետևյալ վիճակում էր։

Եկեղեցու 12 նիստ ունեցող վեղարը ավերված էր։ Թմբուկը բազմաթիվ տեղերում վտանգավոր ճեղքվածքներ ու քայքայված հատվածներ ուներ։ Առավել վտանգավոր վիճակում էին Հուշարձանի պատերը, որոնք կարիք ունեին ոչ միայն վերաշարի, այլև նոր շարքերի։ Հատկապես քայքայված էին ծածկերը, որոնց ընդհանուր տեսքը, առանձին հատվածներում, ավելի շատ նման էին տձև քարակույտի, քան որմածքի միջուկային մասին։ Հասկանալի է, որ այդպիսի վիճակի հասած շենքը չէր կարող պահպանել իր քիվերը, որոնց առանձին բեկորները հայտնաբերվեցին շրջակա քարակույտերի ղանգվածներում։

Գավիթը էլ ավելի վթարային վիճակում էր. ընկել էր ծածկը, որի անհետացած ձևերը կարելի էր վերարտադրել միայն հազիվ պահպանված հետքերի հիման վրա։ Խարխլված վիճակում էին նաև գավթի պատերը ու հատկապես հարավային պատը, որից մնացել էին ընդամենը որմածքի 3—4 շարքերը։

Հուշարձանը իր այդ դրությամբ սպունգի նման ներծծում էր ու ողողվում անձրևաջրերով, որոնք էլ ավելի էին խորացնում ընդհանուր վթարային վիճակը, անընդմեջ ու արագորեն քայքայելով այն։ Այդպիսին էր Հուշարձանի վիճակը նրա վերանորոգումից առաջ (Նկ. 90)։

Ելնելով Հուշարձանախմբի նման վիճակից,



Նկ. 91. Գնդևանքը վերանորոգված վիճակում։

Նրա վերանորոգման սկզբունքների մասին ժամանակին արվեցին մի շարք առաջարկություններ։ Մի մասն առաջ էր քաշում կոնսերվացման, իսկ մյուս մասը՝ լրիվ վերականգնման խնդիրը, հիմք ընդունելով այն հանգամանքը, որ տեղում պահպանվել է ընկած բեկորների մեծ մասը։

Այս կարծիքի հավաստիությունը հաստատեցին հուշարձանախմբի տարածքում կատարված հնագիտական մաքրման աշխատանքների արդյունքները։ Ի հայտ եկան պատերի, թաղերի, քիվերի, ինչպես նաև ծածկասալերի բազմաթիվ բեկորներ։

1959 թվականին կազմվեց հուշարձանի վերանորոգման նախագիծը, ըստ որի հաջորդ տարի պետք է սկսվեին աշխատանքները[1]: Սակայն, մի հիմնական հանգամանքի պատճառով գործը կասեցվեց։ Հուշարձանախումբը, որը վեր էր խոյա-

[1] Նախագծի հեղինակ Ա. Միրիջանյան։ Հետագայում նախագիծը մասնակի վերամշակել են Ա. Հարությունյանը և Յու. Թամանյանը։ Աշխղեկներ՝ Ա. Հարությունյան (մինչև 1968 թ.), Շ. Մակյան (1968 թ.), Գ. Դանիելյան (1968 թ.)

*նում գեղատեսիլ բնության բարձրադիր մասում չուներ մայրուղուց դեպի բարձրունքը որևէ ճանապարհ։ Այսպիսի պայմաններում ամենահարմարավետ միջոցը ճոպանուղին էր, որով պետք է շինանյութ տեղափոխվեր Արփա գետի վրայով, քանի որ կամուրջի կառուցումը կպահանջեր բավականաչափ ժամանակ։ Սակայն, կարճ ժամանակ անց ճոպանուղու գաղափարը դուրս մղվեց, բոլոր խելամիտ թվացող միջոցառումների կիրառման փորձերից հետո, և հարցը նորից թեքվեց դեպի կամուրջի կառուցումը։ Բայց այստեղ էլ Արփան դրսևորեց լեռնային գետի իր պոտենցյալ ուժերը ու մի գիշեր անհետ լափեց շուտափույթ կառուցած կամուրջը։*

*Առաջ քաշվեց նոր ու հիմնական կամուրջի կառուցման հարցը, տեխնիկապես ավելի դիմացկուն ու կատարյալ կամուրջ, որի շինարարությունը սկսվեց ու ավարտվեց 1967 թվականին։ Սակայն, դրանով չէ որ ավարտվեցին շինանյութի տեղափոխման բոլոր դժվարին պրոբլեմները։ Արփայի մյուս ափին սարալանջը ուներ մեծ թեքություն, ուր կար միայն հազիվ նշմարելի ու տեղ-տեղ էլ անհետացող արահետ։ Հետևաբար, հարկ եղավ տեղանքի այդ դժվարին պայմաններում անիվային տրանսպորտի համար բացել հարմարավետ ճանապարհ։ Այն բացվում էր ոլորապտույտ ուղիներով, մխրճվելով սարալանջերի խորության մեջ և այդպիսով հասավ սարն ի վեր։ Այսպիսի ճանապարհով, որից հեռու չէր վտանգը, շինանյութի հարյուրավոր տոննաներ վերջապես հասան հուշարձանների շինարարական հրապարակը։ Այստեղ արդեն իրենց վարպետությամբ փայլատակեցին հուշարձանների վերանորոգման բնագավառի, նման գործերում կոփված ավտովարորդները, որոնք ծանոթ էին դեպի հուշարձան տանող բոլոր լեռնային դժվարին անցումներին, միայն իրենց հայտնի հնարամտությունների շնորհիվ։*

*Եվ այսպես 1968 թվականին սկսվեց հուշարձանախմբի տաճարի ու գավթի միաժամանակ վերականգնումը։ Այդ աշխատանքները սկսվեցին նրանց վնասված պատերից, ընդ որում կատարվում էր ինչպես վերաշար, այնպես էլ նոր քարերից շարվածք։ Պատերի որմածքի լրիվ ամրացումից հետո, հնարավոր դարձավ վերականգնել ծածկերը, քանի որ նրանց առանձին հատվածները մինչ այդ, հատկապես գավթում պահպանվում էին կախված վիճակում, առանց հենապատերի։ Այս ուղղությամբ առավել հիմնական աշխատանքներ կատարվեցին գավթում, ուր գոնեթե լրովին ավերված էր, ժամանակին երկու կամարների վրա նստած, կտրվածքում սլաքաձև թաղը։ Այս ծածկը վերականգնելուց հետո, գավիթը ներքուստ ստացավ իր նախնական տեսքը, իսկ արտաքնապես տեսանելի դարձավ նրա բնորոշ ձևը։ Կենտրոնական երկթեք և կողքերի ցածրադիր մասերի միաթեք տանիքների լանջերը ստացվեցին միևնույն հարթության մեջ, միաձուլվելու չափ շատ մոտ մակարդակի վրա։ Այլ կերպ, այս ձևը իր արդի տեսքով կարելի է դասել մեր ճարտարապետության հազվագյուտ օրինակների շարքը։*

*Ինչ վերաբերում է եկեղեցու ծածկերի վերանորոգմանը, ու հատկապես նրա խիստ քայքայված գմբեթին, որն արդեն անհնարին էր պահպանել կոնսերվացման եղանակով, այստեղ կատարվեց այդ ամբողջ համակարգի վերաշարը։ Դրա համար, նախապես իջեցվեցին թմբուկի հազիվ պահպանվող մնացորդները։ Վերաշարի ընթացքում, թմբուկի ստորին ու վերին մասերում տեղավորվեցին երկաթ-բետոնե գոտիներ, որոնք ոչ միայն ապահովեցին թմբուկը սովորական քայքայումից, այլև դարձան այդ լեռնային պայմաններում հակասեյսմիկ դիմադրության առավել ապահով միջոցը։*

*Այդ աշխատանքները ավարտելուց հետո, հուշարձանների տանիքները ծածկվեցին մեծադիր սալերով։ Գավթի մասում այն ծածկասալերը հարթ տեսակի են, քառորդները հանած և առանց ելուների, ինչպես եղել է անցյալում։ Իհարկե ելուներով ծածկը ավելի կատարյալ է տեխնիկական տեսակետից, սակայն ներկա դեպքում ինչպես և բոլոր նման դեպքերում պահպանվում է հուշարձանների նախնական ձևը, որպես պատմաճարտարապետական փաստ։ Եկեղեցու ծածկերը վերանորոգվեցին կիսակլոր ելունավոր ծածկասալերով, ինչպես այդ պահպանվել էր հուշարձանի վրա։*

*Բացի կառույցների նշված վերանորոգումից, վանքապատկան տարածքի վրա կատարվեց նաև որոշ նախնական փոքրածավալ բարեկարգման աշխատանք։ Հիմնականում դա վերաբերում է տեղանքի հարթեցման և հարթակների ամրա-*

ցումը գետաքարով շարված հենապատերի միջոցով։ Այս ամբողջ աշխատանքը ավարտվեց 1970 թվականին։ Այսպիսով, կատարվեց տվյալ հուշարձանի լրիվ վերականգնումը, ընդհուպ մինչև իր ձևերի մանր պլաստիկան արտահայտող հանգույցները (Նկ. 91)։

Հուշարձանախմբի վերանորոգման աշխատանքները կատարվեցին պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության պատվերով ու նրա միջոցներով։

Մնացած միջոցառումները թողնվեցին հետագային, դա վերաբերում է տվյալ տարածքի վրա գտնվող XVII դարի աշխարհիկ կառույցների բարեկարգմանն ու վերանորոգմանը ու դրանց օգտագործումը ժամանակակից տուրիստական պահանջների համար, մանավանդ, որ տվյալ տարածքը իր բնապատկերներով ու հուշարձանների վեհաշուք ճարտարապետությամբ, հոյակերտ անկյուն է։

Պետշինի ճարտարապետական հուշարձանների պահպանության ու վերականգնման վարչությունը 1970 թվականին Գնդևանքի տարածքի վրա հիմնեց թանգարան, որտեղ ցուցադրվում են, ինչպես տվյալ համալիրի ճարտարապետությանը, այնպես էլ շրջանի այլ հուշարձաններին վերաբերող ուշագրավ նյութեր, որոնք գտնվում են տուրիստների համար, համեմատաբար, հեռու կամ անմատչելի վայրերում։

Այսպիսով, այժմ, երբ հուշարձանախումբը իր նախնական տեսքով հանդես է գալիս Վայոց ձորի գեղատեսիլ գրկում, կարող ենք լրիվ հասկանալ ու համապատասխանորեն ընկալել Սյունյաց Սմբատ իշխանի տիկնոջ Սոֆիայի խոսքերը։

«Մատանի էր անակն Վայոց ձոր։ Շինեցի զսա ի եդի ակն ի վերայ»։

## ՃԱՐՏԱՐԱԳԻՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ

Ճարտարագիտական հուշարձանները պատմական այն կառույցներից են, որոնք իրենց կիրառական նշանակությունից և դրանց համապատասխանող պահանջներից ելնելով անընդմեջ շահագործվել են, պարբերաբար վերանորոգվել, իսկ հաճախ նաև վերափոխվել։ Այս առումով էլ այդ կառույցները, որոնք մեզ են հասել նման տեսքով, դրսևորում են իրենց ձևերի, հորինվածքների ու կան կառույցների տեխնիկական մտքի զարգացման պրոցեսը։ Դա պայմանավորված է այդ կառույցների ուրույն տեխնոլոգիական և գրեթե միշտ նորովի պահանջներով։ Հետևաբար, սխալված չենք լինի, եթե ասենք, որ ճարտարագիտական կառույցների տեխնիկական մտքի զարգացումն է արտահայտված կոնստրուկտիվ հորինվածքներով, որ զարկ է տալիս աշխարհիկ, ինչպես նաև մոնումենտալ պաշտամունքային շենքերի ճարտարապետական ձևերի զարգացմանը։

Մեկնակետային տվյալ հանգամանքը պայմանավորված է նրանով, որ ճարտարագիտական կառույցները ավելի սերտորեն են առնչվում ինչպես արտադրական ուժերի, այնպես էլ արտադրական հարաբերությունների հետ, միշտ մնալով ժամանակի շինարարության բնագավառի կիզակետում, ուր ուղիներ են հարթվում նրանց ճարտարապետական հորինվածքների զարգացման համար։

Այդ կառույցներից, որոնք ժառանգաբար մեզ են հասել հնագույն դարերից, առավել նշանակալիցներն են՝ կամուրջները, ջրանցքները, ջրատար համակարգերը, թունելները, ճանապարհները, պաշտպանական կառույցները, ինչպես նաև արտադրական շենքերը։

**Կամուրջներ.**— Կամրջաշինարարությունը Հայաստանում ունի հնագույն ավանդույթներ, այն գալիս է դեռևս ուրարտական դարաշրջանից, իսկ առավելապես ցայտուն արտահայտվել է միջնադարյան Հայաստանում։ Այդ ժամանակներում կամուրջները կապված լինելով երկրով անցնող միջազգային կարևոր տարանցիկ ճանապարհների հետ ու կառուցված նրա մայրուղիների վրա, պարբերաբար պահվում էին պատշաճ վիճակում, քանի որ նրանց խնամքը, ելնելով երկրի տնտեսական ու ռազմական շահերի հրամայական պահանջներից, տնօրինվում էր անմիջապես պետության կողմից։ Կամուրջները, որոնք ճարտարագիտական կառույցներից առավել նշանակալիցներն են, մեզ են հասել ինչպես միաթռիչք, այնպես էլ բազմաթռիչք հորինվածքների ձևով, թեև



Նկ. 92. Սանահնի կամուրջը վերանորոգումից հետո։

գերակշռող մասը ու հատկապես առավել հնագույները, որոնք կառուցված են լեռնային վայրերում, սովորաբար միաթռիչքներն են։ Առ այսօր կանգուն ու գործող կամուրջները հաստատում են, որ դրանք իրենց կրողունակությամբ, բազմապատիկ գերազանցում են նրանց համար նախատեսված բեռնվածության սահմանը։ Նրանց մի մասը ուշագրավ է նաև իրենց ֆունկցիոնալ ձևերի առանձնահատկությամբ։ Կիսով չափ պահպանված կամուրջներից մեկը, օրինակ Ջրփլուի հայտնի կամուրջը, ունի նաև ջրանցույցի ֆունկցիա, իսկ Անիի մեծ կամուրջներից մեկը բնորոշ է պաշտպանության համար կատարվող իր բարձրացող երթևեկային մասով։

Այս կամուրջները, ինչպես նաև շատ ավելի ուշ ժամանակներում կառուցվածները, և դրանց թվում, օրինակ, Ազատեկգէսի կամուրջը հաստատում են, որ կամրջաշինարարները Հայաստանում, ամենայն վարպետությամբ կարողանում էին հաղթահարել տեղանքի, նույնիսկ չափազանց բարդ պայմանները։ Ի դեպ, նրանում երթևեկային մասը իրականացված է փայտյա գերաններով, ինչը հազվադեպ է Հայաստանի տվյալ կառույց-

ների համար[1]: Տեղանքի հնարամիտ օգտագործման փաստ է Ջրփլուի կամուրջը, որի շինարարը մեծագույն վարպետությամբ կամրջի ձախակողմյան մասը հպում է ուղղաձիգ բազալտե ապառաժի փոքր ու աննշան ելուստին։

Կամուրջների հիմնական շինանյութը քարն էր՝ մաքուր կամ կոպիտ մշակումով։ Շատ հազվադեպ, նրանցում օգտագործվել է նաև աղյուս, ինչպես նաև, երթևեկային մասի համար՝ փայտ։ Հարկ է նշել, որ հինավուրց կառույցներից, այդ թվում և կամուրջներից վերցրած տուֆ քարերի փորձարկումները հաստատեցին, դարերից հետո նույնիսկ նրանց հիմնական ֆիզիկոմեխանիկական ցուցանիշների պահպանությամբ, այն է՝ ամրությամբ, ջրադիմացկունությամբ, ցրտադիմացկունությամբ նրանք շատ ավելի կայուն են ինչը չի կարելի ասել ֆելզիտային տուֆերի մասին[2]։

Հուշարձանների պահպանության մարմինները Հայաստանում տարբեր տարիներին վերանորոգել են մի շարք կամուրջներ։ Այդ թվում՝ Սանահինի, Եղեգնաձորի, Աշտարակի, Օշականի, Ավանի, Երևանի և մյուս կամուրջները։

**Սանահնի կամուրջը.—** Գտնվում է Ալավերդի քաղաքի սահմաններում, կառուցված է XII դարում Դեբեդ գետի վրա, Վանենի թագուհու կողմից, որի մասին խաչքարի հակառակ երեսի վրա նա թողել է բավական ընդարձակ արձանագրություն։ Այդ խաչքարը, որը ժամանակին կանգնեցված էր կամրջի մոտ, շեշտված ձևով նրա ձախ կողմից, բարձր պատվանդանի վրա, այժմ պահպանության համար տեղափոխված է Սանահնի վանքի թանգարանային հատվածը։ Կամուրջը միաթռիչք է, 17,50 մետր բացվածքով և իր աստիճանաձև փոխանցումներով կապում է աջափնյա ապառաժը ձախ կողմի ավելի ցածր ափի հետ։ Ժամանակին աստիճանաձև է եղել նաև կամրջի երթևեկային մասը, որի ձևը բացվեց վերջերս. կամուրջի մաքրման աշխատանքների ընթացքում։ Դրանով կամուրջի կոնստրուկտիվ կառուցվածքը ստեղծում է տրամաբանական պարզություն ունեցող ճարտարապետական ձև (Նկ. 92—93)։



Նկ. 93. Սանահնի կամրջի երթևեկային մասը։

Սանահնի կամուրջը Երերույքի տաճարի հետ մեկտեղ, այն կառույցն է, որոնցով սկսվեց Հայաստանում հուշարձանների վերանորոգման գործը 20-ական թվականներին։ Սակայն, կամրջի այդ առաջին վերանորոգումը, որը կատարվեց 1929 թվականին, ճանապարհաշինարարական վարչության կողմից, հիմնականում հետապնդում է կիրառական լուծումներ, քանի որ դիտվում էր որպես գործող կառույց, ընդ որում միակը, որը Սանահին գյուղը կապում էր Ալավերդու հետ։ Հետագայում կամուրջը երկու անգամ ևս վերանորոգվեց[1]:

1940 թվականի աշխատանքների ընթացքում հիմնականում կատարվել է կառույցի ճակատների վերաշար, քանի որ նրանց շարքերի սրբատաշ քարերը բավականին փքվել էին ու սպառնում էին ամբողջ որմածքի քայքայմանը։ Սակայն դրանով չապահովվեց կամրջի պատշաճ վիճակը և արդեն 50-ական թվականներին նույն դրությունը կրկնվեց։ Ինչպես այս անգամ պարզվեց, վթարային վիճակը ստեղծվում էր կամրջի դրենաժային համակարգի շարքից դուրս գալու հետևանքով, որի վերանորոգումը 1955 թ. դարձավ կամրջի նորոգման աշխատանքների հիմնական նպատակը։ Հաստատվեց, որ դրա շնորհիվ, կառույցի կոնս-

---

[1] Վ. Մ. Հարությունյան, միջնադարյան Հայաստանի քարվանատներն ու կամուրջները, Հայպետհրատ, 1960, էջ 109—112։

[2] З. А. Ацагорцян. Долговечность..... էջ 103—104։

[1] 1929 թվականին վերանորոգեց ճանապարհային շինարարության վարչությունը, 1940 թվականին՝ նույն վարչության աշխղեկ Վիրաբյանը, 1955 թվականին՝ ճարտարապետական հուշարձանների պահպանության վարչության արվեստանոցը՝ ճարտ. Ս. Հարությունյան։



Նկ. 94. Եղեգնաձորի կամուրջը վերանորոգումից հետո։

տրուկցիաներում տեղի են ունեցել զգալի տեղաշարժեր, հատկապես նրա ճակատային հարթությունների ու թաղերի մասում, որի հետևանքով բավականին ընկել էր կամրջի կրող ունակությունը ,նախկինում սահմանված 12—14 տոննանոց տրանսպորտի անցման համար։ Այդ կապակցությամբ, անհրաժեշտ եղավ լրիվ բացել կամրջի երթևեկային մասը։ Այդ նույն ժամանակ վերաշարվեցին նաև կամրջի ճակատային մասերի որմածքների բոլոր փքված մակերեսները։ Այդ աշխատանքների շնորհիվ կառույցը ամրացվեց տեխնիկապես միանգամայն հուսալի ձևով։

Ներկայումս, երբ քաղաքում Դեբեդ գետի վրա կառուցված է նոր, ժամանակակից պահանջներին համապատասխանող կամուրջ, պատմական կամուրջը թողնված է միայն հետիոտն շարժման համար և ծառայում է «հուշարձան» հասկացողության բուն նպատակին։

**Ագարակաձորի կամուրջը.**— Գտնվում է Եղեգնաձորի շրջանի Այար գյուղից 1,5 կմ դեպի արևելք, Արփա գետի վրա, որը այնտեղ հոսում է տեղանքի համեմատաբար հարթ տարածքում։ Պատմական այս կամուրջը կառուցված է 13-րդ դարում, հիմնականում գորշ գույնի սրբատաշ ավազաքարից ամրացված կրաշաղախով։ Կամուրջը մեկ թռիչքանի է, թաղի երկկենտրոն շեշտված բարձր բացվածքով։ Կառույցն ունի բազմաթիվ վերանորոգումների հետքեր, հաճախ քարերի տարբեր մշակումով։ Այն վերանորոգվեց 1957 թվականին, երբ պարզվեց, որ նրա ձախակողմյան հիմքը, թաղի իր ամբողջ լայնությամբ պարբերաբար ողողվելով Արփա գետի ջրերի արագընթաց հոսանքով, ստացել էր հորիզոնական լայն բացվածք, որի հետևանքով այդ կողմի հոծ զանգվածը մնացել էր կախված գետի մակերեսի վրա։ Այսպիսով, անհրաժեշտ էր վերականգնել կամրջի քայքայված խելը, նոր որմածքով լրացնելով նրա ողողված ծավալները։ Այդ կապակցությամբ հարկ եղավ ժամանակավոր հենապատերով անջատել ձախակողմյան խելը գետի ջրերի հոսանքից, որը և կատարվեց աշխատանքի սկզբում։ Դրանից հետո միայն քայքայված զանգվածը շարվեց բազալտ քարով ու բարդ շաղախով և ապա երեսապատվեց նույն բազալտով։ Այս ձևով ամրացված կամուրջը, որն հաճախ ենթարկվում է Արփա գետի բուռն հոսող



Նկ. 95. Երևանի «Կարմիր» կամուրջը վերանորոգումից հետո



Նկ. 96. Նորքի կամուրջը վերանորոգումից հետո։



Նկ. 97. Աշտարակի կամուրջը վերանորոգումից հետո

ջրերի հարվածներին, պահպանեց իր լիակատար կայունությունը[1] (Նկ. 94)։

Վերանորոգված կամուրջների շարքում է նաև Հրազդան գետը հատող Երևանի Խոջա-Փլավի կամ Կարմիր կոչվող կառույցը, որը գտնվում է քաղաքի հարավ-արևմտյան մասում։ Կամուրջը կառուցվել է 1679 թվականին, մեծ երկրաշարժից հետո, որից առաջ այնտեղ գոյություն ուներ համարյա նույնանման մի կամուրջ, եթե միայն ճիշտ է Ֆրանսիացի ճանապարհորդ Ժան Բաբտիստ Տավերնեի այդ կամրջի թողած նկարը։ Կամուրջը կառուցվել է քանաքեռցի մեծահարուստ Խոջա-Փլավի միջոցներով, և այդ պատճառով էլ կոչվում էր նրա անունով, իսկ Կարմիր էր կոչվում իր համապատասխան երանգավորման համար (Նկ. 95)։

Կամուրջը կառուցված էր քաղաքի ստրատեգիական նշանակություն ունեցող կարևոր մասում։ Այստեղ Հրազդանի բարձր ափին էր գտնվում Երևանի հնագույն բերդը, որն իր տեսադաշտում էր պահում Արարատյան դաշտի կողմից դեպի քաղաք ուղղված կարևոր մայրուղիները։ Ռազմական այս պահանջի կապակցությամբ էլ կամուրջը պարբերաբար վերանորոգվում էր և երբեք չէր հասնում քայքայման աստիճանի։ Նրա վրա կատարված բազմաթիվ վերանորոգումներից, որոնց հետքերը տեսանելի են կառույցի որմածքի վրա, հավանաբար, ամենահիմնավորը տեղի է ունեցել 1830 թվականին։

Կարմիր կամուրջը երկթռիչքանի է, յուրաքանչյուրը 14,00 մետր բացվածքով, եթե չհաշվենք առափնյա երկու փոքր բացվածքները՝ 3 մետրանոց թռիչքներով, որոնցով անցնում են Հրազդանից ճյուղավորված ջրատարները։ Ներկայումս կամուրջը դուրս է մնացել Երևան—Էջմիածին նոր մայրուղուց և թողնված է միայն հետիոտն և տեղական ներթաղային նշանակություն ունեցող շարժումների համար։ Այսուհանդերձ, հարկ եղավ վերջին տասնամյակի ընթացքում երկու անգամ՝ 1962-ին և 1970-ին նորոգել հուշարձանը[2]։ Այդ

[1] Հուշարձանների պահպանության վարչության պատվերով աշխատանքները կատարել է Իջևանի շրջանի ճանապարհային բաժինը (Ս. Ս. Խուդոյան) և Հ. Գ. Վ. Ա. արվեստանոցը՝ Ա. Հարությունյանի ղեկավարությամբ։

[2] Վերանորոգող ճարտարապետ Ա. Հարությունյան, քարագործ վարպետների բրիգադիր Օ. Մնեջյան։



Նկ. 98. Աշտարակի կամրջի կենտրոնական թռիչքը վերանորոգումից հետո

տարիներին վերանորոգվեցին կամրջի աջ ափի հյուսիսային և հարավային խելը, իսկ ձախ ափի հարավային ճակատները, որոնց որմածքները ժամանակի ընթացքում բավականին փքվելով ավերվել ու քայքայվել էին։ Այս վերանորոգումների ընթացքում, որոնք կատարվեցին խառը շաղախով, հարկ չեղավ նոր քարերի, քանի որ բոլոր թափված քարերը գտնվեցին իրենց տեղերում։

Վերանորոգվեց նաև կառույցի երթևեկային մասը, որն իր ամբողջ լայնությամբ (6,50 մ) տեղ-տեղ բոլորովին քայքայվել էր։

Ժամանակին, երբ կամուրջը գտնվում էր գործող մայրուղու համակարգում, նրա շրջակայքում դետափը կառուցապատվել էր բնակելի բազմաթիվ շենքերով, որոնց մի մասը կրեթե հպված էր հուշարձանին։ Երևանի 2750-ամյա հոբելյանի կապակցությամբ, քաղաքի հուշարձանների բարեկարգման նպատակով ձեռնարկվող միջոցառումների շնորհիվ դրանք վերացվեցին, թողնելով կամուրջը իր վաղնջական բնապատկերին մոտ տեսքով։

Նման ձևով վերականգնվեցին վերևում նշված մյուս կամուրջները, որոնցում հիմնականում քայքայված էին արտաքին երեսապատերը, շարքերի փըված լինելու պատճառով, խելերը, ինչպես նաև երթևեկային մասերը։ Վերանորոգումից հետո բոլոր այդ կամուրջները ներկայումս շարունակում են գործել։ Բացառություն է Նորքի ձորի փոքր կամուրջը Գետառի վրա, որը դուրս մնալով նոր բացված մայրուղուց մնաց տեղանքի փակուղու մեջ որպես պատմական գողտրիկ հուշարձան։ Կամուրջը 1664 թվականին կառուցել է Նորքեցի Հովհաննես վարդապետը։ Կառուցող վարպետը, համաձայն եղած արձանագրության, Գրիգորի որդի Կիրակոսն է (Նկ. 96)։

Կամուրջը միաթռիչք է, երկենտրոն կամարով, կառուցված կարմրավուն տուֆ քարից։ Ժամանակի ընթացքում քայքայվել ու անհետացել են կամրջի երեսպատ առանձին քարերը և ձախակողմյան խելի հիմնապատը, ինչպես նաև բազրիքները, որոնք շարվեցին նոր տաշված քարերով և կամուրջը վերականգնվեց։

**Բերդեր ու բերդապարիսպներ.**— Հայաստանի համար, որը պատմական բախտի բերումով հաճախ էր վերածվում ռազմադաշտի, հրամայական էր պաշտպանական կառույցների անհրաժեշտությունը։ Այդպիսիները լայն ցանցով ծածկում էին ամբողջ երկիրը և տարբեր էին իրենց ֆունկցիոնալ առումով ու ձևերով։ Պաշտպանողական կառույցները, բերդապարիսպների ձևով շրջապատում էին մեծ ու փոքր քաղաքները, դարձնելով դրանք անառիկ (Էրեբունի, Անի, Դվին)։ Նման ձևով էին պատսպարվում նաև Ֆեոդալական մեծ դղյակների ու վանքերի (Ամբերդ, Ախթալա, Տաթև և մյուսները) տարածքները, հատկապես իրենց առավել կարևոր կամ խոցելի հատվածներում։

Բացի պարիսպների օգտագործումից, որպես բնակատեղիների պաշտպանական միջոցառումներ, կառուցվում էին նաև առանձին բերդեր, որոնք ռազմաստրատեգիական հենակետեր էին և հաճախ էլ ունենալով առաջակալներ, կազմում էին առանձին քաղաքների համար ստրատեգիական նշանակություն ունեցող պաշտպանական համակարգեր։ Այդպիսիք ստեղծվում էին մայրուղիների վրա (Մաղաս բերդ, Բաղա-բերդ, Տիգնիս)։

Սակայն, սրանով էլ չէին ավարտվում պաշտպանական ընդհանուր կարգի միջոցառումները երկրում։ Քանի որ եկեղեցական շենքերը ամրա-





Նկ. 99. Ախալքալաքի պարիսպների աշտարակը վերա-
նորոգումից առաջ և հետո

կուռ կառույցներ էին, շինված ամուր քարից ու շարվածքի նույն սիստեմով, նրանք ևս վտանգի դեպքում դառնում էին ռազմական հենակետեր, սովորաբար տեղական ազգաբնակչության պաշտպանելու նպատակով։ Այդպիսի ամրություններ են վերածվել օրինակ, Աշտարակի ծիրանավոր եկեղեցին, Թարգմանչաց վանքը, Օղուզլուի, Արգինայի եկեղեցիները և մյուսները։ Հայտնի է, որ դեռ ուրարտական ժամանակներից բերդերն իրար հետ հաղորդակցվում էին տեսողական կապով և համապատասխան հաղորդակցությունները կատարվում էին կրակի պայմանական նշաններով։ Գուցե Հայաստանում ևս բերդերի միջև կիրառվել է նաև ձայնական կապ, ինչպես դա եղել է Հարևան Իրանում Կյուրոսի օրոք։

Հասկանալի պատճառներով, պաշտպանական կառույցները, որոնք միշտ էլ եղել են ռազմական գործողությունների կենտրոնում, հիմնովին ավերվում էին, իսկ հաճախ էլ կործում էին անհետ։ Այս առումով էլ մեզ հասած և համեմատաբար նզակի թվով պահպանված ավերակների նորոգումը և կամ հնարավորության դեպքում վերականգնումը, դառնում է առաջնահերթ ու կարևոր միջոցառում։

Կանգ չառնելով մանր վերանորոգումների վրա, որը ժամանակի ընթացքում կատարվել է Հայաստանի տարածքի տարբեր մասերում, բերենք միայն նրանցից առավել նշանակալիցները, որոնցից են՝ Էրեբունի միջնաբերդի պարիսպների վերանորոգումը, Գառնիի միջնաբերդի տարածքը եզրող պարիսպների բացումը բերածո հողի շերտերից, Ներքին Թալինի ամրոցի ու Ախալքալաքի պարիսպների նորոգումները։ Վերջինս գտնվում է Թումանյանի շրջանի երկաթգծի համա-





*Նկ. 100. Ախթալայի համալիրի պարիսպների մուտքը վերանորոգումից առաջ և հետո։*

նուն կայարանից մոտ 3 կմ դեպի հյուսիս, սրընթաց Դեբեդ գետի գեղատեսիլ կիրճի մի բարձրադիր տեղամասում, որտեղից բացվող տեսադաշտը իր մեջ առնում է այն բոլոր ճանապարհները, որոնք մոտենում են ամրոցին։ X դարում, Բագրատունիներին ենթակա Կյուրիկյան թագավորության օրոք, ամրոցը նրանց հուսալի հենակետն էր երկրի այդ մասում։ Կանգնած լինելով բարդ տեղանքում, ամրոցի պարիսպները վեր են խոյացել առավել խոցելի տեղերում, մնացածը թողնելով բնական անառիկ ապառաժների հույսին։ Այսպիսով ստեղծվեց պաշտպանական մի ամրակուռ համակարգ։ Վերջինիս կառուցվածքի հիմնական հատվածը կանգուն է ամրոցի գլխավոր մուտքի մասերում, որտեղ և գտնվում է շուրջ 25 մետր բարձրությամբ ամրոցի ամենամեծ ու իր հատակագծում կլոր աշտարակը։

Պարբերաբար քայքայվելով, ամրոցի այս աշտարակը ի վերջո խիստ վթարային վիճակով կանգնեց ավերման վտանգի առաջ (Նկ. 99)։

Վերանորոգման պրոցեսի բարդությունը այն էր, որ պարբերաբար պոկվելով ցած էին ընկնում բուրգի մեծածավալ քարերը, իսկ ներքևում կար ընդամենը մեկ մուտք, այն էլ բանավանի բնակիչների անցուդարձի համար։ Այսպիսի պայմաններում 1957 թվականին սկսվեց Ախթալայի ամրոցի մուտքի հատվածի վերանորոգումը, և նկատի ունենալով կառույցի խիստ քայքայված վիճակը, աշխատանքը կատարվեց երկու հերթով և ավարտվեց 1959 թվականին։ Առանձին տեղերում ամրացվեցին կառույցի հիմքերը, վերաշարվեց մուտքի թաղի հիմնական մասը, նրա արտաքին կամարները, մույթերը, անկյունները, աշտարակը։ Քայքայված ու ջարդված հին քարերի փոխարեն զգալի չափով օգտագործելով նոր քարեր[1] (Նկ. 99—100)։

Մեծ աշտարակում վերանորոգվեցին միջին կամարները, որոնք ողջ համակարգում այն հիմնական հանգույցներն էին, որոնցից կախված էր

[1] Հուշարձանը չափագրել են՝ Ս. Մարգարյանը, Ն. Պապուխյանը, Գ. Տոնոյանը։ Նախագծի հեղինակ՝ Հ. Հակոբյան, վերանորոգող-ճարտարապետ՝ Ի. Գասպարյան, Վ. Խաչատրյան, քարագործ վարպետների բրիգադավար Ն. Պողոսյան, Վ. Մակարյան։



Նկ. 101. Ներքին Թալինի բերդի պարիսպների բուրգը վերանորոգման ընթացքում։



Նկ. 102. Ներքին Թալինի բերդի պարսպի բուրգը վերանորոգումից հետո։



Նկ. 103. Ներքին Թալինի բերդի հատակագիծը։





Նկ. 104. Ներքին Թալինի բերդի պատերի քայքայված հատվածը վերանորոգումից առաջ և հետո։

կառույցի կոնստրուկտիվ կայունությունը, իսկ կլոր պատը շարվեց այն հաշվով, որ նրա ամբողջական ծավալը մնա ստատիկ հավասարակշռության մեջ։ Պարիսպների վերանորոգման ընթացքում որպես կապակցող միջոց որմածքում նորից օգտագործվեց բետոնը, որը զգալիորեն ապահովեց նրանց ամրությունը։ Այդ սկզբունքով վերանորոգվող բերդապարիսպներին, այլևս քայքայման վտանգ չի սպառնում։

Այստեղ հարկ է նշել, որ 1974 թվականին, երբ տեղի բնակիչները ամրոցից փոխադրվեցին հարմարավետ ժամանակակից շենքեր, հին կառույցները վերացվեցին, տարածքի հետագա բարեկարգման համար ստեղծելով նպաստավոր պայմաններ։ Բարեկարգման ծրագրի համաձայն 1975 թվականի ընթացքում սկսվեցին այդ աշխատանքները, ինչպես նաև վերանորոգվեցին այնտեղ կանգուն հուշարձանների ծածկերը։

**Ներքին Թալինի ամրոցը.—** Մյուս վերանորոգված կառույցը, որն իր տեսակի մեջ բավականին խոշոր համալիր է, ստեղծվել է տարբեր դարաշրջաններում։ Նրա միջին մասը, հիմնվել է VII դարում, Կամսարական տոհմի կողմից, կառուցված է սրբատաշ տուֆ քարից, դեպի վեր սլացող մոնումենտալ ձևերով։ 1267 թվականին Զաքարյանները, երբ արդեն նրանց էր պատկանում ամրոցը, Հովհաննես քարագործի ձեռքով ընդարձակում և ավելի են ամրացնում այն։ Իսկ 1583 թվականին Օսմանյան զորավար Վարհատ փաշան, նորից է այն նորոգել իր ռազմատենչ քաղաքականության ծրագրերի ապահովության նկատառումներով։ Վերջապես 1821 թվականին Երևանի Հուսեին խանը այս ամբողջ կառույցները շրջապատում է նոր պարիսպներով (Նկ. 103)։ Այս է Ներքին Թալինի ամրոցի կառուցողական հակիրճ պատմական տեղեկանքը։ Ամրոցի դրսի պարիսպը կառուցված է ճեղքված բազալտով։ Ժամանակի ընթացքում արտաքին պարիսպը աստիճանաբար ավերվել է, հատկապես միջնամա-



Նկ. 105. Գառնիի միջնաբերդի պարիսպների մաքրումը բերածո հողակույտերից։

սերում, վերևի շարքերի համար ստեղծելով փլուզման ռեալ վտանգ, որը ամբողջապես իրականացավ պարսպի առանձին հատվածներում։ Սա ավելի խորացրեց ընդհանուր վթարային վիճակը։ Ընդ որում, այստեղ ինչպես և Ախթալայում, տարածքը բնակեցված էր, ինչը ստեղծել էր նույն կարգի բարդ իրավիճակ։ Անհրաժեշտ էր ոչ միայն լրացնել արդեն փլված մասերը, այլև վերահաս վտանգը կանխելու համար հիմքերից սկսած վերաշարել այդ հատվածները։ Շարը կատարվեց ցեմենտի շաղախով, որի հետևանքով վերաշարված մասերը, որմածքները հուսալիորեն ամրացվեցին։ Այժմ պարզ տեսանելի է նոր շարվածքը, որը տարբերվում է հնից[1]։ Այդ նույն ժամանակ վերանորոգվեց նաև պարսպի հյուսիսային կլոր բուրգի այն մասը, որտեղ բացված է ամրոցի միակ մուտքը։ Այն ի դեպ աղոտ կերպով է շեշտված ճակատային մասում։ Առանձին հատվածների ձևով վերաշարվել և ամրացվել է նաև միջին մասում գտնվող միջնադարյան ամրոցը (Նկ. 101—104)։

## ԿՈԹՈՂԱՅԻՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ԵՎ ԽԱՉՔԱՐԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄՆ ՈՒ ԱՄՐԱՑՈՒՄԸ

Հուշարձանների պահպանության ու վերանորոգման բնագավառում զգալի տեղ են գրավում խաչքարերը, ինչպես նաև կոթողային հուշարձանները, որոնք Հայաստանի հնագույն տարածքի վրա պահպանվել են համարյա ամենուրեք բազմաթիվ օրինակներով։

Խաչքարերը կանգնեցվում էին տարբեր նպատակներով՝ կամ ի նշանավորումն աշխարհիկ կյանքի հիշատակության արժանի պատմական կարևոր դեպքերի, և կամ կրոնական իրադարձությունների հավերժացման նպատակով։ Խաչքարերը իրենց արդի, այն է ուղղաձիգ կանգնած լայն սալերի ձևով, համապատասխան պատվանդանի վրա, հավանաբար առաջ են եկել VII դարում, թեև նրանց թվագրված օրինակը Գառնի գյուղում 879 թվականին կանգնեցրել է Կատրանիդե թագուհին։ Սակայն, կասկածից վեր է, որ տվյալ կոթողների շինարարական ավանդույթները ընկղմվում են դարերի խորքը և հասնում մինչև ուրարտական ժամանակաշրջանը, իսկ դրանք էլ իրենց հերթին ցույց գենետիկ կապերով առընչվում են մեգալիթյան մշակույթի մեհյրների հետ։ Դրա ապացույցը ոչ միայն խաչքարերի և ուրարտական համանման կոթողների արտաքին ձևերի նմանությունն է, այլև իր տեսակի մեջ ուշագրավ մի քանի ակնառու փաստեր։ Իջևանում, իսկ վերջերս նաև Թանահատի միանավ եկեղեցում, մաքրման աշխատանքների ժամանակ գտնված ուրարտական սեպագիր արձանագրությունների վրա, որոնք ուղղաձիգ տախտակի նման կիսակլոր վերջավորությամբ քարեր են, միջնադարյան հայ վարպետները օգտագործել են քրիստոնեական խաչ քանդակելու համար։ Այս փաստը ինքնին խիստ ուշարգավ օրինակ է այն բանի, թե ինչպես միևնույն ձևը հավասարաչափ բավարարել է տարբեր դարաշրջանների կոթողների պահանջներին։ Այլ կերպ, այս փաստում, որպես մեկ ընդհանուր խաչմերուկային կետում հանդիպում են երկու տարբեր մշակութային արտահայտություններ՝ ուրարտական և հայկական։

Խաչքարերը կերտվել և պահպանվել են տարբեր ձևերով։ Նրանց մի մասը քանդակվել է պաշտամունքային կառույցների պատերի ինչպես նրանց դրսի, այնպես էլ ներսի հարթություններ վրա։ Սակայն հիմնական մասը կանգնեցված է առանձին կոթողի ձևով։ Հաճախ նման պատվանդանով խաչքարերը ունեն բավականաչափ զարգացած հորինվածքային լուծումներ, ինչպես օրինակ Սանահնի Տուտեորդու խաչքարն է և իր այդ ձևի մեջ արդեն դուրս է գալիս սովորական խաչքարի ձևի հասկացողությունից և դրսևորվում մոնումենտալ կառույցին բնորոշ տեսքով։ Նրա մասին արդեն կարելի է խոսել որպես ձևի գեղարվեստական առավել զարգացած ու բարդ համակարգի նմուշ։ Խաչքարերի մի մասն էլ շինված է որմնափակ հորինվածքի ձևով, ինչպես օրինակ Պետևանի կոթողն է Քանաքեռում կամ

---

[1] Վերանորոգող-ճարտարապետ Հ. Գասպարյան (1970 թիվ) քարագործ վարպետների բրիգադավար Պ. Կարա-Վարդանյան։



10—2959





106. Աշտարակի երեք խաչքարերի հորինվածքը վերանորոգումից առաջ և հետո։

նույնանման կառույցը Սաղմոսավանքում և այլ տեղերում։ Առանձին դեպքերում հանդիպում են մեկ ընդհանուր հորինվածք կազմող, իրար կողքի դասավորված մի քանի խաչքարեր։ Այստեղ արդեն խաչքարի ձևն, ինչպես Տուդեորդու հուշարձանի դեպքում, փոխարինվում է հորինվածքային տեսակետից որակական առումով նոր հասկացողության։ Սակայն, եթե խոսենք մեծ տարածքների մասշտաբով, ապա կտեսնենք, որ մի շարք հնագույն գերեզմանոցներում, խաչքարերի ընդհանուր թիվը հասնում է հարյուրների (Առինջ, նկ. 108, Նորագյուղ, նկ. 109) կամ նույնիսկ հազարների (Նոր Ջուղա)։ Իսկ այդպիսի դեպքերում նրանց ընդհանուր արտահայտչականությունը ստեղծում է ընկալման յուրօրինակ տեսադաշտ, որից ստացած գեղարվեստական ներգործությունը նշանակալից է։

Կոթողների հնագույն օրինակները, որոնք ունեն ուրարտական ծագում, որպես կանոն միշտ կիսակլոր վերջավորությամբ են, իսկ հետագայի օրինակները ավարտվում են բավականին ճոխ պսակաձև վերջավորությամբ։ Խաչքարի մյուս տարրը քարե պատվանդանն է, խորանարդաձև, աստիճանաձև կամ ծավալային այլ արտահայտությամբ, որի մեջ ագուցվում է խաչքարից դուրս բերված ատամնաձև մասը։ Նման ձևով կանգնած խաչքարերի բարձրությունը, հասնում է շուրջ 5 մետրի։

Խաչքարերի զարդաքանդակները շատ ճոխ են, հորինվածքով բազմազան։ Ուշագրավ է, որ գրեթե հնարավոր չէ զարդաքանդակների նույնանման լուծումներ մատնանշել նույնիսկ միևնույն խաչքարերի սիմետրիկ տարրերի դասավորության մեջ։ Այս հանգամանքը բացառում է նրանց խարխլված կամ անհետացած բեկորների վերականգնումը իրենց նախնական տեսքով, թեկուզ և պահպանված էլ լինի սիմետրիկ հատվածը։ Այդ պատճառով էլ բոլոր հնարավոր ու պատահական անճշտություններից զերծ մնալու համար ջարդված խաչքարերը վերականգնվում են միայն ծավալային անհետացած բեկորների սահմաններում, առանց նախնական զարդաքանդակների վերականգնման։ Եվ այսպես խաչքարերը Հայաստանի միջնադարյան քանդակագործության այն ինքնատիպ կոթողներն են, որոնք օժտված են պատմական, արվեստագիտական ու քարակոփության նշանակալից արժեքներով։ Դրանք իրենց տարածական ձևերով ու պոտենցիալ հնարավորություններով, հետագայում, ընդհուպ մինչև մեր օրերը, ժամանակակից մոդիֆիկացիայի առումով ունեցան զարգացման բազմաձև արտահայտություններ։ Խաչքարերը հուշարձանների համալիրների

տարածական միջավայրի կազմավորման մեջ զարդաքանդակների նրբին արտահայտչականությամբ, միշտ էլ էմոցիոնալ հագեցվածության որոշակի դրսևորումներ են։

**Աշտարակի երեք խաչքարերի հորինվածքը,—** Գտնվում է քաղաքի հնագիտական տարածքի սահմաններում, որը փռված է Կարմրավոր եկեղեցուց 150 մետր դեպի հյուսիս-արևմուտք, կառուցված XIII դարում։ Խաչքարերը կանգնած են մեկ ընդհանուր պատվանդանի վրա, որի ճակա-



Նկ. 107. Օձունի մոնումենտը վերանորոգման ընթացքում և վերանորոգումից հետո։

տային մասում ագուցված են չորս հատ դեղնավուն շեղանկյուն քառակուսիներ։ Խաչքարերը պարփակված են դեկորատիվ զույգ կիսասյուներով և դրանց միացնող զարդաքանդակված աղեղնաձև հարթություններով։ Այս կոթողը տեղի ազգաբնակչության կողմից անվանվում է «Գևորգ պապերի խաչքարեր (Նկ. 106)։

Հուշարձանը վերանորոգումից առաջ բավականին քայքայված վիճակում էր։ Ավերված էին պարփակող եզրային շարքերը, աղեղնաձև հարթությունները, ինչպես նաև ամբողջ հորինվածքը պսակող ծավալը, թիկնամասի շարվածքի հետ մեկտեղ։ Հուշարձանի միայն կանգուն մասի բարձրությունը վերանորոգումից առաջ հավասար էր 3,80 մետրի, հետևաբար, նրա նախնական ամբողջ չափը հավանաբար 5 մ պակաս չի եղել, ճակատային մասի 4,44 մ լայնության պայմաններում։ Յուրաքանչյուր խաչքար իր 0,85.1,68 չափերով, ճակատային կողմում ունի 1:2 հարաբերությունը, և զարդաքանդակների լուծման ընդհանրություն, որ օժանդակում են հորինվածքի ներդաշնակ ընկալմանը։ Համանման են լուծված խաչքարերի նաև կամարային մասերի միջև գտնըվող հարթությունների զարդաքանդակները։ Այսպիսով, այս ուշագրավ խմբական խաչքարերը







*Նկ. 108. Առինջի խաչքարերը վերանորոգումից և տեղադրումից հետո։*

Նկ. 109. Նորատուսի խաչքարերը վերանորոգումից և տեղադրումից հետո

վերականգնվեցին բոլոր հայտնի ձևերի սահմաններում, առանց վարկածների[1]:

Սակայն այն հանգամանքը, որ պահպանված էին ընդհանուր ձևերի առանձին բեկորներ միայն, հնարավոր եղավ իրականացնել կոթողի ընդհանուր հորինվածքը մինչև պսակող ծավալը, քանի որ դրանցից վեր այդ ձևերը մնում էին անհայտ։ Դրանց հայտնաբերման համար կոթողի շուրջ կատարված մանրակրկիտ պեղումները ոչ մի արդյունք չտվեցին։ Հետևաբար, միայն այդ ձևով հնարավոր եղավ 1954 թվականին վերանորոգել կոթողը։ Այսպիսով վերին մասը մնաց անավարտ (Նկ. 106)։

Այս խաչքարերից արևելք, Կարմրավորի տարածքի վրա, որտեղ հեռացվեցին VII դարի հուշարձանին XIX դարում կցված պատերը, հայտնաբերվեցին մի շարք բարձրորակ խաչքարեր, մի քանիսը ամբողջովին ջարդված։ Թիկունքից անհրաժեշտ ձևով ամրացնելուց հետո խաչքարերը տեղադրվեցին հուշարձանի տարածքի տարբեր մասերում, ուր պահպանված էին պատվանդաններ։ Դրանցից 3-ը դասավորվեցին իրար կողքի։ Դրանով իսկ վերականգնվեց կոթողների նախնական տեսքը, որոնք առանձնապես տպավորիչ են VII դարի գողտրիկ հուշարձանի ճակատների զուսպ հարթության միջավայրում։

**Պետևանի կոթողը.**— Այս ուշագրավ հուշարձանը, Քանաքեռի որմնափակ խաչքարը, նրա վրա պահպանված բավականին ընդարձակ արձանագրության համաձայն, 1265 թվականին հիմնել են Պետևանը և նրա Ավագ տիկինը։ Կազմողը Մխիթար քանդակագործն է[2]։ Խաչքարը նուրբ զարդաքանդակներով հորինվածք է, առնված պատերի մեջ և պսակված ճակատով։ Հիշյալ դարաշրջանում, խաչքարերի նման հորինվածքները բավականի տարածված էին և արդեն բնորոշվում էին իրենց ձևերի ինքնատիպությամբ։

1968 թվականին բարեկարգվեց կոթողի շրջապատը։ Բարեկարգման նպատակն էր առանձնացնել կոթողը փողոցի սահմանագծից, մայթով ու աստիճանաձև փոխանցումներով, ինչպես նաև



Նկ. 110. Էջմիածնի կոթողը տեղադրվելուց հետո։

դասավորել հայտնաբերված բեկորները, հարմարավետ ընկալման համար։ Այսպիսով ստացվեց փոքր ձևերի մի միասնական հուշարձան, որը ներկայումս արժանանում է այցելուների մշտական ուշադրությանը։

Սակայն, 1973—74 թվականներին առավել մեծ աշխատանք է կատարված Երևանի հյուսիսային արվարձանում գտնվող Առինջի գերեզմանոցի խաչքարերի վերադասավորության և տարածքի բարեկարգման գործում։ Այդ տարածքը զբաղեցնում է շուրջ 3 հեկտար, ուր կա մեկ ավերված փոքր չափերի մատուռ։ Խաչքարերի մի մասը կանգնած է պատվանդանի վրա, մյուսները բարեկարգման աշխատանքներից առաջ ընկած էին։ Դրանց հիմնական մասը պատկանում է X—XIV դարերին և կերտված է գորշ, մի մասն էլ կարմրավուն տուֆից։

Խաչքարերը ունեն տարբեր բովանդակության արձանագրություններ, ինչպես աշխարհիկ, այնպես էլ կրոնական թեմաներով։ Բարեկարգման

---

1 Վերանորոգող տեխնիկ՝ Հ. Գասպարյան, քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։

2 Կ. Գ. Ղաֆադարյան, Երևանի միջնադարյան հուշարձանները։ Հրատ. ԳԱ հրատարակչություն, 1975, Երևան, էջ 45։

ծրագրի համաձայն, տարածքը պարփակվեց ցանկապատով, անանցանելի պատահական շարժումների համար, որից ժամանակին բավականին տուժել էին հուշարձանները ու տեղանքի այլ կոթողները։

Դրանցից բացի նախապես կատարվեցին մաքրման աշխատանքներ, որոնց շնորհիվ բերածո հողի տակից դուրս բերվեց նույն դարերին պատկանող ևս 15 խաչքար, ինչպես նաև առանձին բեկորներ։ Իրենց նախնական տեղերում պատվանդանների վրա վերականգնվեցին 40 խաչքար, որոնք ամրացվեցին կրաշաղախով և ճարմանդներով։ Վերանորոգվեցին ջարդված խաչքարերը ու նրանց պատվանդանները։

Այսպիսով, հինավուրց տարածքը ստացավ նախնականին մոտ տեսք, թեև այստեղ աշխատանքները դեռ լիովին չեն ավարտված։

Առինջը, իսկ առավելապես նաև Նորուդաղը բարեկարգումից հետո կդառնան միջնադարյան քանդակազարդ խաչքարերի տեսարժան վայրեր։ Նրանք կդառնան նաև միջնադարյան արվեստով ու մասնավորապես քանդակագործությամբ զբաղվողների ուսումնասիրության վայրեր։ Առավելապես ուշագրավ են այդ խաչքարերը զարդաքանդակների անսպառ հորինվածքներով, դա ևս մի ապացույց է, մեր հին վարպետների անեզր հնարավորությունների։

Հայկական ՍՍՀ տարածքի վրա պահպանված խաչքարերի թիվը հասնում է տասնյակ հազարների՝ կանգուն, ընկած, հողի մեջ ընկղմված, տարբեր կառույցների պատերի մեջ ղետեղված, կամ նույն տեղում օգտագործված սոսկ որպես շինանյութ ու այլ ձևերով։ Բոլոր այս խաչքարերը, պարբերաբար գտնվելով հսկողության ներքո, ըստ պատշաճի դասավորվում ու վերադասավորվում են իրենց նախնական դիրքին համապատասխան, փրկվելով հետագա քայքայումից։

Խաչքարերի հետ մեկտեղ այժմ արդեն Երևան քաղաքի մեջ մտնող Ավանի հուշարձանախմբում վերանորոգված է նաև կոթողային երկու հուշարձան, որոնք հավանաբար VI դարի ստեղծագործություն են։ Այդ հուշարձաններից մեկը գտնվում է Ավանի հնագույն գերեզմանոցում, Երևան—Դառնի ճանապարհի ձախ կողմում, մյուսը այգիների մեջ, Աստվածածին կոչվող XIII դարի մատուռի հարավային կողմին կպած։ Դրանք աստիճանավոր բրգաձև կառույցներ են, քառակուսի հատակագծով, որոնց վերին 5-րդ աստիճանի վրա դրված խորանարդաձև ծավալը կրում է ութանիստ սյուն։ Այս երկու միատիպ կոթողները քայքայված վիճակում էին։ Դրանց առանձին բեկորները նույն գերեզմանոցում անցյալում օգտագործվել են տարբեր նպատակների համար։ Հարկ եղավ հավաքել և, ի մի բերելով ու լրացնելով անհետացած մասերը, վերականգնել կոթողները իրենց նախնական տեսքով։ Գտնում են, որ սյուները պսակվել են համապատասխան խոյակներով, ինչը մենք տեսնում ենք համանման կանգուն հուշարձաններում[1]։

**Օձունի կոթողը.—** 1950 թվականին Օձուն գյուղի գմբեթավոր բազիլիկ եկեղեցու վերանորոգմանը զուգահեռ, կատարվեց նաև, նրանց կից V—VI դարերի ճարտարապետական եզակի հորինվածք ունեցող մեմորիալ կոթողի մասնակի վերանորոգումը։ Կոթողի կառուցման տվյալ ժամանակաշրջանը հիմնավոր են համարում Թ. Թորամանյանը, Բ. Առաքելյանը, Ս. Մնացականյանը, ելնելով նրա ճարտարապետական ձևերի հինավուրց բնույթից (Նկ. 107)։

Հուշարձանը երկու կամարակապով ընդհանրացված մեկ հարթ վերնամասով կառույց է, Կամարակապ այդ բացվածքների մեջ կանգնած է կանաչ ֆելզիտից կերտված մեկական կոթող, որոնց վրա հարթաքանդակների ձևով պատկերված են Հայաստանում քրիստոնեության տարածման լեգենդի հիմնական դրվագները։ Հուշարձանը կանգնած է 2,40 մ բարձրություն ունեցող աստիճանավոր պատվանդանի վրա, որն առանձնակի շեշտում է կոթողը և տպավորիչ դարձնում այն։

1950 թվականի վերանորոգումը խիստ անհրաժեշտ էր, որովհետև հուշարձանի քարաբեկորները զգալիորեն տեղահանվել էին, իսկ կամարից առանձին քարեր վայր էին ընկել։ Հարկ եղավ դիմել շտապ օգնության միջոցների։ Սկսված վերանորոգման աշխատանքների ընթացքում լրացվեցին պատվանդանի ճակատի աստիճանաձև շարքերը պսակող քարերը, պատվանդանը ներարկվեց բարդ շաղախով, լրացվեցին կամարների, ինչպես նաև քիվերի պակասող քարերը և

[1] Վերանորոգող տեխնիկ Հ. Դասպարյան. քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։

վերաշարվեցին մույթերի շարքերի առանձին հատվածները։ Այդ բոլորի հետ կոթողին լրացուցիչ ամրություն հաղորդելու նպատակով քիվերի շարքերի հաստության մեջ դրվեց երկաթբետոնի միջուկը[1] (Նկ. 107)։

Կոթողի վերանորոգման նախագծի հաստատման ժամանակ հարց ծագեց հանել հուշարձանի մույթերի միջև կանգնած ստելները և դրանք պահպանության համար տեղափոխել թանգարան, տեղում թողնելով նրանց բետոնե ձուլածո կրկնօրինակները։ Սակայն, այդ առաջարկը չիրականացավ և անցավ այն սկզբունքը, որ հինավուրց կոթողները պահպանվում են իրենց նախնական տեսքով և, որ գլխավորն է, նախնական տեղերում։ Բացի վերոհիշյալից պահպանվում էր հուշարձանի պատմական իսկությունը, իր վաղնջական արտահայտության բոլոր հավաստի կողմերով հանդերձ։ Այս սկզբունքը կարիք ունի վերանայման։

**Աղուդիի մահարձանը.—** Սիսիանի շրջանի Աղուդի գյուղում գտնվող VII դարի հուշակոթողը իր ձևով մի եզակի կառույց է հայ ճարտարապետության ամբողջ պատմության մեջ։ Կոթողը բարձրանում է երկու բաժնից բաղկացած թաղածածկ ներքին տարածության վրա։ Այն մի սյունազարդ, երկհարկանի ինքնատիպ հորինվածք է, պարփակված քառակուսի կտրվածք ունեցող մույթերով։ Առաջին հարկի առանցքում կանգնած է ութանիստ սյունը, որը պայտաձև կամարներով միացած է մույթերին հպված կիսասյուների հետ։ Երկրորդ հարկը ի տարբերություն առաջինի ավելի ցածրադիր է և բաժանված է երկու առանձին կանգնած ցածրադիր սյուներով։ Ժամանակի ընթացքում, հուշարձանը բավական քայքայվել էր ու խարխլվել, հատկապես 1969 թվականի երկրաշարժի ժամանակ։ Այս կապակցությամբ հարկ եղավ լրիվ վերաշարել հուշարձանի վերևի մասը իր մույթերով ու սյուներով։ Հուշարձանի վերականգնումը կատարվեց 1966—67 թվականներին և 1970 թվականին[1]։ Այժմ այն վերանայվում է նոր նյութերի հիման վրա։

**Էջմիածնի կոթողը.—** Էջմիածնի հյուսիս-արևելյան կողմում, այգիների մեջ վեր է խոյանում, Օշականում 1827 թվականին ռուս-պարսկական մարտերում զոհված հայ և ռուս մարտիկների հիշատակին նվիրված շուրջ 20 մետրանոց մոնումենտալ կոթողը։ Այն կանգնեցված է Կաթողիկոս Ներսես Աշտարակեցու կողմից, ինժեներ Կոմպանենսկու նախագծով և նրա անմիջական ղեկավարությամբ։

Հուշարձանը խորանարդաձև պատվանդանի վրա դրված սյունանման կառույց է, կտրվածքում կլոր, որը նեղանալով վեր է խոյանում։ Կոթողը կառուցված է տեղական կարմրավուն տուֆից, որը ներդաշնակելով շրջապատի այգիների կանաչի հետ, դառնում է բնության այդ մասի վրա իշխող ուղղահայաց հորինվածք, նրա շեշտված բաղադրիչը։

Հուշարձանը 1960 թվականին մասնակի վերանորոգվեց։ Բարեկարգվեց շրջապատը, հատկապես կատարվեցին սալահատակը ու հարթվեց տեղանքը։ Սակայն ավելի նշանակալից աշխատանքներ ձեռնարկվեցին կոթողի բարեկարգման ուղղությամբ 1978 թվականին Հայաստանը Ռուսաստանի հետ միավորելու 150-ամյակի կապակցությամբ։

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՏԵՂԱՓՈԽՈՒՄԸ

Մեր դարում առօրյա կյանքի պահանջների մղումով բացի հուշարձանների վերանորոգումներից, որպես նրա պահպանման կարևոր ու հիմնական ձևերից մեկը, առաջ եկավ մի նոր պրոբլեմ ևս՝ դա պատմական եզակի հուշարձանների տեղափոխությունն է։ Այս միջոցառումները իրականացվում են գլխավորապես այն դեպքերում, երբ առաջանում են տվյալ լոկալ տարածքի հետ կապված հույժ կարևոր տեխնիկատնտեսական պրոբլեմներ կամ նախատեսվում են նույն տեղում խոշոր հիդրոտեխնիկական ու այլ կառուցումներ։

Այս տիպի աշխատանքներից, հուշարձանների պահպանության համաշխարհային պրակտիկա-

[1] Օձունի մահարձանի վերականգնման աշխատանքների մասին տե՛ս աշխղեկ Մ. Մարտիրոսյանի հաշվետվությունը։

[1] Ճարտ. Ա. Ստեփանյան։

յում, առավել վիթխարի է եգիպտական նշանավոր ժայռափոր տաճարներից մեկի, մ.թ.ա. XIII դարում Ռամզես II փարավոնի կառուցած Աբու-Սիմբելի տեղափոխումը։ Բանն այն է, որ Ասուանի բարձրաբերձ ամբարտակի կառուցման հետևանքով Նեղոսի ջրերը սպառնում էին ամբողջովին կլանել նրա ափին կառուցված այս փառահեղ հուշարձանը։ Նման պրոբլեմի հետ և այն էլ այսպիսի ծավալի, հուշարձանների պահպանության համաշխարհային պրակտիկան հանդիպում էր առաջին անգամ։ Ռամզես II-ի տաճարը մի հոյակերտ ժայռափոր կառույց էր, որը մինչև 55 մետր խորանում էր գրանիտե ժայռի մեջ, իր ճակատային մասում նույն գրանիտից կերտված 20 մետր բարձրություն ունեցող փարավոնի չորս նույնատիպ հսկա արձաններով հանդերձ։ Հուշարձանի տեղափոխման համար հայտարարված մրցանակաբաշխության կապակցությամբ ստացվեցին բազմաթիվ նախագծեր։ Ի վերջո որոշվեց հսկա հոծ ժայռը սղոցել փոքր ծավալների քարերի չափով ու տաճարը մաս-մաս տեղափոխել նրա համար ընտրված նոր հարթակի վրա։ Աբու-Սիմբելի տեղափոխման հաջող փորձը առաջ քաշեց հուշարձանների տեղափոխման նոր պրոբլեմներ Եգիպտոսում, թեև այս անգամ շատ ավելի փոքր ծավալների, օրինակ, Դաքքայի, Կերտասի, Ամադայի, Դենդուրի, Կալաբշայի վերերկրյա տաճարների, ինչպես նաև վիմափոր տաճարներ Աբու-Օդայի, Ելեսիայի և մյուսների, թվով 23 հուշարձանի տեղափոխության կազմակերպումը իրենց համար հատկացված նոր տեղերը[1]։

Նման պրոբլեմ, թեև անհամեմատ ավելի փոքր մասշտաբների, առաջին անգամ առաջացավ նաև մեզ մոտ, երբ Ապարանի ջրամբարի կառուցման կապակցությամբ, բարձրացող ջրերը լրիվ պետք է ծածկեին Ջրվեժի գյուղում գտնվող Թուխ մանուկ և ս. Վարդան հուշարձան-






Նկ. 111. Ջրվեժի, Թուխ մանուկ եկեղեցու հատակագիծը։

ները[1]։ Այդ կապակցությամբ հարկ եղավ ձեռնարկել նշված երկու հուշարձանների շուտափույթ տեղափոխման աշխատանքները, որը և

[1] Ավելորդ չենք համարում մեջ բերել Հունաստանի Հելլիոպոլիսում, եգիպտական փարավոնների (Նուցկորեուսի, կամ Մենետակի մ.թ.ա. XIV դար, կանգնեցրած հայտնի կոթողի տեղափոխությունը), որը սկզբում կանգնեցվել էր Ներոնի կրկեսում, իսկ 1586 թվականին տեղափոխվել է ս. Պետրոսի հրապարակը։

[1] Չափագրության և նախագծի հեղինակ Ս. Մաթևոսյան, վերանորոգող ճարտարապետներ Վ. Խաչատրյան, Հ. Գասպարյան, քարագործ վարպետների բրիգադիրներ Վ. Մակարյան, Պ. Մարաբյան։



Նկ .112. Ջովունիի հուշարձանախումբը տեղափոխումից հետո։






Նկ. 113. Ջովունի. ս. Վարդան եկեղեցու հատակագիծը։

կատարվեց ծրագրված ձևով, այն էլ հիմնակա-
նում ձմեռային պայմաններում։ Մանրազնին հե-
տազոտություններից հետո Ջովունի գյուղից,
ինչպես նաև նրա շրջակայքից դուրս բերվեցին
նշված տաճարները, տեղանքում սփռված առան-
ձին բեկորներ ու խաչքարեր, որից հետո, երբ
հուշարձանախմբի այդ տեղամասում այլևս հնա-
գիտական գաղտնիքներ չմնացին տարածքը
հանձնվեց ջրամբարի ջրերին (Նկ. 111—113)։

Երկու կառույցվածքներն էլ նորից հավաքվե-
ցին, այս անգամ արդեն ջրամբարը երիզող լեռ-
նալանջի վրա։ Աշխատանքները սկսելուց առաջ
երկու հուշարձաններն էլ ամենայն մանրամաս-
նությամբ չափագրվեցին, համարակալվեցին նը-
րանց բոլոր քարերը, որից հետո միայն ձեռ-
նարկվեց նրանց տեղափոխությունը։ Նոր տեղում
վերաշարելու ժամանակ որմածքի այն հատված-
ները, որոնք դարերի ընթացքում կամ անհետացել
էին, կամ խիստ վնասվել, փոխարինվեցին նոր
տաշված քարերով։ Այս գործում կիրառվեց կոն-

սերվացման սկզբունք։ Ջրամբարի ստեղծման կապակցությամբ, պետք է որ փոխվեին նաև տեղանքի բնական պայմաններն ու հատկապես ստորգետնյա ջրերի մակարդակը, իսկ այդ մակարդակի բարձրացման պատճառով կարող էր խարխլվել հուշարձանների հիմքերի կայունությունն ու ամրությունը։ Հետևաբար, հուշարձանի համար նոր տեղը ընտրվեց գետի ձախ ափի առավել բարձրադիր մասում, հիմքերի համար ստորգետնյա ջրերի անհասանելի տեղում։ Ուստի այլևս կարիք չեղավ լճակի առափնյա եզրագիծը բետոնապատել, որը ընդունված է նման դեպքերի համար։

Անհրաժեշտ է սակայն նշել, որ հնարավոր չէր անխտիր կիրառել բոլոր հուշարձանների նման տեղափոխություն։ Հատկապես տեղափոխման ենթակա չեն այն հուշարձանները, որոնք մեզ են հասել մեծ վերակառուցումներով և որոնց որմածքը կորցրել է անհրաժեշտ ամրությունը, փխրուն է ու չունի որոշակի կառուցվածք և հետևապես չի կարող վերաշարվել։ Այդպիսի վիճակում էր գտնվում, օրինակ նույն Ջովունիում գտնվող Պողոս-Պետրոս եկեղեցին, որի շարվածքի քարերը փխրուն են և ունեն բազմաթիվ մանր ճաքեր, իսկ որ գլխավորն է, կրում են հետագա դարերի ձևափոխություններ, անվերարտադրելի մնացորդներ, որոնք տեսանելի են ու կարող են փաստացի ապացույցի դերում լինել միայն իրենց արդի վիճակով, և որոնց կորուստը ակնհայտ կլիներ վերաշարի դեպքում։ Բարեբախտաբար անբարտակի ջրերը չեն հասնում մինչև Պողոս-Պետրոս հուշարձանի ցածրադիր կետը։

1951 թվականին հուշարձանի տեղափոխման փորձ կատարվեց նաև Վրաստանում, Սիոնի ջրամբարի կառուցման առիթով։ Այնտեղ հարկ եղավ տեղափոխել VIII—IX դարերի Թիանետիս-Սիոնի տաճարը և նրանց կից դամբարանային կառույցները։ Ուշագրավ է, որ այդ հուշարձանների տեղափոխման համար ժամանակին ընդունված է եղել նույն տեխնոլոգիական սկզբունքը, ինչը և այստեղ՝ Ապարանում[1]։

## ՈՐՄՆԱՆԿԱՐՆԵՐԻ ՄԱՔՐՈՒՄԸ, ԱՄՐԱՑՈՒՄԸ, ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

Հայ մշակույթի պատմության մեջ ճարտարապետական հուշարձանների հետ մեկտեղ իր որոշակի տեղն ունի նաև որմնանկարչական արվեստը, թեև որմնանկարները պահպանվել են պաշտամունքային եզակի հուշարձաններում միայն և այն էլ բավականին քայքայված ու ֆրագմենտային ձևով։ Այդ արվեստը Հայաստանում ունի դարերի խորքը գնացող ավանդույթներ, նրա ակունքները հասնում են մինչև Ուրարտուի հնամենի մշակույթը, ինչպես այդ ցույց տվեցին Էրեբունի միջնաբերդի պեղումները։ Որմնանկարչությունը լայն տարածում ուներ Ուրարտուում, համարյա ամենուրեք, և այն հանդիպում է ինչպես նրա աշխարհիկ, այնպես էլ պաշտամունքային կառույցներում։ Սակայն, առանձնակի լավ են պահպանվել Էրեբունի միջնաբերդի շենքերի պաշտամունքային և աշխարհիկ թեմաներով կատարված որմնանկարները, որոնք մեր հաշիվներով ժամանակին ծածկում էին նրանց ավելի քան 2000 քառակուսի մետր պատի մակերեսը։ Այդ հսկայական քանակից մեզ են հասել առանձին փշրանքներ միայն, որոնք այնուամենայնիվ վկայում են ուրարտական որմնանկարչական արվեստի զարգացման մակարդակի։

Վաղ միջնադարի հայկական որմնանկարներ պահպանվել են Լմբատում, Արուճում, Թալինում, Կարմրավորում և մի քանի այլ տեղերում։ Ավե-

---

[1] Архитектор Л. М. Химшиашвили. Вопросы реставрации памятников архитектуры Грузии (На примерах Самцевриси, Цирколи, Цроми и Тианетис-Сиона) автореферат кандидатской диссертации.

Սակայն, սկզբնական շրջանում, հատկապես 50-ական թվականներին երբ դեռ չէին կազմավորվել տվյալ գործի սկզբունքները, Շեպյակ գյուղում, օրինակ, տեղափոխության ենթակա հուշարձաններից տարվել էին միայն նրա արձանագրությունները ու քանդակազարդ բեկորները, մնացածը թողնելով գոյացող լճակի հատակում։

**В. Цинцадзе.** О некоторых методах научной охраны памятников в Грузии (1950—1975 гг). II международный симпозиум по грузинскому искусству. Тбилиси, 1977 г.

լի ուշ շրջանին են պատկանում Հաղբատի, Ախթալայի, Քոբայրի, Էջմիածնի Մայր տաճարի և Կաթողիկոսական պալատի որմնանկարները։

Վերջին տարիների ընթացքում որմնանկարների պահպանումը իրականացվել է նրանց վերականգնման (Էրեբունի, Էջմիածին), կոնսերվացման (Էջմիածնի Կաթողիկոսարան, Հաղբատ, Ախթալա) և մաքրման (Կարմրավոր, Գնդևանք, Քանաքեռի ս. Հակոբ, Տաթև) միջոցով։ Առավել մեծածավալ բնույթ ստացան Էջմիածնի Մայր տաճարի որմնանկարների ամրացման և վերականգնման հետ կապված աշխատանքները, որտեղ ոչ միայն ամրացվեցին XVIII դարի նկարիչներ Հովնաթանյանների վրձնին պատկանող խիստ ուշագրավ որմնանկարները, այլև նույնատիպ որմնանկարներով ծածկվեցին տաճարի ներքին առանձին հատվածներ, որտեղից անհետ ոչընչացել էին որմնանկարները։ Դժբախտաբար, պաշտամունքային հուշարձաններում հանդիպող որմնանկարների պահպանման գործը կապված է մեծ բարդությունների հետ։ Ամենից առաջ ասենք, որ որմնանկարների պահպանումը հնարավոր է ջերմային հաստատուն ռեժիմի առկայության դեպքերում միայն։ Մինչդեռ այն հուշարձանները, որտեղ կան որմնանկարներ, մեծ մասամբ կիսակործան շենքեր են, որոնք հաճախ ոչ միայն զուրկ են ծածկից (Թալին, Արուճ) այլև նույնիսկ շրջափակ կազմող պատերից (Քոբայր) և այդպիսով անընդհատ մնում են մթնոլորտային տեղումների վտանգի ներքո։ Իսկ այդպիսի պայմաններում սովորական երևույթներ են՝ պատերի սառցակալումները, հողմահարումը, գետնաջրերի ներծծումը որմածքի մեջ, աղակալումը, որմնանկարների կենսաբանական և ֆիզիկական վթարը ու գունաշերտերի թափվելը։ Հետևապես ճարտարապետական հուշարձանների որմնակարների պահպանման, թերևս առավել գործուն մեթոդը բուն կառուցվածքների լրիվ վերականգնումն է, մի բան, որն իր հերթին հաճախ կապված է այլ դժվարությունների հետ, այս անգամ արդեն, ճարտարապետական պրոբլեմների հետ։

Ինչ վերաբերում է խճանկարներին, ապա մեզ են հասել նրանց միայն եզակի օրինակներ (Էջմիածին, Դվին, Զվարթնոց), այն էլ խիստ վնասված հատվածների ձևով։ Միակ քիչ թե շատ ամբողջական օրինակը, Գառնիի բաղնիքի հիանալի խճանկարն է, որի առկայությունը անվերապահորեն վկայում է դարերի խորքը գնացող հելլենիստական ավանդույթների մասին։

**Էրեբունիի որմնանկարների վերականգնումը:** Էրեբունիի, և ընդհանրապես ուրարտական որմնանկարների հորինվածքը միապլան է՝ կազմված հաջորդական շարքերից, որոնք դասավորված են հորիզոնական շերտերով։ Այդ որմնանկարների բովանդակությունը պաշտամունքային թեմաներ են, որտեղ տեսնում ենք աստվածների թափոր, զոհաբերության համար բերված սրբազան կենդանիներ, կենաց ծառեր, իսկ աշխարհիկ թեմաներում՝ որսի տեսարաններ, երկրագործական ու անասնապահական պատկերներ և այլն[1]:

Ուրարտական որմնանկարների համար կիրառվում էին բնական և արհեստական ներկեր։ Ընդ որում ներկեր պատրաստելու համար նրանք օգտագործում էին Միջագետքում հայտնի եղանակները, օրինակ՝ սպիտակ ներկը ստանում էին գիպսից, սևը ածխից, կարմիրը՝ երկաթի օքսիդից։ Վառ կարմիր ստանալու համար օգտագործում էին երկնագույն քարը։ Ներկերը ստանում էին նաև պղնձից, անագից, կապարից և այլ նյութերից։

Որմնանկարները, որոնք գծագրվում էին քանոնով և կարկինով, կատարվում էին սպիտակ, բարակ ծեփի վրա, որով ծածկվում էին հում աղյուսի շարքերը։

1968 թվականին Էրեբունիի միջնաբերդում վերականգնվեցին արտաքին սյունասրահի, Խալդիի տաճարի սյունասրահի մի մասը, պերիստիլ բակի և փոքր դահլիճի որմնանկարները։ Առանձնապես հարուստ և գունեղ էին Արգիշտի պալատի որմնանկարները։ Այնտեղ, օրինակ, պերիստիլ բակի պատերը ներկված էին կարմիր գույնով, իսկ նույն տեղում գտնվող պալատական Սուսի տաճարի պատերը կապույտ էին։ Այսպիսով ստեղծվում էր հակադիր գույների ներդաշնակություն։ Սուսի տաճարում ինչպես և պալատական դահլիճում եզրազարդերը, մի քանի հորիզոնական շերտեր են, որոնցում վերևից ներքև

---

[1] Որմնանկարների հորինվածքների վերականգնման հեղինակ Կ. Հովհաննիսյան։ Աշխատանքները տեղում կատարել է նկարիչների խումբը՝ Ռ. Հարությունյանի ղեկավարությամբ։



Նկ. 114. Թեյշեբաինի, միջնաբերդի վերականգնած որմնանկարը։

դասավորված են՝ վարդյակներ, արմավենիներ, ատամնավոր աշտարակներ, սրբազան ծառեր, նրանց մոտ կանգնած աստվածներով, իսկ ամբողջ եզրազարդը ներքևից վերջավորվում է նըշնախնձորի պտուղների դրասանգով։

Պալատական բոլոր մասերում հայտնաբերված եզրազարդերի բեկորները, գտնված են շերտեր՝ նույն հաջորդականությամբ և նույն ձևով էլ ամենուրեք վերականգնվել են մեր կողմից։ Սակայն պալատի փոքր դահլիճում եզրազարդից բացի հայտնաբերված են նաև պատի միջին մասի ավելի լայն շերտ, որտեղ, բացի վերը նշված դրվագ-





Նկ. 115. Էջմիածնի տաճարի որմնակարները վերականգնելուց հետո։

ներից, կան նաև խոշոր մակերեսներ, ծնկաչոք ցուլեր, գոգավոր կողմերով խոշոր քառակուսիներ և առյուծներ։ Պատի այս որմնանկարը, որը հավասար է 1,28 մ, նույնությամբ վերարտադրված է իր նախկին բարձրության վրա՝ հարթակից 0,42 մ։

Այստեղ ասենք նաև, որ վաղնջական ժամանակներում ուրարտական աստվածները կենդանիների տեսք են ունեցել, Խալդին, օրինակ, առյուծի ձևով, և միայն նրանց մարդակերպավորումից հետո է, որ այդ կենդանիները վերածվել են աստվածների խորհրդանիշերի, նրանց ուղեկիցների։ Նման կերպով որմնանկարների մեր օրինակներում, Խալդին կանգնած է առյուծի վրա (Խալդիի տաճարում)։ Այս առումով հարց է ծագում, թե Էրեբունիի որմնանկարներում, կամ թե Թոփրակ-կալեում (Վանի մոտ) հայտնաբերված ուրարտական թագավորների գահի մի մասը կազմող՝ մարդկային իրանով թևավոր առյուծ հայտնի արձանիկը, կամ սֆինքսի կերպարն արտահայտող այդ հորինվածքը, արդյոք չէր պատկերում իրեն՝ Խալդիի աստծուն, դեռ իր լրիվ մարդակերպավորումից առաջ և այդ ընթացքում։ Հավանաբար։ Այդ արձանիկից ստեղծված մեծ չափերի քանդակները 1968 թվին դրվեցին Էրեբունիի արտաքին սյունասրահի աստիճանները երկու կողմից պարփակող հարթակի ելունների վրա։

Դարերի խորքից եկող որմնանկարչական արվեստը, ունեցավ իր հետագա զարգացումը Հայաստանում։ Այսպես, Էջմիածնի Մայր տաճարի որմնանկարները, այս հուշարձանում հայտնվեցին 1792 թվականին, որից հետո հետագա շերտով առաջ եկան նոր հորինվածքներ, ծածկելով նախորդները։ Այս երկու շերտերն էլ, ստեղծվել են Հովնաթանյան նկարիչների գերդաստանի տարբեր սերունդների կողմից, որոնք կատարել են նաև Հին վեհարանի դահլիճի ձևավորումը նրբագեղ որմնանկարներով։ Այստեղ գործել են՝ Նաղաշ Հովնաթանը (1712—1722 թթ.), Հակոբ և Հարություն Հովնաթանյանները (1739 թ.), Հովնաթան Հովնաթանյանը իր Անդրեաս, Հարություն և Հովակիմ աշակերտների հետ (1769, 1778 թթ)։ Ընդ որում այս վերջին Հովնաթան Հովնաթանյանը կատարել է ոչ միայն նոր, ինքնուրույն հորինվածքներ, այլև



Նկ. 116. Գնդևանքի որմնանկարը
մաքրելուց հետո։



Նկ. 117. Տաթևի վանքի որմնանկարները մաքրելուց և ամրացումից հետո։



*Նկ. 118. Տաթևի վանքի որմնանկարներից։*

վերանորոգել է նախկինում արված որմնանկարները[1]։

1956 թ. հուշարձանախմբի կառույցների վերանորոգման ու հատկապես տաճարի կոնսերվացման աշխատանքների ընթացքում, հատուկ ուշադրություն դարձվեց վերջիններիս որմնանկարների վիճակի վրա։ Համեմատաբար լավ դրության մեջ և լրիվ պահպանվել էին միայն գմբեթային մասի որմնանկարները, իսկ մյուս տեղերում դրանք երևում էին իրար հետ չառնչվող առանձին պատառիկների ձևով։ Այս կապակցությամբ հարկ եղավ կազմել ներքին ամբողջ տարածության համապատասխան նախագիծ, որն ընդհանուր հորինվածքով պետք է միասնական կապ ստեղծեր գոյություն ունեցող առանձին պատառիկների միջև, և, որ գլխավորն է, ապահովեր տաճարի ճարտարապետության և Հովնաթանյանների ստեղծած որմնանկարների երանգավորումների ու նորաստեղծ ձևերի ներդաշնակ միասնությունը[2]։ Այս կապակցությամբ, հիմնականում նկատի են առնված առավելապես լավ պահպանված գմբեթային մասի գունազարդումները, ինչպես նաև հեղինակային ֆոնը։ Գմբեթային համակարգի մասում բուսական զարդաքանդակների հետ մեկտեղ օգտագործված ոսկին սև ֆոնի վրա ստեղծում է մոնումենտալ արտահայտչականություն, ինչը առանձնապես համապատասխանում է տաճարի ներքին տարածության կառուցվածքին։ Այսպիսով, հենվելով պահպանված առանձին պատառիկների վրա, հնարավոր դարձավ վերականգնել, իսկ առանձին դեպքերում նաև լրացնել տեմպերային որմնանկարներով տաճարի առաստաղի թաղակիր մասերը, կամարները, մույթերի վերին հատվածները ու շենքի արևելյան պատերը ամբողջությամբ վերցրած։ Թարմացվեց նաև բեմի ճակատի մարմարյա հարթությունը, որի վրա տեսնում ենք աստվածամոր և 12 առաքյալների պատկերները ողջ հասակով։ Նույնանման աշխատանք է կատարվել, ներկայումս տաճարից տեղափոխված, իջման սեղանի արևելյան ճակատի, աստվածամոր պատկերի վրա։

Նույն երանգավորումներով վերարտադրվեցին մաքրված, ինչպես նաև լրացված որմնանկարները, որոնք հիմնականում ունեն բուսական ու երկրաչափական մոտիվներ։ Դրանք այդ պատճառով էլ զգալապես արտահայտված են կանաչ գույնով, ոսկե ֆոնի վրա։ Ընդհանուր առումով կարող ենք նշել, որ տաճարի որմնանկարների թեմատիկ բովանդակությունը զգալիորեն տարբերվում է նախորդ շրջանի հուշարձանների որմնանկարների բովանդակությունից (Թալին, Արուճ, Քոբայր և այլն)։ Եթե նրանցում կարող ենք տեսնել մոնումենտալ ձևերի արտահայտություններ, մարդկային մեծ ֆիգուրներով, ապա այդ բոլորը բացակայում են էջմիածնի տաճարում, որտեղ երկրաչափական զարդաքանդակները միահյուսված բուսական տարրերին, այն է ծաղկանկարների հետ՝ հավասարաչափ ու կարծես միօրինակ ծածկում են պատերի բոլոր հարթությունները։

Տաճարի որմնանկարների երկրորդ կամ ավելի հին շերտը, որը պահպանվել էր առանձին հատվածներում միայն, հանվել էր իր տեղից, թանգարանային ցուցադրության համար։ Այստեղ նույնպես ծաղկանկար շքեղ հորինվածքներ էին, վառ երանգավորումներով և դարձյալ ոսկեզօծ ֆոնի վրա։

Որմնանկարների նորովի, բայց համանման հորինվածքներով ծածկվեցին նաև տաճարի թանգարանային հատվածի առաստաղները, թեև այդ դահլիճների վերանորոգումից առաջ այդպիսիք չկային այնտեղ, սակայն, դա բխում էր ներքին տարածության ճարտարապետական ընդհանուր հարդարանքի ոգուց (Նկ. 115)։

Առավել մանրացված զարդաքանդակներով են բնորոշվում Հին վեհարանի որմնանկարները, որոնց հորինվածքները իրենց մասշտաբներով համապատասխանում են այդ փոքր ներքին տարածության չափերին։ Այստեղ կատարվեցին միայն նորոգման և ամրացման աշխատանքներ։

[1] Մանյա Ղազարյան. Հայ կերպարվեստը XVII—XVIII դարերում. Երևան, 1974 թ. էջ 158։

[2] Նախագծի հեղինակ և կատարման ղեկավար Լ. Ա. Դուրնովո, խորհրդատու Մարտիրոս Սարյան։



Նկ. 119. Քոբայրի որմնանկարները մաքրելուց հետո։

**Քոբայրի հուշարձանախմբի որմնանկարները.** — Հուշարձանախումբը գտնվում է Թումանյանի շրջանի համանուն գյուղի և երկաթգծի կայարանից վեր, մեծ թեքություն ունեցող լեռնալանջի վրա, այնտեղ ուր տեղանքը սահմանագծվում է ժայռոտ պատնեշներով ու բավականին խոր ձորակով։ Հուշարձանախումբը, որը հիմնված է XI—XIII դարերում, բավական ավերվել է և ներկայումս նրա միայն երկու կառույցներն են կանգուն, և այն էլ մեկը կիսավեր վիճակով, իսկ մյուսներից պահպանվել են առանձին մասեր։

Հուշարձանախմբի եկեղեցիներից երկուսում պահպանվել են խիստ ուշագրավ որմնանկարներ։ Ինչպես ցույց են տալիս որմնանկար-

ների արդի վիճակի ուսումնասիրությունները, ոչ հեռավոր անցյալում, դրանք մասնակի նորոգվել են. ամրացվել է սվաղը և թարմացվել երանգները։

Տվյալ որմնանկարների հորինվածքները, երկու հուշարձաններում էլ, բազմաֆիգուրային են, նվիրված պաշտամունքային թեմաներին՝ պատկերված են Քրիստոսը, Աստվածածինը ու առաքյալները։ Այնտեղ տեսանելի են նաև բուսական ու երկրաչափական զարդաձևեր վերջինները հորիզոնական գոտիների ձևով եզրագծում են հորինվածքների առանձին հատվածներ։

Ստուգումները պարզեցին, որ վերանորոգումից առաջ քամիների, անձրևաջրերի, ջերմային տատանումների, ինչպես նաև մեխանիկական հարվածների հետևանքով, որմնանկարները ենթարկվելով վթարների, բավականաչափ տուժել են ինչպես նաև ծածկվել փոշու, մրի և աղային շերտերով։ Զգալիորեն վնասվել է որմնանկարների հիմքը, ինչպես նաև գունաշերտը։ Այս բոլորից բացի որմնանկարների առանձին հատվածներում, նկատված է սվաղի շերտերի թուլացում՝ պատերից անջատում, գունաշերտի թեփոտում։

Որմնանկարների վերանորոգման աշխատանքները երկու հուշարձաններում էլ սկսվել են նրանց վերականգնման տեխնոլոգիայից ելնելով։ Ամրացվել է սվաղի շերտը, սկսած եզրերի սվաղումից։ Ներարկման միջոցով[1] ամրացվել է փլվող կամ հիմքից անջատվող սվաղը և այլն։ Աղերից և այլ նստվածքներից ազատվելուց հետո որմնանկարները ախտահանվել են, հիդրոֆոբիզացվել[2] երանգավորման ու վերջնական պահպանության համար (Նկ. 119—120)։

Աշխատանքներն ավարտվեցին դրական արդյունքներով։ Այժմ պարզորոշ ընթեռնելի են որմնանկարների հորինվածքները, հատկապես առանձին հատվածներում։ Սակայն Քոբայրի որմ-



Նկ. 120. Քոբայրի որմնանկարը մաքրելուց հետո։

նանկարների պահպանությունը պրոբլեմատիկ է, քանի որ ավերված հուշարձանի պատերը բացօթյա վիճակում անընդմեջ ենթարկվում են մթնոլորտային ներգործության։ Հարց բարձրացվեց վերականգնել նման վիճակում պահպանված որմնանկար ունեցող բոլոր կառույցները։

Համանման աշխատանքներ են կատարվել նաև Արուճում, Թալինում, Կարմրավորում, Սուրբ Հակոբում (Քանաքեռ), Տաթևում և այլ հուշարձաններում, որոնց որմնանկարները մեծ մասամբ ավելի քայքայված վիճակում էին։ Չնայած այս հանգամանքին, ուսումնասիրությունները ցույց են տվել, որ որմնանկարները, որպես ինքնուրույն բնագավառ, զգալի տեղ են գրավել անցյալի գեղանկարչության մեջ։ Բավական է մատնանշել, օրինակ, Արուճի կենտրոնական աբսիդի պատի վրա պահպանված Քրիստոսը գահի վրա 7 մետրանոց ֆիգուրի չափերը, որն ի դեպ նույնպես պահպանվել է առանձին ֆրագմենտների ձևով, որ պարզ դառնա այդ արվեստի մոնումենտալ բնույթը։ Իսկ եթե անդրադառնանք նրա պահպանված առանձին դրվագների կատարողական վարպետությանը, ապա այս անգամ հասկանալի կդառնա նաև գեղանկարչական արվեստի այն

---

1 Ներարկման միջոցով սվաղի ամրացման սկզբունքը, առաջին անգամ կիրառել է Յ. Ս. Ճպանեշնիկովը 1912 թ. Ուսպենսկի տաճարում։

2 Տեխնոլոգիական պրոցեսի մասին տես Քոբայրի եկեղեցիների որմնանկարների վերանորոգման հաշվետվությունները (աշխատանքների ղեկավար Ռ. Հարությունյան, 1975 թ.)։ Հաշվետվությունները պահվում են վարչության արխիվում։



Նկ. 121. Երևան. 19-րդ դ. բնակելի տան որմնանկարը վերանորոգումից հետո։

բարձր աստիճանը, որ գոյություն ուներ VII դարի Հայաստանում։ Այստեղ, ինչպես և Թալինի VII դարի հուշարձաններում, որմնանկարների վերականգնման հիմնական նպատակն էր ամրացնել հիմքը, պատից անջատված սվաղը ներարկելու միջոցով, կատարել սվաղի ճեղքվածքների, ինչպես նաև նրանց եզրերի լրացում, որմնանկարների մաքրումը աղերից, նրանց ազատումը դարավոր փոշու ու մրի շերտերից, որմնանկարների թեփավորված ներկերի շերտերի ամրացում ու երանգավորում։ Հարկ է շեշտել նաև, որպես վաղուց արդեն ընդունված կանոն, որ մաքրմանը ու ամրացմանը նախորդում է գունավոր շերտերի ամրացումը։ Հակառակ դեպքում, վերջինս լինելով հաճախ թեփոտված վիճակում, կարող է այդ աշխատանքների ընթացքում քայքայվելով անհետանալ։ Այս բոլոր միջոցառումները հաջողությամբ ամրացրին Քոբայրի որմնանկարների մնացորդները ու ապահովեցին նրա հետագա գոյությունը իրենց նախնական տեղերում։

Որպես այս բնագավառում կատարված աշխատանքների ուշագրավ փաստ մատնանշենք Քանաքեռի XVII դարի ս. Հակոբ եկեղեցու որմնանկարների վերականգնումը, որոնք երկու շերտից էին՝ XVIII և XIX դարերի։ XVIII դարի որմնանկարները ամրացնելու համար հարկ եղավ պատերից անջատել հետևյալ՝ XIX դարի շերտը։ Մեր նկարիչները հաջողությամբ, առանց որևիցե կորուստի այն տեղափոխեցին կտավի և ֆանեռայի վրա[1]։

Այստեղ մարդկային ֆիգուրների հետ մեկտեղ, կային բուսական և շախմատաձև զարդանկարներ, թռչուններ։ Այս որմնանկարները շատ ավելի բարվոք վիճակում են պահպանվել՝ տեղ-տեղ, նախնական հորինվածքի սահմաններում, կատարված են տեմպերայով, ինչպես էջմիածնի Մայր տաճարի որմնանկարները։

**Խճանկարներ.—** Ճարտարապետական հուշարձանների պեղումների ընթացքում պարզվել են, որ նրանցում երբեմն, թեև շատ հազվադեպ, հանդիպում են նաև խճանկարներ (Գառնի, էջմիածնի Մայր տաճար, Դվին, Զվարթնոց)։ Սակայն, հնարավոր է, որ խճանկարները Հայաստանում ունեցել են խոր անցյալ, եթե Վան քաղաքի մոտ, Թոփրակ-Կալեում հայտնաբերված ուրարտական ժամանակաշրջանի հատակը, որը շարված էր իրար մեջ հագնող տարբեր չափերի ու գույների կլոր քարերից, սկզբունքորեն մոտ համարենք խճանկարի կառուցման եղանակին։

Առայժմ հնագույն օրինակը պահպանված է Գառնիում, նրա հելլենիստական շրջանի բաղնիքի սենյակներից մեկի հատակին, մասնակի կերպով քայքայված վիճակում։ Այդ խճանկարի թեմատիկան գալիս է հունական դիցաբանությունից և ունի հունարեն արձանագրություն։ Այդ խիստ եզակի խճանկարը, պեղումներից հետո անմիջապես պատճենահանվեց։ Նկատի ունենալով խճանկարի հնագիտական մեծ արժեքը, հետագա պահպանության համար, բաղնիքի տվյալ սենյակը վերցվեց տությունները, ուրվագծերը (Զվարթնոց)։

Գառնիի խճանկարի թեմատիկային մոտ մի խճանկար 1976 թ. հայտնաբերվեց Կորնթոս քաղաքից ոչ հեռու գտնվող հռոմեական կայսր Հուստինյանոսի պալատում։ I-ին դարին պատկանող

---

[1] Ռ. Հարությունյան. Արուճի, Թալինի և Քանաքեռի ս. Հակոբ հուշարձանների որմնանկարների վերանորոգման աշխատանքների հաշվետվություն (պահվում է վարչության արխիվում)։

խճանկարները ունեն 8,20 մ չափ։ Այն նույնպես զարդարել է պալատական բաղնիքի հատակը, պատկերում է ծովային վիշապներ, ձկների շրջապատում։

Խճանկարների մնացորդներ, իսկ ավելի ճիշտ առանձին հատիկներ հայտնվեցին նաև Էջմիածնի Մայր տաճարի բեմի պեղումների ժամանակ, երբ նորոգվում էր այդ հուշարձանը։ Այդ հատիկներով հաստատվեց այն փաստը, որ Մայր տաճարի ստեղծման պահին ևս, այսինքն վաղնջական շրջանում, խճանկարների արվեստը հայտնի էր։

Բավականաչափ հայկական խճանկարներ և այն էլ լավ պահպանված, XIX դարի վերջում հայտնաբերվել են նաև Երուսաղեմի հայ եկեղեցիներում, որոնք հավանաբար VI դարի գործեր են և իրենց գեղարվեստական առանձնահատկություններով մոտենում են բյուզանդական արվեստին։

## ԲԱՐԵԿԱՐԳՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐ

Հուշարձանների պահպանության գործում, պեղման-մաքրման աշխատանքների հետ մեկտեղ, կարևոր են նաև նրանց շրջակայքի բարեկարգման աշխատանքները։ Եթե քաղաքների կառուցապատման մեջ բարեկարգման աշխատանքների հիմնական նպատակն է ստեղծել մարդու համար համապատասխան բարվոք միջավայր, ուր նա իրեն զգա առավելապես հարմարավետ, հնարավորին չափ հանգիստ ու ռացիոնալ կենցաղային պայմաններում, ապա պատմական հուշարձաններով կառուցապատված տարածքներում, բարեկարգման աշխատանքների հիմնական նպատակը առավելապես գեղատեսիլ ու իմաստավորված տեսարանների բացումն է հուշարձանների բոլոր նշանակալից տարածական ձևերի ու նրանց բեկորների ընկալման համար։

Բարեկարգման միջոցները տարբեր են։ Դրանցից հիմնականներն են հուշարձանապատկան տեղամասի ցանկապատումը, կանաչապատման նպատակների համար ոռոգման համակարգի ստեղծումը, լուսավորությունը, տեղական ճանապարհների բացումը, թանգարանների հիմնադրումը, պահակակետերի կառուցումը, ինչպես նաև հեռախոսային կապի ստեղծումը և վերջապես պատմական հակիրճ տեղեկություններով հուշատախտակների ամրացումը հուշարձանների վրա և այլն։

Վերջին տարիների ընթացքում հատկապես, նշանակալից բարեկարգման աշխատանքներ են կատարվել Էրեբունիում, Կարմիր բլուրում, Շենգավիթում, Ավանի հուշարձանախմբում, Գեղարդում, Գառնիում, Զվարթնոցում, Երևանի ուրարտական ջրանցքների շրջապատում, Աշտարակի Կարմրավոր եկեղեցում, Կեչառիսի, Գոշավանքի, Հաղարծինի, Սանահնի, Հաղբատի և բազմաթիվ այլ հուշարձանախմբերի տերիտորիաներում, որոնցից յուրաքանչյուրում կատարված է նշված միջոցառումների հիմնական մասը։

Դեպի հուշարձանները լիարժեք դիտակետերի բացման նպատակով մի շարք համալիրներում վերացված են հուշարձաններին կցված և ժամանակի ընթացքում խարխլված վիճակի հասած, պատմական նշանակությունից զուրկ կառույցները։ Այդպիսի աշխատանքներ են կատարված՝ Կարմրավորում, Պտղնիում, Ավանում, Եղվարդում, Սանահնում և այլուր, և որոնց հետևանքով այդ հուշարձանները ներկայումս հանդես են գալիս որոշ տեղերում իրենց ձևերի գրեթե լրիվ նախնական արտահայտությամբ։

Մյուս կողմից, ծառատնկման միջոցով հնարավոր դարձավ, տարածքների հուշարձանների համապատասխան դիտակետերի համար տարբեր տեղերում ստեղծել կանաչապատ ֆոն և այդ ֆոնով ծածկել նույն «կադրի» մեջ մտնող և նրա հետ անհամատեղելի տեսադաշտերը։ Այս հանգամանքը նրանով է կարևոր, որ հնարավոր է դարձնում հինավուրց հուշարձանները ընկալել պատմականին մոտ միջավայրում, առանց համատեղելու հին ու ժամանակակից ճարտարապետությունները ուրվագծերը (Զվարթնոց)։

Հուշարձանները մշտապես բարեկարգ վիճակում պահելու նպատակով սահմանված են արգելափակիչ գոտիներ, որոնցում ամեն մի նոր շինարարություն կամ այլ վերափոխություն ենթակա է մանրազնին քննարկման։

Արգելափակիչ գոտիները ներկայումս որոշա-

կիորեն գծագրվել են Հայաստանի որոշ քաղաքների ու գյուղերի հատակագծերում։ Միայն Երևան քաղաքի սահմաններում ստեղծված է թվով հինգ արգելափակիչ գոտի՝ Արին բերդ, Կարմիր բլուր, Շենգավիթ, Ավան, ուրարտական ջրանցքներ։ Էջմիածնի սահմաններում թվով հինգ՝ Մայր տաճար, Գայանե, Հռիփսիմե, Շողակաթ, Զվարթնոց։ Գյուղերում գոյություն ունեցող արգելափակիչ գոտիներն են Գառնիի, Տաթևի, Սանահնի, Հաղբատի, Ծաղկաձորի, Սևանի, Հաղարծնի և մյուսների պատմական տարածքները։

Հուշարձանների բարեկարգման ծրագրերում սովորաբար տեղ են գրավում նաև ճանապարհաշինարարական աշխատանքները, որոնց անհրաժեշտությունը հատկապես ակներև է Հայաստանի լեռնային շրջաններում, ինչը մեծ չափով օժանդակում է ինչպես վերանորոգմանը, այնպես էլ տուրիզմի զարգացմանը։ Պետշինի նախաձեռնությամբ, Հայաստանի ճանապարհաշինության վարչությունը վերակառուցել է ժամանակակից տրանսպորտի պահանջներին համապատասխան Երևան—Գառնի—Գեղարդ, Երևան—Էջմիածին խճուղուց մինչև Զվարթնոց հատվածները։ Դրա հետ մեկտեղ Պետշինը իր ուժերով ու հնարավորություններով բացել է դեպի Ամբերդ, Գնդևանք, Մակարավանք և այլ տեղեր տանող, տեղական նշանակություն ունեցող մի շարք ճանապարհներ, կամուրջներով ու փոքր կամրջակներով։ Նշված ձեռնարկումները զգալիորեն օժանդակել են ժամանակակից փոխադրամիջոցներով հուշարձանների մասսայական այցելություններին։

Վերջին տարիներին հանրապետության կուլտուր-տնտեսական կյանքի զարգացման պահանջներին համապատասխան, Մոսկվայի առևտրակենցաղային շենքերի և տուրիստական համալիրների կենտրոնական նախագծային ինստիտուտը, Հայաստանի կառավարության պատվերով, մշակեց տուրիստական մեծ համալիրների և նրանց կենտրոնների նախագծերը։ Մենք անմիջապես մասնակցություն բերեցինք այդ գործին, քանի որ տուրիզմի զարգացման գործում պատմա-ճարտարապետական հուշարձանների դերը առանձնապես նշանակալից է որպես ցուցադրման կարևոր օբյեկտներ նրա տարբեր երթուղիներում։ Այն հանգամանքը, որ համաձայն տուրիզմի զարգացման տվյալ նախագծի, Հայաստան այցելող շրջագայողների թիվը հասնելու է բավական մեծ քանակի, ի թիվս մյուս խնդիրների, հուշարձանապատկան տարածքների բարեկարգման մեծ պահանջներ է դնում։

Այդ նախագծի հուշարձաններին վերաբերող մասը կազմելիս ամենայն մանրամասնությամբ մշակել ենք շրջագայողների անխափան հարմարավետ շարժումը յոթ երթուղիներով, հատկապես դեպի կոթողներով հարուստ Սևանի ավազան, Էջմիածին, Երևան, Դիլիջան և տուրիստական այլ վայրեր։

Հուշարձանների ավելի մանրազնին ընկալման և ուսումնասիրության, ինչպես նաև տուրիստական ծրագրով դրանց հետ հաղորդակցվելու համար, 1971 թվականին առավել նշանակալից տասը հուշարձանախմբերում հիմնադրվեցին թանգարանային էքսպոզիցիաներ (Գոշավանք, Հաղարծին, Սանահին, Հաղբատ, Մուղնի, Տաթև, Մարմաշեն, Գնդևանք), ինչը, հարկավ, ավելի բնորոշ է նրանց համար։ Օգտվելով թանգարանային ցուցադրումից, հուշարձանները հիմա արդեն ներկայացվում են, ոչ միայն ճարտարապետական արդի տեսքով, այլև պատմական անցյալի տարբեր արտահայտություններով՝ աշխարհագրական կոնկրետ ու լոկալ միջավայրով, պատմական տեղեկանքներով, գծագրական ու լուսանկարչական պատկերներով, վաղընջական, հաճախ զարմանահրաշ ավանդույթներով ու ժողովրդական առասպելներով միահյուսված։ Հարկ է նշել, որ տվյալ հուշարձանախումբը ցուցադրվում է մերձակայքում գտնվող մյուս հուշարձանախմբերի հետ համատեղ, ինչը ամբողջացնում է նրանց պատմական անցյալի առանձին դրվագները մեկ ընդհանուր պատկերի մեջ։

Այս կապակցությամբ հարկ է նշել, որ հուշարձանները շրջագայողներին ներկայացվում են ոչ թե որպես տարաշխարհիկ կամ զարմանահրաշ մի բան, այլ որպես ճարտարապետական անընդմեջ մտքի պատմական մեծ ավանդություն, որով ստեղծված տարածական միջավայրը, նախ և առաջ կազմակերպում է մարդու հասարակական մտածելակերպը։ Հետևաբար հուշարձանների տուրիստական ցուցադրությունը ոչ թե սովորական զվարճալիք է, այլ այն պատմական մի դաս է, որ դիտողը ստանում է անմիջապես հինավուրց վարպետներից։ Հուշարձանների նմանօրինակ

ցուցադրությունը զգալիորեն բարձրացնում է հետաքրքրությունը դեպի կառուցվածքը, նրա պատմական անցյալը ու այդ բոլորը մատչելի է դարձնում տարբեր հասակի ունկնդիրներին։ Հուշարձանների թանգարանային նման ցուցադրությունը, ամենայն իրավամբ, պետք է նաև դիտվի որպես պահպանության լավագույն միջոցներից մեկը։

Տվյալ նախաձեռնությունը, բացի իր անհրաժեշտությունից, բարձրացնում է հուշարձանների ժամանակակից կարիքների համար օգտագործելու նրանց արդի նշանակությունը։ Այսպիսի մի փորձ կատարվեց վերջին տարիների ընթացքում, երբ Լենինականի Ամենափրկիչ եկեղեցին վերափոխվեց համերգային մեծ դահլիճի։ Նմանօրինակ օգտագործումը ցույց տվեց փորձի միանգամայն դրական արդյունք, եթե նկատի ունենանք հուշարձանի ներքին տարածական ձևերի համապատասխանությունը համանման դահլիճների համար, ինչպես նաև նրա ակուստիկ հատկությունները, որոնք լիարժեք նպաստում են երաժշտական ամենատարբեր երանգավորումների անբասիր հնչողությանը։

Նորը հնում կամ հինը նորում, կարծում ենք, պետք է արտահայտվի հակադրամիասնությամբ, ինչպես վերոհիշյալ հաջողված փորձում։

Մյուս բոլոր դեպքերում, երբ հուշարձանը ներկայացվում է կամ նրա օգտագործումն ուղեկցվում է հնագույն ձևերի նմանակեցմամբ (կոպիտ տաշված նստարան ու սեղան, կանթեղ, մոմակալ, հնագույն ռելիեֆների արդիական վերարտադրություն) վերացվում է հնի ու նորի սահմանագիծը, իսկ դրա հետ մեկտեղ հուշարձանի իսկության ու հավաստիության հանգամանքները անցնում են ընկալման ստվերախիտ կողմը։ Թերևս հնի և նորի հակադրամիասնությունը երբեմն կարող է ավելի տպավորիչ լինել, քան նրանց ներդաշնակ միասնությունը։

* * *

Պատմական հուշարձանների պահպանությունը ամեն մի անցած սերնդի կարևոր ու լուրջ հանձնարարությունն է գալիքին։ Այն իրականացնում են ժամանակակիցները, հանուն նյութական մշակույթի անընդմեջ զարգացման ու վերելքի, միաժամանակ իրենց հոգատարության կնիքը դրոշմելով անցյալի վեհաշուք հուշարձանների վրա։

## Աղյուսակ 1

**Երերույքի բազիլիկա:** *Գտնվում է Անիի շրջանի Անի-Պեմզա ավանում։ Կառուցված է V-րդ դարում։ Ներկայումս կիսավեր վիճակում է, առանց ծածկի, որն եղել է փայտից։ Ավերված են նաև՝ արտաքին սյունասրահը, հարավ-արևմըտյան սենյակը, հուշարձանի հարթակը եզրագծող աստիճանները, շքամուտքերը, պատերը ինչպես նաև քիվերի առանձին հատվածները։*

*Հուշարձանի առաջին և մասնակի նորոգումը՝ պատերի ստորին շարքերի, շքամուտքերի ու քիվերի, կատարվել են 1927 թվականին ակադ. Ա. Թամանյանի անմիջական ղեկավարությամբ։*

*1958 թվին նույնպես մասնակի նորոգումների ընթացքում վերաշարվեցին հուշարձանի հարթակի աստիճանների առանձին մասերը, պատերի շարքերը, ինչպես նաև վերաշարվեցին կառուցվածքի բոլորովին կործանված հարավ-արևմտյան սենյակի պատերի ստորին շարքերը։*

## Աղյուսակ 2—3

**Մանկանց կամ ս. Սիոն եկեղեցի:** *Գտնվում է Աշտարակի շրջանի Օշական գյուղի արվարձանում։ Կառուցվել է VII դարում։ Մինչև վերանորոգման աշխատանքները, հուշարձանը գտնվում էր կիսավեր վիճակում, առանց գմբեթի, ընկած էին պատերի երեսապատման առանձին քարեր, ինչպես նաև որմնախարիսխները։ Կիսավեր վիճակում էին նաև շքամուտքը, ծածկը։ 1950 թվին վերաշարվեցին, ինչպես նաև լրացվեցին նոր բեկորներով որմնախարիսխները, պատերի քայքայված մակերեսները, շքամուտքը, քիվերը, գմբեթի թմբուկը։ Մաքրվեց և հարթվեց հուշարձանի շրջապատը։*

*Վերանորոգող ճարտարապետ Ա. Բալասանյան։*

## Աղյուսակ 4

**Օձունի գմբեթակիր** *բազիլիկան գտնվում է Թումանյանի շրջանի համանուն գյուղում։ Կառուցվել է VI դարում։ Արևելյան ճակատի մասում գտնվող փոքրածավալ զանգակատները կառուցել է XX դարի սկզբում, ժողովրդական վարպետ Նալբանդ Սերգեյը։ Հուշարձանի բազմիցս նորոգումների հետևանքով այն մեզ է հասել կանգուն վիճակում։ Սակայն, 1949—1950 թվերին հարկ եղավ կոնսերվացնել և մասամբ վերաշարել կառույցի արտաքին կամարաշարը։ Միևնույն ժամանակ նորոգվել է նաև հուշարձանին կից գտնվող VI դարի մոնումենտը։*

*Վերանորոգող ճարտարապետ Մ. Մարտիրոսյան։*

*Քարգործ վարպետների բրիգադավար Մ. Մակարյան։*

## Աղյուսակ 5

**Հովհաննավանքի համալիրը:** *Գտնվում է Աշտարակի շրջանում։ Կոմպլեքսի հնագույն հուշարձանը, միանավ բազիլիկ եկեղեցին, կառուցված է հավանաբար V դարում։ Մյուս շենքերը մեծ եկեղեցին Հովհաննես Կարապետի անվամբ կառուցված է 1216 թվին Վաչե իշխանի կողմից, իսկ գավիթը կառուցել է 1250 թվին Վաչուտյան Քուրդ իշխանը։*

*Մեծ եկեղեցին ավերվել է 1918 թվից հետո և պահպանվել է ներսում թափված իր փլատակներով։ Ավերված էին նաև գավթի ճակատների առանձին հատվածները և ծածկասալերը, խարխըլված էին հուշարձանախումբը պարփակող պարիսպները։*

*Հուշարձանախմբի առաջին նորոգումը տեղի է ունեցել 1948 թվին, երբ երեսապատվեց գավթի արևմտյան ճակատի հյուսիսային կողմի հատ-*

16—2959

վածը, նորոգվեց ռոտոնդայի սյունաշարքը, քիվերը, իսկ ծածկը թիթեղապատվեց։

Նորոգող ճարտարապետ Ա. Բալասանյան։

1954 թվին նորոգվել է բազիլիկ եկեղեցու ճակատային պատը, հյուսիսային պատի քիվերը։ 1974 թվին մաքրվեցին մեծ եկեղեցում գտնվող փլատակները, վերանորոգվել են արտաքին պարիսպները, վերացվել է բակի խարխլված հին շենքը, հարթեցված է տեղանքը։

Նորոգող աշխղեկ Շ. Մակյան։

Քարագործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։

### Աղյուսակ 6

**Մարինե եկեղեցի:** Գտնվում է Աշտարակում։ Կառուցվել է մինչև 1281 թիվը։ Դարի սկզբին հուշարձանի արևմտյան ճակատին կցվել էր մի դահլիճ, որը սակայն մնաց անավարտ։ 1950 թվին Մարինե եկեղեցին ենթարկվեց մասնակի նորոգման, որի ընթացքում վերաշարվել էին՝ հուշարձանի դրսի և ներսի երեսապատերի, քիվերի, թմբուկի հողմահարված առանձին հատվածները, ինչպես նաև տեղադրվել էին քարե նոր ծածկասալեր։ Վերանորոգող ճարտարապետ Ա. Բալասանյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։

1978 թ. հուշարձանի տարածքը հիմնովին բարեկարգվեց։

### Աղյուսակ 7

**Լմբատավանք կամ Ս. Ստեփանոսի եկեղեցի:** Գտնվում է Արթիկ քաղաքից 2 կմ հարավ-արևմուտք, կառուցված VII դարում։ Վերանորոգման աշխատանքները այստեղ կատարվել են 1954—55 թվերին։ Հուշարձանի շրջապատի մաքրման աշխատանքներից հետո, լրիվ բացվել ու վերանորոգվել են նրա գետնախարիսխները։ Նորոգվել են նաև՝ պատերի առանձին հատվածները դրսից ու ներսից, քարե ծածկերը, ամբողջ գմբեթը, քիվերը։ Հուշարձանի հյուսիս-արևմտյան մասին կցված կառույցի քանդված տանիքի նախնական ձևի անորոշության պատճառով, այն ծածկվել է թիթեղով և այդ ձևով թողնված է հետագա հետազոտությունների համար։



Վերանորոգող աշխղեկ Ս. Պետրոսյան։

Քարագործ վարպետների բրիգադավար Կ. Աբաջյան։

### Աղյուսակ 8—10

**Բղենո-Նորավանք:** Գտնվում է Գորիսի շրջանում, Տաթևից ոչ հեռու, անտառի խորքում։ Կառուցվել է 1062 թ.։ Վերականգնումից առաջ գտնվում էր խիստ վթարային վիճակում։ 1958 թ. հուշարձանի նորոգման ժամանակ, վերականգնվեցին նրա սրբատաշ արտաքին մուտքերը և ամբողջ թաղածածկը։ Հուշարձանի տարածքում կատարվեցին հողային կուտակումների ու փլատակների մաքրման աշխատանքներ։

Վերանորոգող ճարտարապետ Դ. Ավետիսյան, քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգըսյան։

### Աղյուսակ 11

**Սիսիանի ս. Հովհաննես:** Կենտրոնագմբեթ եկեղեցին գտնվում է շրջկենտրոնում, կառուցվել է 681—689 թվերին Կոհազատ իշխանի և Հովսեփ եպիսկոպոսի կողմից։ Հուշարձանը քայքայված էր իր ճակտոնային և գմբեթային մասերում։ Բազալտից կառուցված հուշարձանը վերանորոգված է 1959—1961 թվերին։ Վերանորոգման աշխատանքներով վերաշարվեցին քայքայված մասերը և շենքը դրանով ստացավ իր նախնական ձևերը և վաղնջական տեսքը։

Վերանորոգող ճարտարապետ Դ. Ավետիսյան, քարգործ վարպետների բրիգադիր Յ. Սարգըսյան։

### Աղյուսակ 12

**Պտղնիի տաճարը:** Գտնվում է Աբովյանի շրջանի համանուն գյուղում։ Կառուցվել է VII դարի սկզբում։ Պատկանում է գմբեթավոր դահլիճների տիպին։ Հուշարձանից պահպանվել են հյուսիսային և մասամբ հարավային պատերը, որոնք իրար հետ միացված են գմբեթատակ կամարով։ 1959 թվին կատարվեցին հուշարձանի կոնսերվացման աշխատանքները, երբ ամրացվեցին կանգուն պատերի որմածքները, հյուսիս-ա-

րևելյան մասի թաղերի առանձին կոնստրուկտիվ հանգույցների ներարկումը։ Նույն ժամանակ հեռացվեց հուշարձանի հարավային պատի կանգուն մասին կցված խարխլված պահեստային շենքը։

Տարածքի բարեկարգման նպատակով քանդվել է քարե հին ցանկապատը և կառուցվել է նոր պարիսպ և աղբյուր։

Վերանորոգող ճարտարապետ Ա. Հարությունյան։

Քարգործ որմնադիրների բրիգադ Օ, Մ. Մենեչյան։ 1978 թվին կատարվում են հուշարձանի տարածքի բարեկարգման նոր աշխատանքներ։

### Աղյուսակ 13

Արտավազիկ եկեղեցի։ Գտնվում է Արագած լեռան փեշերին, Բյուրական գյուղից արևելք։ Կառուցվել է VII դարում, իսկ XIII դարում նրա վրա կանգնեցվում է ռոտոնդաձև զանգակատուն։ Հուշարձանը հասել է մեզ, ավերված ծածկով ու հազիվ կանգնած այդ զանգակատան ծավալով։

1958 թվին կոնսերվացիոն աշխատանքներին նախորդեցին հուշարձանի փլատակների մաքրումը, ինչպես նաև անիվային տրանսպորտի համար ճանապարհի բացումը դեպի կառույցը։

Դրանից հետո վերանորոգվեցին շենքի արևմտյան ճակատը մասամբ նոր որմածքով, թաղի մի հատվածը, ծածկը, սալերը ու քիվերը։ Ծածկի որմածքի մեջ ավանդական ձևով իներտ շինանյութի փոխարեն, տեղադրվեցին կարասներ, ծածկի քաշը իջեցնելու նպատակով։

Հուշարձանից արևելք գտնվող խաչքարը ամրացված ու վերանորոգված է իր պատվանդանի հետ մեկտեղ։

Վերանորոգող ճարտարապետ Ա. Աբրահամյան, Դ. Ավետիսյան։

Քարագործ-որմնադիրների բրիգադավար Պ. Մարաբյան, Օ. Մ. Մենեչյան։

### Աղյուսակ 14—15

Սելիմի քարվանատուն։ Կանգնած է Վայոց ձորի Սելիմի լեռնանցքի գագաթին։ Կառուցված է 1326—1337 թթ. Չեսար Օրբելյանի կողմից։ Հուշարձանը, վերանորոգումից առաջ, ավերված էր իր միջին մասում, լայնական ուղղությամբ։ Բացի այդ, ներքին տարածության առանձին մասերում խարխլված էին կամարներն ու թաղերը, և շենքը կանգնած էր ամբողջական փլման վտանգի առաջ։ Քայքայված վիճակում էին նաև մեծածավալ բազալտե ծածկասալերը, որի հետևանքով անձրևաջրերը անարգել ներծծվում էին հուշարձանի ներսը, էլ ավելի քայքայելով նրան։

Վերանորոգման աշխատանքները այստեղ սկսվեցին 1955 թ. և տևեցին մինչև 1959 թ., դրանցով քարվանատունը լրիվ վերականգնվեց իր այստեղ թվարկած մասերում։ Միևնույն ժամանակ մաքրվեց նրա ներքին տարածությունը հատակի վրա դարավոր նստվածքներից, ինչպես նաև տեղադրվեց մուտքը փակող երկաթե դուռ։ Հարթվեց հուշարձանի շրջապատի տեղանքը։

Վերանորոգող ճարտարապետ Ա. Հարությունյան։

Քարագործ վարպետների բրիգադավար Օ. Մ. Մենեչյան։

### Աղյուսակ 16—17

Սևանի թերակղզու հուշարձանների համալիրը։ Հուշարձանները երկուսն են՝ ս. Առաքելոց և Ս. Կարապետի եռաբսիդ եկեղեցիները, կառուցված են 874 թվին Սյունյաց իշխանուհի Մարիամի կողմից։ Հուշարձանները կառուցված են կոպտատաշ քարերով, որոնք, ինչպես նաև ծածկասալերը, ժամանակի ընթացքում բավականին հողմահարվել են։ Դրա հետևանքով, անձրևային ջրերը, անընդհատ ներծծվելով տանիքներից, խոնավության մեջ էին պահում հուշարձանները՝ պատերի ներքին մակերեսները և առաստաղը։

1953 թվին, ինչպես նաև 1956—1958 թվերին կատարվեց Սևանի համալիրի հուշարձանների կոնսերվացման և նորոգման աշխատանքները՝ պատերի նորոգում-վերաշար, նոր ծածկասալերի տեղադրում։

1967—69 թվերին կղզու ստորոտից մինչև համալիրը կառուցվեցին բազալտե աստիճաններ, հարմարավետ շարժման համար, ինչպես նաև հենապատերի օգնությամբ կարգավորվեցին տեղանքի թեքությունները։

*Վերանորոգող աշխղեկ Հ. Գասպարյան, Վ. Խաչատրյան։*

*Քարագործ վարպետների բրիգադավար Օ. Մենեչյան, Հ. Գևորգյան։*

### Աղյուսակ 18—19

**Բջնիի հուշարձանախումբը:** *Գտնվում է Հրազդանի շրջանի համանուն գյուղում։ Այն որպես վանք հիմնադրել է Գրիգոր Մագիստրոսը XI դարի սկզբում։ Ներկայումս Բջնիի հնագիտական տարածքում պահպանվում են՝ միջնաբերդի պարիսպները (X դ.), Աստվածածին եկեղեցին (1031 թ.), մատուռը (VII դ.) մի շարք խաչքարեր, ինչպես նաև պեղման ենթակա տարածություններ։*

*1957—59 թթ. ընթացքում այնտեղ կատարվող նորոգումների ժամանակ վերականգնվեցին Աստվածածին եկեղեցու ճակատային մասերի խիստ փքված որմածքը, ինչպես նաև հնում անհետացած ծածկասալերը ու հուշարձանը շրջափակող պարիսպները։ Նորոգված է մատուռը։*

*Վերանորոգող ճարտարապետ Հ. Հակոբյան։*

*Քարագործ վարպետների բրիգադավար Մ. Մենեչյան, Հ. Գևորգյան։*

### Աղյուսակ 20—22

**Մշկավանք եկեղեցի:** *Գտնվում է Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղից 3 կմ հեռավորության վրա, անտառի խորքում Կառուցվել է X—XIII դդ.։ Եկեղեցու ներքին տարածությունը թաղակապ դահլիճ է դրսից երկթեք ծածկով։ Գավթի տարածական կառուցվածքը հիմնրված է հատվող կամարների համակարգի վրա։*

*Երկու կառույցն էլ մեր օրերն էին հասել բավականին խարխլված վիճակում, կառույցների որմածքների մեջ շրջակայքի դարավոր ծառերի հաստ արմատների ներթափանցման հետևանքով։*

*Հուշարձանախմբի վերանորոգումը ձեռնարկվեց 1955—57 թվերին և սկսվեց ծառերի այդ արմատների ոչնչացումից։ Դրանից հետո կատարվեց՝ որմածքի ներարկումը, վերաշարը, նոր շարքի իրականացումը դրսից և ներսից, թաղածածկերի վերաշարը և լրացումը նոր քարերով, քիվերի ինչպես նաև նոր ծածկասալերի շարը։*

*Վերանորոգող ճարտարապետ Հ. Հակոբյան։*

*Քարագործ վարպետների բրիգադավար Հ. Գրիգորյան։*

### Աղյուսակ 23—25

**Սանահինի համալիրը:** *Գտնվում է Թումանյանի շրջանի Ալավերդի քաղաքում։ Համալիրը կազմում են Ամենափրկիչ (967—972 թթ.), Աստվածածին (X դ.), ս. Գրիգոր (XI դ.) եկեղեցիները, գավիթը (1181 թ.), նախագավիթը (1211 թ.), զանգակատունը (XIII դ.)- գրատունը (1063 թ.), Գրիգոր Մագիստրոսի ճեմարան կոչվող դահլիճը։ Այստեղ է գտնվում նաև սպասալարների դամբարանը (1189 թ.) Տուտեորդու և բազմաթիվ այլ խաչքարեր։ Սանահնի արվարձանում գտնվում է աղբյուրի շենքը (XII դար) ու մի շարք այլ կոթողներ։ Համալիրը անցյալում բազմիցս նորոգվել է։*

*1953—58 թ թ. կատարվեցին նրա կառույցների նոր նորոգումները, ինչպես նաև բարեկարգվեց նրա տերիտորիան։ Այստեղ վերացվեցին նրա մի շարք հնամաշ շենքերը, համալիրի՝ բակի եզրագիծը ցանկապատվեց ու կանաչապատվեց։ Կոնսերվացվեցին պատերը, պատրաստվեցին նոր ծածկասալեր, ամրացվեցին իրենց տեղերում խաչքարերը։ Հիմնովին վերակառուցվեցին աղբյուրի կառույցները, որոնցից մեկը գտնվում է համալիրի տարածքում, մյուսը նրանից դուրս։*

*Վերանորոգող ճարտարապետներ Ա. Ավետիսյան, Ս. Մաթևոսյան, Ս. Պետրոսյան, Ն. Պապուխյան, Վ. Խաչատրյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Մ. Մակարյան։*

### Աղյուսակ 26—27

**Արենի կամ Արփա:** *Ս. Աստվածածին եկեղեցին գտնվում է Եղեգնաձորի շրջանում։ Կառուցել է 1321 թվին, ճարտարապետ Մոմիկը։ Հուշարձանը ավերվել է 1840 թվին երկրաշարժի ժամանակ, երբ ընկել էր նրա գմբեթը։*

*Վերանորոգումը սկսվեց 1967 թվին և ավարտվեց 1971 թվին։ Նախապես մաքրվեց շրջապատը բերածո հողի շերտերից, որոնց միջից հանվեցին ավերված շենքի բեկորների մի զգալի մասը։ Նրանցով, ինչպես նաև, նոր տաշված քարերով,*

*վերաշարվեցին կառույցի ճակատները՝ դրսից և ներսից, կամարները, թաղերը, գմբեթի թմբուկի ստորին շարքերը, քիվերը, ներսի սալահատակը, ինչպես նաև թիթեղապատվեց գմբեթի թմբուկի բացվածքը։*

*Աշխատանքները կատարվել են Հայաստանի պատմական հուշարձանների պահպանության ընկերության պատվերով։*

*Վերանորոգող ճարտարապետ Ա. Աբրահամյան (1967 թ.), Շ. Մակյան (1968 թ.), Գ. Դանիելյան (1969—1971 թթ.)։*

*Քարագործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։*

## Աղյուսակ 28—29

**Ծիրանավոր եկեղեցի։** *Գտնվում է Աշտարակում։ Կառուցվել է V դարում, եռանավ բազիլիկա է։ XVII դարում հարմարեցված լինելով ռազմական կարիքներին, այն վերափոխված էր ամրոցի։ 1815 թվին եկեղեցին ավերվել ու պահպանվել էր փլատակների ձևով մինչև 1963 թիվը, երբ սկսվեցին նրա վերանորոգման աշխատանքները։ Այդ կապակցությամբ վեջիններին նախորդեց նրա փլատակների մաքրումը։ Այդ ընթացքում նրանում հայտնաբերվեցին մեկ խաչքար, պատերի, սյուների, կամարների ու թաղերի բազմաթիվ բեկորներ։ Դրանցով վերաշարվեցին նախնական կոնստրուկտիվ էլեմենտների առանձին հատվածներ, ինչպես նաև նորից շարվեցին գմբեթարդը, երկու սյուները իրենց կամարներով ու թաղակապ ծածկով, որմնասյուների խոյակներով։ Վերաշարվեց արևելյան պատը իր ճակատով։ Վերացվեցին շենքին ընդհուպ կառուցված ու ժամանակի ընթացքում խարխլված տնտեսական շինությունները։*

*Վերանորոգող աշխղեկ Հ. Գասպարյան։*

*Քարգործ վարպետների բրիգադավար Կ. Խաչատրյան։*

## Աղյուսակ 30—31

**Մարմաշենի համալիրը։** *Գտնվում է Ախուրյանի շրջանի Վահրամաբերդ գյուղի մոտ։ Համալիրը բաղկացած է 5 եկեղեցուց, սակայն ինչպես ցույց են տալիս նրա տարածքում կատարված պեղումները, համալիրը ուներ ևս մի շարք կոթողներ։*

*Գլխավոր եկեղեցին կառուցվել է 986—1029 թվերին Վահրամ Պահլավունու կողմից, մյուս եկեղեցիները կառուցվել են XI, իսկ գավիթը XVIII դարերում։*

*Բացի մեծ եկեղեցուց հուշարձանները վերանորոգումից առաջ կանգնած էին կիսավեր, ինչպես նաև մասնակի կերպով ավերված վիճակում։ Վերանորոգման աշխատանքները սկսվեցին և ավարտվեցին 1954—55 թվերին։ Այդ ընթացքում, հուշարձանախմբի տարածքում կատարված պեղումներով լրիվ հայտնաբերվեցին կլոր հատակագծով եկեղեցին, ինչպես նաև այլ կառույցների մնացորդներ։ Կլոր հատակագծով եկեղեցու ձևերը, զգալիորեն փոխում են մեր պատկերացումները Մարմաշենի համալիրի ճարտարապետական-տարածական հորինվածքի մասին։*

*Նշված հուշարձաններում կատարված է պատերի երեսապատում, քիվերի ու ծածկասալերի վերականգնում։ Համալիրի հարավային մասում կանգնած եկեղեցին, ավանդական ձևերին հակառակ, չուներ գմբեթատակ ելուստներ և այն այդպես էլ վերանորոգվեց։*

*Բացի այդ աշխատանքներից, կատարված է տարածքի բարեկարգում, որը շարունակվում է նաև 1978 թ.։*

*Վերանորոգող աշխղեկ Հ. Գասպարյան, Վ. Խաչատրյան։*

*Քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։*

## Աղյուսակ 32—33

**Թալինի քարավանատուն։** *Գտնվում է Աշտարակի շրջանում, կառուցվել է 13-րդ դ.։ Բավականին ընդարձակ կառույց էր, որից պահպանվել է, այն էլ խիստ քայքայված վիճակում, նրա մի հատվածը։ 1956 թ. ըսկսվեց կառույցի մասնակի նորոգումը (նախագծի հեղինակ Յու. Թամանյան) արտաքին ու ներքին պատերի, կամարների ու թաղերի վերաշար, նոր որմածքի իրականացում, քիվերի ինչպես նաև ծածկասալերի շար։*

*Վերանորոգող ճարտարապետ Հ. Հակոբյան, քարգործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։*

### Աղյուսակ 34

**Խոր-Վիրապ:** *Պատմականորեն հարուստ այս վանքը գտնվում է Արարատի շրջանում, Արաքս գետի ձախ ափին մոտ վեր խոյացող բլուրի գագաթին, պատմական Արտաշատի միջնաբերդի վրա, որի շրջակայքում, ներկայումս կատարվում են հնագիտական պեղումներ։*

*Հինավուրց ժամանակներից բնակեցված այս տարածքը կառուցապատվել է VII դարում։ Սակայն նրա արդի մնացորդները XVII դարի եկեղեցիներ են, ինչպես նաև վանքապատկան տեղամասի եզրագծով կառուցված ու այժմ քայքայվա վիճակով մեր օրերին հասած աշխարհիկ շենքեր։*

*Հուշարձանները վերանորոգվել են, 1960—61 թթ. մասնակի կերպով կոնսերվացվել են նաև աշխարհիկ շենքերը ու բարեկարգվել բակը։*

*1977—78 թթ. մասնավորապես վերանորոգվեցին վանքի արտաքին պարիսպապատերը։*

*Աշխատանքները կատարված են էջմիածնի կաթողիկոսության պատվերով։*

*Վերանորոգող ճարտ. Վ. Խաչատրյան, Ռ. Հակոբյան։*

### Աղյուսակ 35

**Կարմրավոր:** *Գտնվում է Աշտարակում, կառուցվել է VII դարում։ XIX դարի սկզբում եկեղեցուն կցվում է կոպիտ քարով շարված, փայտյա սյուներով, հարթ հողե ծածկով, եռանավ շենք, որպես եկեղեցու ներքին տարածության շարունակություն։ Դրանով նախնական շենքի գողտրիկ ձևերը իրենց հիմնական մասով կառուցապատվեցին ու արևմտյան կողմից դարձան անտեսանելի։*

*1956 թ., երբ սկսվեցին հուշարձանի կոնսերվացման, ինչպես նաև նրա տարածքի բարեկարգման աշխատանքները, առաջին հերթին վերացվեց այդ, արդեն կիսավեր կառույցը։ Այդ ընթացքում նրա որմածքից դուրս բերվեցին երեք բարձրարվեստ խաչքարեր, որոնք նորոգումից հետո կանգնեցվեցին բակի հարավային մուտքի մոտ։ Միևնույն ժամանակ, վերացվեցին այնտեղ գտնվող խարխլված շենքերն ու ցանկապատերը։ Կարգի բերվեց ու հարթեցվեց տեղանքը, վերաշարվեցին քայքայված աստիճաններն ու պատերը, տեղադրվեցին քարե նստարաններ։*

*1972—73 թթ. շենքի ներսում, ծեփից մաքրվեցին նրա տակ գտնվող հինավուրց որմնանկարները։*

*Վերանորոգող ճարտարապետներ՝ Ա. Հարությունյան, Վ. Խաչատրյան, Հ. Գասպարյան։*

*Քարագործ-վարպետների բրիգադավարներ՝ Մ. Մենեջյան, Մ. Մելիքյան։*

### Աղյուսակ 36—43

**Կեչառիսի համալիրը:** *Գտնվում է Հրազդանի շրջանի Ծաղկաձոր ավանում։ Համալիրը կազմում են Գրիգոր Մագիստրոսի կողմից հիմնված ս. Գրիգոր եկեղեցին (1003 թ.), նրան կից գավիթը (XII դ.), ս. Նշան եկեղեցին (XIII դար), Կաթողիկե եկեղեցին (XIII դ.), ս. Հարություն եկեղեցին (1220 թ.), մի շարք խաչքարեր, ինչպես նաև ճարտարապետ Վեցիկի մահարձանը։*

*Համալիրը վերանորոգվել է՝ 1939, 1947—48 և 1957—58 թթ.։*

*1939 թ. կատարված էին փոքրածավալ, կոնսերվացիոն աշխատանքներ ս. Գրիգոր հուշարձանի վրա։*

*1947—48 թթ. կոնսերվացվեցին հուշարձանախմբի առանձին հատվածները, ինչպես նաև նրանց տանիքները ծածկվեցին մարսելյան կղմինդրով։*

*1957—58 թթ. վերանորոգվեցին համալիրի բոլոր հուշարձանները՝ պատերը, քիվերը, շքամուքերը, գմբեթները, իսկ մարսելյան կղմինդրը ամենուրեք փոխարինվեց բազալտե ծածկասալերով։ Կաթողիկեն ստացավ կիսով չափ վերականգնված թմբուկի վրա թիթեղյա ծածկ՝ բարեկարգվեց համալիրի ամբողջ տարածքը (ցանկապատ, հենապատեր, կանաչապատում, լուսավորություն), ինչպես նաև իրենց նախնական տեղերում ամրացվեցին խաչքարերը։*

*Վերանորոգող աշխղեկ Ս. Պետրոսյան Հ. Գասպարյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։*

### Աղյուսակ 44—49

**Գոշավանք կամ Նոր-Գետիկ:** *Ճարտարապետական համալիրը գտնվում է Դիլիջանի շրջանի Գոշ գյուղում։ Հիմնված է XII դարում, որտեղ կառուցապատման աշխատանքները*

շարունակվում էին, նաև XIII դարում։ Համալիրի հիմնադրմանը գործունյա մասնակցություն է ցույց տվել Մխիթար Գոշը, նշանավոր գիտնականը, քաղաքական գործիչն ու առակագիրը։

Համալիրը ընդգրկում է՝ Աստվածածին եկեղեցին (1191—96 թթ.) իր գավիթով (1197—1203 թթ.), ս. Գրիգոր (1237 թ.) ս. Գրիգոր (1208—1241 թթ.) գրապահոցը զանգակատան հետ (XIII դար)։ Այստեղ կանգուն են սեղանատան կառույցի կոպտատաշ պատերի մնացորդները։

Համալիրից հարավ-արևմուտք կանգնած է փոքր չափերի ս. Գրիգոր եկեղեցին (1256 թ.), իսկ դրանից արևմուտք, բարձրունքի վրա պահպանվում է Մխիթար Գոշի դամբարանը։

Չնայած իրենց ամուր շինանյութին, ինչպիսին է բազալտը, համալիրի կառույցները հասել են մեզ բավականաչափ հողմահարված վիճակում։ Այդ կապակցությամբ վերանորոգվեցին բոլոր կառույցները՝ նրանց պատերը, որոնք զանգակատան շենքում վերանորոգվեցին նրա բարձրության, համարյա թե, երկու հարկերի սահմաններում, իսկ մյուս հուշարձաններում նորոգվել են թաղածածկերը՝ սալաքարերով։ Մի քանի հուշարձանում, անցյալում ծածկասալերի փոխարեն նորոգումը կատարված էր հողի շերտերով, որը նույնպես հեռացվեց։

Հիմնովին վերանորոգման ենթարկվեցին կառույցների գմբեթները, իսկ Աստվածածին եկեղեցու գմբեթը վերաշարվեց ամբողջությամբ։ Կառույցների կոնստրուկտիվ հանգույցներում օգտագործված է երկաթբետոնը։ Դռները պատրաստված են երկաթյա ճաղերի ձևով։ Վերանորոգող ճարտարապետ Վ. Խաչատրյան, Հ. Գասպարյան։ Քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարդսյան։

1978 թ. հուշարձանախմբի տարածքը հիմնովին բարեկարգվեց։

## Աղյուսակ 50—52

Ավանի հուշարձանները գտնվում են Երևանի համանուն թաղամասում.դրանք են՝ քառաբսիդ հորինվածքով տաճարը (6-րդ դ), ս. Հովհաննես եկեղեցին (13-րդ դ.)։ Մասնակի կերպով վերանորոգվել են 1968 թ., ինչպես նաև տեղանքի բարեկարգման նըպատակով ասֆալտապատվել են դեպի հուշարձանները տանող ճանապարհները և ավտոկանգառի հրապարակը։ Հուշարձանների տեղանքից վերացվել են բնակելի այն տները, որոնք խափանում էին հուշարձանների տեսարանները։

Վերնորոգող աշխղեկ Հ. Գասպարյան
Քարագործ վարպետների բրիգադավար
Յ. Սարգսյան։

## Աղյուսակ 53

**Մուղնիի ս. Գևորգ եկեղեցի:** Գմբեթավոր բազիլիկ տիպի, կառուցվել է 1664—1670 թթ. Աշտարակի շրջանի համանուն գյուղում, վանահայր Հովհաննեսի կողմից։ Հուշարձանի հյուսիս-արևելյան հատվածում գտնվում են վանքապատական աշխարհիկ շենքերը։ Եկեղեցին կանգուն է համեմատաբար լավ վիճակում, իսկ աշխարհիկ շենքերը, վերանորոգումից առաջ խարխլված էին ու ավերված, ինչպես նաև անկանոն ձևով կառուցապատված կավաշեն կացարաններով ու ցանկապատերով։ Այս կապակցությամբ 1973—74 թթ. նորոգման աշխատանքների հետ մեկտեղ այստեղ կատարվեցին նաև բարեկարգման աշխատանքներ։ Հարկ եղավ վերացնել տեղանքից բոլոր խայտաբղետ կառույցները հարթեցնել շրջապատը ու անհրաժեշտ տեղերում այն ցանկապատել։ Աշխարհիկ շենքի կիսավեր երկրորդ հարկը վերացվեց, իսկ առաջինը անհրաժեշտ նորոգումից հետո հարմարեցվեց թանգարանային կարիքների համար։ Այս բոլորից հետո, փողոցից բացվեց հարմարավետ տեսարան դեպի ողջ հուշարձանախումբը։

Վերանորոգման նախագծի հեղինակ Ս. Մաթևոսյան։

Վերանորոգման աշխղեկ Ս. Նալբանդյան։

## Աղյուսակ 54—55

**ս. Ստեփանոս եկեղեցի:** Գտնվում է Աշտարակի շրջանի Կոշ գյուղում։ Կենտրոնագմբեթ կառուցվածք է, խաչաձև հատակագծով, և ուղղանկյուն թևերով։ Ենթադրվում է, որ այն կառուցված պետք է լիներ VII դարում։ Վերանորոգումից առաջ հուշարձանը գտնվում էր կիսա-

վեր վիճակում՝ ընկած էին պատերի երեսապատման քարերի զգալի մասը ներսի ու դրսի հարթություններից, ինչպես նաև բոլորովին ավերված էին ծածկերը ու գմբեթային համակարգը։ Գյուղի մյուս հուշարձանը Գրիգոր Լուսավորիչի եկեղեցին է՝ միանավ, թաղածածկ դահլիճ, արտաքուստ երկթեք տանիքով։ Շենքն ունի 2 մուտք, արևմուտքից և հարավից։

*1974—76 թթ.* սկսվեց ս. Ստեփանոս եկեղեցու վերանորոգումը, որի ընթացքում լրիվ վերականգնվեցին պատերը, ինչպես դրսից այնպես էլ ներսից, հիմնականում նոր տաշված քարերից և ծածկը մինչև գմբեթի թմբուկը։ Ընդ որում ծածկասալերը տեղադրվեցին բազալտից, քառորդները հանած, կիսակլոր ելուններով։

Վերանորոգ աշխղեկ Հ. Գասպարյան։

Քարագործ վարպետների բրիգադավար Մ. Մենեջյան։

**Աղյուսակ 56—57**

Սպիտակավոր վանքը։ Գտնվում է Եղեգնաձորի շրջանի Վերնաշեն գյուղի մոտ, թեք սարալանջին։ Այն բաղկացած է Աստվածածին եկեղեցուց և նրան կցված գավթից։ Հիմնադրվել է Պռոշ իշխանների կողմից 1321 թվին։ 1330 թվին այստեղ Հովհաննես և նրա կին Թաճին կառուցել են ուրույն հորինվածքով երկհարկ զանգակատուն։ Վանքը պարիսպապատ էր, որից պահպանվել են նրա առանձին հատվածները։ Հիշատակության արժանի է եկեղեցու արևելյան պատի վրա քանդակված մեծ չափի խաչը, որի կոտրտված գծագրությունը հաղորդում է նրա հորինվածքին շարժման հզորության արտակարգ արտահայտություն։ Հուշարձանախմբում կատարված է կառույցների վերաշար, նոր շար ընդհուպ մինչև գմբեթի վեղարը։

Վերանորոգող ճարտարապետներ՝ Գ. Դանիելյան (1970 թ.), Շ. Մակյան (1971 թ.)։

Քարագործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։

**Աղյուսակ 58—60**

Տեղերի հուշարձանը։ Բաղկացած է Աստվածածին եկեղեցուց և գավթից, կառուցել են իշխան Վաչեն և նրա կին Մամախաթունը 1232 թվին։ Գտնվում է Արագած լեռան հարավային լանջին։ Հուշարձանը նշմարելի է իր երեք գմբեթների հազվադեպ համակարգով։ Կառույցը խիստ տուժել է 1948 թվի երկրաշարժի պահին, երբ նրանում առաջացել են բազմաթիվ ճաքեր ու ընկել են պատերի ու գմբեթների երեսապատ բեկորները։

*1950—53 թթ.* ընթացքում կատարվեց հուշարձանի լրիվ նորոգումը, ընդհուպ մինչև գմբեթների թմբուկների վերաշար ու ծածկասալերի տեղադրումը, իսկ վեղարները վերարտադրվեցին թիթեղով։

Նորոգող ճարտարապետ Հ. Հակոբյան։

*1975 թվից* սկսվեց հուշարձանի նոր վերանորոգումը և այս անգամ հիմնովին վերականգնվեցին ծածկերը, վեղարները վերաշարվեցին, ընդ որում, արդեն քարից։ Հուշարձանի կոնստրուկտիվ հանգույցներում օգտագործվեց երկաթբետոն։

Վերանորոգող ճարտարապետ Ա. Ավետիսյան։

Քարագործ վարպետների բրիգադավար Մ. Գասպարյան։

**Աղյուսակ 61**

Ալայազի ս. Կարապետ եկեղեցի։ Գտնվում է Եղեգնաձորի շրջանում։ Կառուցվել է 13-րդ դ.։ Վերանորոգումից առաջ բավականին քայքայված վիճակում էին նրա գմբեթը, ծածկերը, պատերի ճակատային մասերը։ 1974 թ. կատարվեց հուշարձանի վերանորոգումը ճարտարապետ Յու. Թամանյանի նախագծով։ Վերանորոգող ճարտարապետ Ա. Աբրահամյան, քարագործ վարպետների բրիգադավար Պ. Մարաբյան։

**Աղյուսակ 62—63**

Թալինի մեծ եկեղեցին կամ Կաթողիկեն։ Գտնվում է համանուն շրջանային կենտրոնում։ Կառուցել են VII դարում Կամսարական իշխանները։ Հուշարձանի շրջապատում գտնվում է փոքր չափի մի այլ եկեղեցի, ինչպես նաև պեղման ենթակա հնագիտական տարածքներ։ Պեղումների ընթացքում այստեղ հայտնաբերվել է հավանաբար V դարում կառուցված միանավ շենքը իր հազիվ պահպանված առաջին շարքերով։

Մեծ եկեղեցին պահպանվել է խիստ վթարային վիճակում, գմբեթի հարավային պատերի մի փոքր հատվածով միայն ու քայքայված ծածկերով։

Հուշարձանի վերանորոգումը, որը սկսվել է 1958 թվին ընդհատումներով շարունակվում է առ այսօր, քանի որ նրանում վերանորոգվում են՝ համարյա թե բոլոր հատվածներն ու հանգույցները, գետնախարիսխները, հատակի սալերը, պատերը, կամարները, թաղերը, ծածկերը, գմբեթի թմբուկը և այլ մասեր, ինչպես նաև զարդաքանդակները։

Նախագիծը Հ. Հակոբյանի, հետագայում Ա. Ստեփանյանի։

Վերանորոգող ճարտարապետներ՝ հաջորդաբար եղել են՝ Գ. Տոնոյան, Ա. Հարությունյան, Դ. Ավետիսյան, Ա. Ավետիսյան։

Քարագործ վարպետների բրիգադավարներ Վ. Մակարյան, Մ. Գասպարյան։

## Աղյուսակ 64—66

Ամբերդ: Համալիրը գտնվում է Արագած լեռան հարավային լանջին, հիմնված է X դարում, սակայն վերջնականապես ձևակերպվել է XIII դարում, Զաքարյանների օրոք։

Համալիրը կազմում են՝ պալատը (X—XIII դդ.), բաղնիքը (XIII դ.), եկեղեցին (XI դ.) ինչպես նաև պեղման ենթակա հնագիտական տարածքը։

1970—76 թթ. այստեղ կատարվող նորոգման ընթացքում վերանորոգվեց եկեղեցին, իր պատերի, գմբեթային համակարգի, ինչպես նաև ծածկերի մասում։

Վերանորոգման աշխատանքներին նախորդեց լեռնային բարդ տեղանքում ճանապարհի բացումը դեպի հուշարձան, որը նույնպես չբավարարեց նորոգման ընթացքին և շինանյութի մի զգալի մասը տեղափոխվեց ուղղաթիռներով։

Վերանորոգվեց նաև պալատական բաղնիքի շենքը, մինչև նրա ծածկերը, որոնք սակայն մնացին անավարտ, սկզբնական ձևերի անհավաստի լինելու կապակցությամբ։

Աշխատանքները կատարվել են պատմական հուշարձանների պահպանության հայկական ընկերության պատվերով։

Նախագծի հեղինակ ճարտ. Յու. Թամանյան։

Վերանորոգող ճարտարապետ Ա. Ավետիսյան։

Քարագործ վարպետների բրիգադիր Մ. Գասպարյան։

## Աղյուսակ 67

Նորադուզի մատուռը գտնվում է Կամոյի շրջանի համանուն գյուղի պատմական գերեզմանոցում։ Կառուցվել է 13-րդ դ. երկթեք տանիքով։ Այս շենքը բավականին քայքայված էր ծածկի մասում, տեղահանված էին քիվերը ու ճակատների առանձին քարերը։ Հուշարձանը վերանորոգվել է 1975 թ., երբ վերաշարվեցին նաև գերեզմանոցի բազմաթիվ խաչքարերը։

Նախագծի ճարտ. Վ. Գասպարյան, վերանորոգող աշխ. Ա. Դադյան, քարագործ վարպետների բրիգադավար Յ. Սարգսյան։

## Աղյուսակ 68

Կոշի խաչքար: Աշտարակի շրջան, XIII դ.։ Նախագծի հեղինակ ճարտարապետ Ռ. Այդինյան, վերանորոգող աշխ. Ռ. Հակոբյան, քարագործ վարպետների բրիգադավար Մ. Մելիքյան։

## Աղյուսակ 69

Զվարթնոցի տաճարը և նրա կաթողիկոսական պալատը գտնվում են Էջմիածին քաղաքի արվարձանում։ Համալիրը կառուցվել է 643—62 թ. կաթողիկոս Ներսես Գ-ի կողմից, և հիմնովին ավերվել է 10-րդ դարում։ Այստեղ անընդմեջ կատարվում են կոնսերվացման և բարեկարգման աշխատանքներ։ Մուտքի ձևավորումը, Երևան—Էջմիածին մայրուղուց, վեր խոյացող արծվի քանդակով՝ ճարտարապետ Ռ. Իսրայելյան, քանդակագործ Երվանդ Քոչար։

*1977 թվին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի գլխավոր կոմիտեի որոշմամբ՝ հուշարձանների վերանորոգման գործը մի շարք բարձր ցուցանիշներով և համապատասխան մակարդակով կատարելու համար Պետշինի հատուկ-գիտավերանորոգման արտադրական արվեստանոցը պարգևատրվել է երկրորդ կարգի դիպլոմով, իսկ վերանորոգման ղեկավարներ արժանացել են ոսկե, արծաթե և բրոնզե մեդալների։*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Կոնստանտին Լևոնի Հովհաննիսյան

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Константин Левонович Оганесян

**Реставрация архитектурных памятников в Советской Армении**

(на армянском языке)
Издательство «Айастан»
Ереван, 1978 г.

*Խմբագիր՝* Գ. Գ. Աղաբաբյան
*Հրատ. խմբ.՝* Ռ. Ս. Ումուրշատյան
*Գեղ. խմբագիր՝* Ս. Վ. Պողոսյան
*Տեխ. խմբագիր՝* Ս. Ն. Գրիգորյան
*Վերստուգող սրբագրիչ՝* Լ. Ս. Սահակյան

*Հանձնված է շարվածքի 7/VII 1977 թ.*
*Ստորագրված է տպագրության 21/VIII 1978 թ.։*
*Թուղթ՝ 84×108*1/16, *տպագր. 15,75 մամ.=պայմ. 26,46 մամ., հրատ. 22,03 մամ.։ Պատվեր 2959։ ՎՖ 08578։ Տպաքանակ 2000։ Գինը 2 ռ. 90 կ.։*

*«Հայաստան» հրատարակչություն, Երևան-9, Տերյան 91։*
Издательство «Айастан», Ереван-9, ул. Теряна, 91.

*Հայկ. ՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65։*
Типография № 1, Госкомитета Арм. ССР
по делам издательств, полиграфии и книжной торговли.
Ереван, ул. Алавердяна, 65.